Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



7
ՀՈՒԼԻՍ
1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 51—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ՍՄԿԿ XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ

1988 թվականի հունիսի 28-ից հուլիսի 1-ը Մոսկվայում, Կրեմլի Համագումարների պալատում տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության XIX համամիութենական կոնֆերանսը:

ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեի հանձնարարությամբ կոնֆերանսը բացեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պատգամավորները հաստատում են հետևյալ օրակարգը.

1. Կուսակցության XXVII համագումարի որոշումների կատարման ընթացքը, տասներկուերորդ հնգամյակի առաջին կեսի հիմնական արդյունքները և կուսակցական կազմակերպությունների խնդիրները վերակառուցման պրոցեսի խորացման ուղղությամբ:

2. Կուսակցության ու հասարակության կյանքի հետագա դեմոկրատացման միջոցառումները:

Հաղորդվում է, որ կուսակցության Կենտրոնական կոմիտեն նպատակահարմար է գտնում սույն կոնֆերանսում միասնական զեկուցումով հանդես գալ օրակարգի ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ հարցի առթիվ:

Կոնֆերանսի օրակարգը և աշխատակարգը հաստատվում են միաձայն:

XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի զեկուցման համար ձայնը տրվում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովին:

«ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների կատարման ընթացքի և վերակառուցման խորացման խնդիրների մասին» Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը լսվեց ուշադրությամբ և բազմիցս ուղեկցվում էր ծափահարություններով:

Այնուհետև կոնֆերանսի մասնակիցները սկսեցին զեկուցման քննարկումը:

Կոնֆերանսի մասնակիցները ընտրեցին բանաձևերի նախագծերի նախապատրաստման հանձնաժողովներ:

Կոնֆերանսի պատգամավորների առաջադրած մի շարք սկզբունքային հարցերի առթիվ բացատրություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, «ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների կատարման ընթացքի և վերակառուցման խորացման խնդիրների մասին» և «Սովետական հասարակության դեմոկրատացման ու քաղաքական սիստեմի ռեֆորմի մասին» բանաձևերի նախագծերի մշակման հանձնաժողովի նախագահ Մ. Ս. Գորբաչովը:

Մտքերի փոխանակությունն ավարտվելուց հետո պատգամավորները ձեռնամուխ եղան կոնֆերանսի բանաձևերի նախագծերի քննարկմանը.

«ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների կատարման ընթացքի և վերակառուցման խորացման խնդիրների մասին» և «Սովետական հասարակության դեմոկրատացման ու քաղաքական սիստեմի ռեֆորմի մասին»:

«Բյուրոկրատիզմի դեմ պայքարի մասին»:
«Ազգամիջյան հարաբերությունների մասին»:
«Հրապարակայնության մասին»:
«Իրավական ռեֆորմի մասին»:

Կոնֆերանսի բանաձևերի նախապատրաստման հանձնաժողովների աշխատանքի մասին հաղորդումներով հանդես եկան նրանց նախագահները՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ե. Կ. Լիգաչովը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովը, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ա. Ն. Յակովլևը, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նախագահ Ա. Ա. Գրոմիկոն:

Նախագծերի համակողմանի քննարկումից հետո բանաձևերն ընդունվեցին ուղղումներով ու լրացումներով հանդերձ:

Կոնֆերանսում եզրափակման խոսքով հանդես եկավ ընկ. Մ. Ս. Գորբաչովը: Կոնֆերանսի նախագահության հանձնարարությամբ Մ. Ս. Գորբաչովն առաջարկություն մտցրեց ընդունել «Երկրի քաղաքական սիստեմի ռեֆորմի իրագործման մի քանի անհետաձգելի միջոցառումների մասին» բանաձևը: Պատգամավորները բանաձևն ընդունում են միաձայն:

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը հայտարարվում է փակված:

Հնչում է կուսակցական հիմնը՝ «Ինտերնացիոնալը»:

---

# ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԸՆԹԱՑՔԻ ԵՎ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԽՈՐԱՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում

*1988 թվականի հունիսի 28-ին*

Ընկեր պատգամավորներ:

Ինչպես խորացնել և անշրջելի դարձնել հեղափոխական վերակառուցումը, որը կուսակցության նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ ծավալվել է մեր երկրում. ահա XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի պատգամավորներիս առջև ծառացած արմատական հարցը:

Այս հարցը առաջադրել է ինքը՝ կյանքը: Այն լայնորեն քննարկում են կուսակցությունն ու ժողովուրդը: Եվ այն բանից, թե մենք որքանով կտանք ճիշտ պատասխան, կախված է, թե արդյոք կուսակցությունը ի վիճակի է կատարելու քաղաքական ավանգարդի դերը սովետական հասարակության զարգացման նոր փուլում:

Մեր կյանքում վերջին երեք տարիները լիակատար իրավունքով կարելի է անվանել շրջադարձային: Կուսակցության, աշխատավորների ջանքերով հաջողվեց կանգնեցնել տնտեսական, սոցիալական և հոգևոր ոլորտներում երկրի սահքը դեպի ճգնաժամ: Այժմ հասարակությունը ավելի լավ գիտե և ավելի լավ է հասկանում իր անցյալը, ներկան ու ապագան: Վերակառուցման՝ սոցիալ-տնտեսական կոնկրետ ծրագրերում ծավալված քաղաքականությունը դառնում է միլիոնավոր մարդկանց պրակտիկ գործը: Սրանում է երկրի քաղաքական իրադրության էությունը:

Մենք տեսնում ենք, թե ինչպես է ոտքի ելել հասարակությունը: Ավելի բազմազան, հետաքրքրական ու հարուստ է դարձել երկրի հոգևոր կյանքը: Նոր ընթերցում են ստանում Կ. Մարքսի ու Վ. Ի. Լենինի շատ գաղափարներ, որոնք մինչև վերջին ժամանակներս կամ ընկալվում էին միակողմանիորեն, կամ էլ առհասարակ լռության էին մատնվում: Դոգմատիզմի դեմ մղվող պայքարում վերածնվում է գիտական, մարդասիրական սոցիալիզմի ստեղծագործական էությունը:

Մարդիկ զգացել են սեփական պատասխանատվությունը, ազատագրվում են հուլությունից և խորթացումից: Նորացման հողմը կոփում է ժողովրդի բարոյական առողջությունը: Դեմոկրատացումը ձերբազատել է մտքերի, հույզերի, նախաձեռնությունների մի հուժկու հոսանք: Ճշմարտության ու հրապարակայնության հաստատումը մաքրում է հասարակական մթնոլորտը, թևավորում մարդկանց, ազատագրում գիտակցությունը, խթանում ակտիվ գործունեությունը:

Սա, ընկերներ, մի վառ, տպավորիչ պրոցես է, որտեղ ներգրավված է մեր ժողովրդի մեջ եղած ամբողջ ազնիվը, առաջավորը: Համախմբվում են հեղափոխական նորացման ուժերը: Մարդիկ հավատացել են վերակառուցմանը, նրանք պահանջում են անշեղորեն ընթանալ առաջ և միայն առաջ:

Բարձր գիտակցականություն և կազմակերպվածություն է ցուցաբերում բանվոր դասակարգը: Մեր կյանքի մեջ անսովորի, նորի ու բարդի ներթափանցման պրոցեսում նա վերստին ցուցադրում է իր քաղաքական ու բարոյական հիանալի հատկանիշները, իրոք քաղաքացիական, պետական մոտեցում է հանդես բերում գործերի նկատմամբ, աշխատանքով է արտահայտում իր պաշտպանությունը վերակառուցմանը: Բանվոր դասակարգի այդ դիրքորոշումը կուսակցությանը թույլ է տալիս վստահորեն կատարել հեղափոխական վերափոխումները:

Մեծ շահագրգռվածությամբ արձագանքեց գյուղացիությունը: Կոլտնտեսականների համագումարը ցույց տվեց, թե նա վերակառուցման ինչպիսի հզոր եռանդով է օժտված: Գյուղատնտեսության մեջ վերակառուցման ջատագովները համարձակորեն դիմում են աշխատանքի նոր ձևերի, զինվում են գիտությամբ, արդյունավետ տեխնոլոգիայով, պատրաստակամություն են հանդես բերում փորձելու, որոնելու, նույնիսկ ռիսկի դիմելու հանուն նոր գործի, լիակատար նվիրումով, պատասխանատու և հմուտ կերպով աշխատելու իր համար և հայրենիքի բարօրության համար:

Վերակառուցումը հաստատեց մտավորականության սոցիալական նրբազգացության, հասարակական վերափոխումների նկատմամբ նրա համակրանքի վերաբերյալ լենինյան դրույթը: Նա ջերմորեն արձագանքեց հասարակության մտավոր, հոգևոր պոտենցիալը լիովին վերակառուցմանն ի սպաս դնելու կուսակցության կոչին: Մտավորականությունը անկեղծորեն պաշտպանեց XXVII համագումարի տված ճշմարտության դասը: Վերջին երեք տարիների կուսակցական որոշումները խոր ըմբռնում են գտել մտավորականության կողմից:

Եվ այսպես, հետապրիլյան ժամանակաշրջանի գլխավոր քաղաքական արդյունքն են ամբողջ հասարակական մթնոլորտի փոփոխությունը, նորացման գաղափարների սկսված նյութականացումը, վերակառուցման կուսակցական կուրսին սովետական ժողովրդի հարանուն պաշտպանությունը:

Բայց արդյոք սա նշանակու՞մ է, որ ամենուրեք և լրիվ թափով տեղաշարժեր են կատարվում դրական ուղղությամբ, որ հեղափոխական վերափոխումները անշրջելի են դարձել:

Ոչ, չի նշանակում: Եթե մենք ուզում ենք մնալ իրատեսության հողի վրա, ապա պետք է ընդունենք. դա առայժմ տեղի չի ունեցել, ընկերներ: Մենք դեռևս չենք հաղթահարել արգելակման խորքային պատճառները, ամենուրեք չէ, որ գործի ենք դրել, իսկ ինչ-որ բանով նան չեն գործել նորացման մեխանիզմները: Կուսակցական շատ կազմակերպությունների գործունեությունը դեռևս չի գտնվում վերակառուցման խնդիրների մակարդակին: Մեր զարգացման մեջ հարկավոր են նոր, որակական վերափոխումներ, իսկ դա պահանջում է արմատական վճիռներ, ակտիվ ու նախաձեռնողական գործողություններ:

Այսօր մեր առջև ծառացած են բազմաթիվ բարդ հարցեր: Բայց դրանցից ո՞րն է հանգուցայինը: ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ այդպիսի հարց է մեր քաղաքական սիստեմի ռեֆորմը:

Կենտրոնական կոմիտեն իր պլատֆորմը շարադրել է կոնֆերանսի առթիվ հրապարակված թեզիսներում: Դրանցում խնդիր չէր դրվում ամեն ինչին տալ պատրաստի պատասխաններ: Մենք հույս ունեինք, որ քննարկման ընթացքում կծագեն նոր գաղափարներ ու առաջարկություններ, որոնք կարող են հաշվի առնվել կոնֆերանսի կողմից: Եվ այդ ժամանակ նրա որոշումները կլինեն իրոք ամբողջ կուսակցության ու ժողովրդի կոլեկտիվ ստեղծագործության արգասիքը:

Այսպիսով, մեր կոնֆերանսի քաղաքական նպատակակետն է լենինյան ավանդույթների ոգով ու հենվելով կուտակված փորձի վրա, համակողմանիորեն և քննադատաբար իմաստավորել Կենտկոմի ապրիլյան պլենումից և ՍՄԿԿ XXVII համագումարից հետո անցած ժամանակաշրջանը, հարստացնել մեր վերափոխումների ստրատեգիան և կոնկրետացնել դրանց տակտիկան, սահմանել աշխատանքի այնպիսի ուղիներ, ձևեր ու մեթոդներ, որոնք ապահովեին վերակառուցման անշեղ զարգացումն ու անշրջելիությունը:



# I. ԶԱՐԳԱՑՆԵԼ ԵՎ ԽՈՐԱՑՆԵԼ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

## 1. ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏԱԲԱՐ ԳՆԱՀԱՏԵԼ ՁԵՌՔ ԲԵՐՎԱԾԸ

Ընկերներ, հեղափոխական նորացման պրոցեսը ավելի ու ավելի խոր է թափանցում կյանքի վճռական ոլորտ՝ էկոնոմիկա:

Մենք ձեռնամուխ ենք եղել ժողովրդական տնտեսության կառավարման համակարգի խոր, իր նպատակներով ու մասշտաբներով հիրավի արմատական ռեֆորմի: Էկոնոմիկայի սկզբնական օղակների զգալի մասը պետական ձեռնարկության մասին օրենքին համապատասխան յուրացնում է լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքները: ՍՍՀՄ կոոպերացիայի մասին վերջերս ընդունված օրենքը ուղի է հարթում դեպի կոոպերատիվ խոշոր հատվածի ստեղծումը երկրի էկոնոմիկայի մեջ, դեպի կոոպերացման բազմազան ձևերի լայն կիրառումը ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում:

Սկսվել է աշխատանքային, ներարտադրական հարաբերությունների վերակառուցումը կապալի ու վարձակալման հիման վրա, որոնք հնարավորություն են ընձեռում հանրային սեփականության առավելությունները միացնել մարդու անձնական շահի հետ, գործի նկատմամբ տնտեսատիրոջ վերաբերմունքի, քաղաքացիական ինքնահաստատման հետ: Զգալի ազդակ է տրվել անհատական աշխատանքային գործունեության զարգացմանը:

Ընդունվել են ժողովրդական տնտեսության ու սոցիալական ոլորտի հիմնական ճյուղերի վերակառուցման ուղղությունները սահմանող սկզբունքային բնույթի մի շարք խոշոր որոշումներ, որոնք կենսագործվում են:

Էկոնոմիկան աստիճանաբար թափ է առնում: Անցյալ տարի ազգային եկամտի ամբողջ աճը առաջին անգամ ստացվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Վերականգնվել է աշխատավորների ռեալ եկամուտների աճը. այս հնգամյակի երկու տարում բնակչության մեկ շնչի հաշվով դրանք ավելացել են 4,6 տոկոսով:

Տասնմեկերորդ հնգամյակի համեմատությամբ բնակարանների ամենամյա գործարկումը ավելացել է 15 միլիոն քառակուսի մետրով: Մենք լրջորեն ձեռնամուխ ենք եղել ժողովրդական կրթության և առողջապահության վերակազմությանը: Բարձրացել է ծնունդը և նվազել մահացությունը, ինչը ոչ քիչ չափով կապված է հարբեցողության ու ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարի հետ:

Սոցիալ-տնտեսական իրավիճակի առողջացման միտումը զարգացում է ստացել նաև այս տարի: Ազգային եկամուտը մեծանում է ավելի արագ, քան նախատեսված էր պլանով՝ նյութական արտադրության մեջ զբաղվածների թվի բացարձակ կրճատումով հանդերձ:

Առաջանցիկ տեմպերով է աճում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, ինչը թույլ տվեց կատարել ապրանքաշրջանառության ծավալի հնգամյա առաջադրանքը: Վաճառվել են 5,9 տոկոսով ավելի շատ սննդամթերք և ոչ պարենային ապրանքներ, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում: Բնակչությանը մատուցվող կենցաղային սպասարկումների ծավալը մեծացել է 13,5 տոկոսով:

Արագացել է բնակարանների և սոցիալ-կենցաղային օբյեկտների շինարարությունը: Կառուցվել են 6 տոկոսով շատ բնակարան ու տուն, 22 տոկոսով շատ հանրակրթական դպրոց, գրեթե մեկ երրորդով շատ նախադպրոցական հիմնարկ, ակումբ ու մշակույթի տուն, երկու անգամ շատ հիվանդանոց:

Այս ամենը վերակառուցման ռեալ պտուղներ են: Բայց մենք, ընկերներ, պարտավոր ենք լինել ինքնաքննադատական, պարզորոշ տեսնել, որ բոլոր դրական կողմերով հանդերձ էկոնոմիկայի վիճակը դանդաղ է փոխվում, հատկապես եթե դատելու լինենք ըստ վերջնական արդյունքի՝ ժողովրդի կենսամակարդակի:

Որո՞նք են դրա պատճառները:

Պետք է, ընկերներ, բացեիբաց ասել. մենք թերագնահատել ենք անցած տարի-

ների դեֆորմացիաների ու լճացման ողջ խորությունն ու ծանրությունը: Շատ բան պարզապես չգիտեինք և միայն հիմա ենք տեսնում. պարզվեց, որ էկոնոմիկայի տարբեր ոլորտներում գործերի բարձիթողի վիճակը ավելի լուրջ է, քան պատկերանում էր սկզբում:

Թե իրավիճակը որքան լուրջ է, երևում է երկրի մասնավորապես ֆինանսական դրությունից: Երկար տարիներ պետական բյուջեի ծախսերը ավելի արագ էին աճում, քան եկամուտները: Բյուջետային դեֆիցիտը ճնշում է շուկայի վրա, խարխլում ռուբլու և ամբողջ դրամական շրջանառության կայունությունը, ծնում ինֆլյացիոն պրոցեսներ:

Կարծում եմ, այնուամենայնիվ, խոսելով անցյալի սխալների և դառը դասերի մասին, մենք ոչ պակաս խստապահանջությամբ ու սկզբունքայնությամբ, քան նախորդներին, պետք է վերաբերվենք մեզ, ներկայիս, ինչպես հարկն է վերլուծենք վերջին երեք տարվա մեր գործունեության ոչ միայն հաջողությունները, այլև սխալներն ու դասերը, վերակառուցման ընթացքում կատարած սխալներն ու վրիպումները: Եվ այս տեսակետից հարկավոր է ինքնաքննադատաբար ասել. երեք տարում մենք կարող էինք անել զգալիորեն ավելի շատ, քան արել ենք վերակառուցման գլխավոր ուղղություններում և ամենից առաջ մեր էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, նրա վերջնական արդյունքների բարելավման ասպարեզում:

Չէ որ փաստ է, որ այսօր էլ երկիրը ազգային եկամտի մեկ միավորի հաշվով շարունակում է ծախսել չափազանց շատ վառելիք, էլեկտրաէներգիա, մետաղ: Այստեղից էլ՝ ռեսուրսների դեֆիցիտը դրանց արտադրության մեծ ծավալների պայմաններում, ինչը հարկադրում է նորանոր միջոցներ հատկացնել հումքի և վառելիքաէներգետիկ բազայի մեծացման համար:

Այս արատավոր շրջանից դուրս գալու համար մենք սկսեցինք հայրենական մեքենաշինության արմատական արդիականացումը՝ որպես գիտատեխնիկական առաջադիմության արագացման, մեր ամբողջ ժողովրդական տնտեսության վերակազմության վճռական պայմանի: Դա, կարելի է ասել, աննախադեպ ծրագիր է: Այն պահանջում է նաև աննախադեպ ջանքեր: Եվ ոչ միայն բուն մեքենաշինության մեջ, այլև քիմիական արդյունաբերության, մետալուրգիայի մեջ, այլ ճյուղերում և, իհարկե, գիտական հետազոտությունների ու մշակումների ոլորտում:

Այստեղ աշխատանքը ծավալվել է, բայց այն դեռևս չի համապատասխանում առաջադրված խնդիրների մասշտաբներին, դանդաղ է կատարվում, հատկապես այնպիսի ավանգարդային ուղղություններում, ինչպիսիք են միկրոէլեկտրոնիկան, կոմպյուտերային տեխնիկան, առաջադիմական նյութերի ստեղծումը: Դրա համար ուղղակի պատասխանատվություն են կրում ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մեքենաշինության բյուրոն և ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն, ճյուղի ղեկավար կադրերը: Ասենք էկոնոմիկայի մեջ կառուցվածքային տեղաշարժերն էլ ամբողջությամբ վերցված դանդաղ են կատարվում: Իսկ սա նշանակում է, որ այնտեղ մնում է անցյալում կուտակված պրոբլեմների մեծ մասը: Բայց չէ որ սա նույնպես էկոնոմիկայի ղեկավարման նկատմամբ այժմյան մոտեցումների արտացոլում է:

Մի հարց ևս: Կենտկոմի հունիսյան պլենումում, ինչպես հիշում եք, խոսվեց երկարաժամկետ ստրատեգիական նպատակներին հասնելը ժողովրդի կենսական պահանջմունքների առավելագույն բավարարման հետ զուգակցելու անհրաժեշտության մասին: Ստրուկտուրային վերակառուցումը, արմատական տնտեսական ռեֆորմը հիմնարար պրոցեսներ են: Դրանք կպահանջեն ժամանակ, մեծ ջանքեր և միջոցներ: Կատարելով այդ խնդիրները, մենք միևնույն ժամանակ պետք է առանց դանդաղելու նաև լուծենք ժողովրդի բարեկեցության բարձրացման անհետաձգելի պրոբլեմները: Այս գիծը ամբողջովին բխում է մեր զարգացման սոցիալական ուղղվածությունն ուժեղացնելու կուսակցության XXVII համագումարի հիմնադրույթներից:

Իսկ ինչպե՞ս են լուծվում այդ խնդիրները:

Սկսեմ պարենային պրոբլեմից, քանի որ դա, թերևս, ամենացավագին կետն է հասարակության կյանքում, ամենասուր պրոբլեմը:

Այստեղ որոշակի տեղաշարժեր կան: Բայց դրանք մեզ չեն կարող բավարարել: Պարենամթերքի այն ավելացումը, որին մենք հասել ենք, ըստ էության զգալի չափով գնացել է բնակչության աճի հետ կապված պահանջմունքների ծածկմանը: Իսկ սա նշանակում է, ընկերներ, որ մեզ հարկավոր են պարենային ռեսուրսների ավելացման այլ, ավելի արագ տեմպեր: Մենք չունենք ոչ բարոյական, ոչ էլ քաղաքական իրավունք հաշտվելու պարենային պրոբլեմի ձգձգվող լուծման հետ:



Արդարացի հարց է ծագում: Ինչու՞ այսքան երկար ժամանակ մեզ չի հաջողվում այստեղ առաջ շարժվել: Անշուշտ, շատ պատճառների արմատները ձգվում են դեպի անցյալը, երբ լրջորեն խարխլվեցին գյուղի զարգացման հիմքերը: Բայց սա բնավ չի արդարացնում այժմյան բացթողումները գյուղատնտեսության մեջ:

Թվում է՝ բոլոր հանգույցները արձակված են, կոլտնտեսություններին ու սովխոզներին, շրջաններին, մարզերին, հանրապետություններին ամենալայն իրավունքները տրված են հողագործության և անասնապահության մթերքների արտադրությունն ավելացնելու համար, իսկ ցանկալի արդյունքը առայժմ չկա: Ավելին, վերջին ժամանակների շատ որոշումներ բախվում են անըմբռնողության, դրանց դանդաղ իրագործման, բյուրոկրատական ամեն կարգի խոչընդոտների, իսկ երբեմն էլ պարզապես բացակայում է նորովի աշխատելու ցանկությունը:

Նման հետևության օրինաչափությունը հաստատում են շատ ռեգիոնների գործունեության արդյունքների մեջ եղած տարբերությունները, նույնիսկ բնատնտեսական հավասար պայմանների դեպքում: Որտեղ եռանդագին ձեռնամուխ են եղել գործին, որտեղ ինչպես հարկն է օգտագործվում են նոր հնարավորությունները, այնտեղ դրությունը նկատելիորեն շտկվում է: Վերցրեք, օրինակ, Բելոռուսիան, Լիտվան, Ալթայի երկրամասը, Բելգորոդի, Վոլգոգրադի, Ժիտոմիրի, Լիպեցկի, Օրյոլի, Խմելնիցկու, Ցելինոգրադի մարզերը: Այնտեղ կայուն կերպով աճում է անասնապահական մթերքների արտադրությունը, ինչը հնարավորություն է ընձեռել նկատելիորեն բարելավելու պարենավորումը:

Բայց ինչու՞ բնակչության պարենավորումը կարողացել են բարելավել Բելգորոդի մարզում և դա չեն արել հարևան Կուրսկի մարզում: Ինչու՞ Ցելինոգրադի մարզի գյուղերի աշխատավորները ավելացրել են մսի, կաթի, բանջարեղենի մատակարարումները առևտրին, իսկ Հյուսիսղազախստանյան և որոշ այլ հարևան մարզերում դա չեն կարողացել անել:

Նման օրինակներ, ընկերներ, կան ինչպես ասում են՝ որտեղ ասես: Ավելին, Վոլոգդայի, Կալինինգրադի, Կիրովոգրադի, Կուրգանի, Յարոսլավլի մարզերում, Կալմիկական Ինքնավար Հանրապետությունում նույնիսկ թույլ են տվել գյուղատնտեսական շատ մթերքների արտադրության նվազում: Լճացման երևույթները պահպանվում են Ուզբեկստանի, Մոլդավիայի, Անդրկովկասի հանրապետությունների գյուղատնտեսության մեջ: Նշանակում է՝ շատ բան թաքնված է գործի նկատմամբ եղած վերաբերմունքի, ղեկավարության ձեռնհասության, տնտեսությունը նորովի վարելու կարողության մեջ:

Կարծում ենք պարենային գործի բարելավման ուղիների որոնումը պետք է շարունակել ամենուրեք և առաջին հերթին այն մարզերում ու հանրապետություններում, որտեղ դրությունը չի փոխվում կամ դանդաղ է լավանում: Ընդ որում դա հարկավոր է անել համաժողովրդական կարգով, գյուղատնտեսության վիճակի խոր վերլուծության հիման վրա:

Ինչի՞ վրա պետք է կենտրոնացվի ուշադրությունը: Փորձը ցույց է տալիս, որ պարենային առատության ամենակարճ և հուսալի ուղին ամենուրեք աշխատանքի կազմակերպման ու խթանման վարձակալական և արդյունավետ այլ ձևերի լայն ներդրումն է: Սա ժամանակակից ագրարային քաղաքականության հանգուցային օղակն է:

Վարձակալական և կապալային կոլեկտիվների աշխատանքի արդյունքները ապացուցել են, որ համեմատաբար կարճ ժամկետներում կարելի է արագ ավելացնել բերքատվությունը և անասունների մթերատվությունը, էապես բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, կրճատել կորուստները և տալ լավորակ մթերքներ: Հենց այս փորձն էլ, ընկերներ, պարունակում է գլխավոր հարցի պատասխանը՝ երկիրը ի՞նչ ժամկետներում կլուծի պարենային պրոբլեմը: Ամեն ինչ կախված է նրանից, թե մենք ինչքան արագ կշահագրգռենք մարդկանց և կկազմակերպենք վարձակալական ու կապալային կոլեկտիվների աշխատանքը, թե ինչպես գյուղի աշխատավորներին լայնորեն կներգրավենք այդ պրոցեսի մեջ, գյուղացուն կդարձնենք հողի իսկական տերը:

Անշուշտ, սրա հետ միասին մենք պետք է շարունակենք գյուղատնտեսության և սննդարդյունաբերության նյութատեխնիկական բազայի ամրապնդման գիծը: Անհետաձգելի բնույթ են կրում գյուղատնտեսական արտադրանքի փոխադրման, պահպանման ու վերամշակման գործի բարելավման միջոցառումները: Եթե մենք կարողանանք ժամանակին հավաքել, փոխադրել, պահպանել ու վերամշակել բերքը, արտադրանքը ժամանակին հասցնել սպառողին, ապա դաշտերի ու ֆերմաների մթերատվության

արդեն այժմյան մակարդակով կարելի է 20—30 տոկոսով ավելացնել սննդամթերքների սպառումը:

Այս ակնհայտ ռեզերվը պետք է օգտագործվի: Մենք մշակել ենք գյուղատնտեսական արտադրանքի վերամշակման, պահպանման ու փոխադրման գործի բարելավման ծրագիր և տասներկուերորդ հնգամյակի մնացած տարիներին ու տասներեքերորդ հնգամյակում այդ նպատակներին հատկացրել 77 միլիարդ ռուբլի: Այժմ պետք է հմտորեն կազմակերպել գործը, արդյունավետորեն օգտագործել այդ ռեսուրսները, որպեսզի կարճ ժամկետում վճռականորեն շտկվի դրությունը:

Կոոպերացիայի լայն զարգացումը, տնտհաշվարկի, վարձակալական կապալի, աշխատանքի կազմակերպման ու խթանման առաջադիմական այլ ձևերի ներդրումը, օբյեկտիվորեն պահանջում են արմատական վերափոխումներ ագրոարդյունաբերական համալիրի կառավարման մեջ: Պրակտիկան ցույց է տվել, որ ագրոարդյունաբերական մարմինները այժմյան տեսքով շրջաններում և մարզերում իրենց սպառում են: Ըստ երևույթին պետք է ընթանալ այն ուղիով, որ հուշում է կյանքը, որով տուլացի երկրագործների օրինակով արդեն ընթանում են շատ շրջաններ, մարզեր և հանրապետություններ: Ես նկատի ունեմ կոլտնտեսությունների ու սովխոզների կամավոր միավորումը համատեղ ծառայություններ և կառավարման մարմիններ ստեղծելու համար: Գյուղի աշխատավորները լավ գիտեն, թե կառավարման և սպասարկման կազմակերպման ինչ ձևեր են իրենց հարկավոր:

Ինչ վերաբերում է սովետական ու կուսակցական մարմիններին, ապա նրանց խնդիրն այն է, որ տնտեսություններին օգնություն և օժանդակություն ցույց տան վերակառուցում կատարելու գյուղում, արմատապես փոխելու կառավարման մեթոդները: Իսկ այն աշխատողներին, ովքեր արգելակում են գործը, փակում են նորի ճանապարհը, հարկավոր է, ինչպես ասվեց կոլտնտեսականների համագումարում, վճռականորեն հեռացնել ճանապարհից:

Եվս մի կարևոր պրոբլեմի մասին: Մենք ինչ ռեսուրսներ էլ հատկացնելու լինենք գյուղատնտեսությանը, դրանք հարկ եղած հատույցը չեն տա, եթե չհոգանք մարդու մասին, նրա աշխատանքի ու կենցաղի պայմանների մասին:

Հատկապես ուզում եմ ասել գյուղի սոցիալական զարգացման մասին: Այստեղ հասարակությունը քիչ պարտք չունի գյուղի բնակիչների հանդեպ: Շատ շրջաններում գյուղի բնակարանային, սոցիալ-կուլտուրական պայմանները, բժշկական սպասարկումը գտնվում են ցածր մակարդակում: Սրան պետք է ավելացնել գյուղական տների անբավարար հարմարավետությունը, էներգամատակարարման, կենցաղային տեխնիկայի օգտագործման հետ կապված դժվարությունները, ճանապարհների վատ վիճակը:

Այս հնգամյակում աննախադեպ խոշոր միջոցներ են ձեռնարկվում գյուղի սոցիալական ոլորտի բարելավման նպատակով: Վերափոխումների մեծ ծրագիր է իրագործվում երկրի նաև մասնավորապես այնպիսի կարևորագույն ռեգիոնում, ինչպիսին է Ռուսաստանի ոչ սևահողային գոտին: Գյուղի աշխատավորները պետք է արդեն մոտակա տարիներին ամենուրեք զգան կենսապայմանների և աշխատանքի պայմանների ռեալ փոփոխությունը: Այս գիծը հարկավոր է հետևողականորեն իրագործել նաև հետագայում: ՍՍՀՄ պետպլանը և պետագրոարդը պետք է սրանից ելնեն տասներեքերորդ հնգամյակի պլանը նախապատրաստելիս:

Մի խոսքով, ընկերներ, արդի փուլում ագրարային քաղաքականության էությունը հանգում է նրան, որ հենց գյուղում վերափոխենք արտադրական հարաբերությունները:

Մենք պետք է վերականգնենք տնտեսական հավասարակշռությունը քաղաքի և գյուղի միջև, զարգացնելով կապալի և վարձակալության բազմազան ձևերը: Ըստ ամենայնի բացահայտենք կոլտնտեսությունների և սովխոզների պոտենցիալը, հաղթահարենք գյուղացու խորթացումը հողից, նրան դարձնենք լիիշխան տեր, զերծ պահելով ամեն տեսակ հրամայականությունից, արմատապես փոխենք գյուղի աշխատավորների կենսապայմանները: Միայն այդ հիման վրա կարելի է կտրուկ բարձրացնել ագրոարդյունաբերական արտադրության արդյունավետությունը, ապահովել պարենի մատակարարման արմատական բարելավումը երկրում:

Բնակարանային պրոբլեմի մասին: Մենք ձեռնամուխ ենք եղել բացառիկ կարևոր խնդրի լուծմանը՝ մինչև 2000 թվականը փաստորեն ամեն մի ընտանիքի առանձին բնակարանով կամ անհատական տնով ապահովելուն: Դրա համար, ինչպես հայտնի է, պետք է կառուցվի 35 միլիոնից ավելի բնակարան ու տուն: Թեև բնակարանային



շինարարության իրավիճակը սկսել է բարեփոխվել, այդուհանդերձ այն մնում է խիստ լարված, մարդիկ տարիներով բնակարանի են սպասում:

Այդ առնչությամբ մենք դիմեցինք ոչ սովորական լուծումների՝ կրճատելով արտադրական շինարարության կապիտալ ներդրումները, էապես մեծացրինք պետական ռեսուրսների, ինչպես նաև տնտհաշվարկի անցած աշխատավորական կոլեկտիվների հաշվին նոր տներ ու բնակարաններ կառուցելու մասշտաբները: Գործնական միջոցներ են ձեռնարկվել կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարությունը զարգացնելու նպատակով: Դրանց էությունը կոոպերատիվ բնակարան կամ սեփական տուն ձեռք բերելու մարդկանց ցանկություններին ընդառաջ գնալն է: Այդ նպատակով վերացված են շինությունների չափերի և դրանց հարկայնության բոլոր արգելքներն ու սահմանափակումները:

Թող մարդիկ իրենց վաստակած միջոցներով կառուցեն այն, ինչ իրենց հարկավոր է, հաշվի առնելով իրենց այսօրվա և ապագա պահանջմունքները: Կարծում եմ, հիմնավորված են նաև այն բազմաթիվ առաջարկությունները, որ քաղաքացիներին հնարավորություն ընձեռվի պետությունից գնելու իրենց զբաղեցրած բնակարանները՝ դրանց ժառանգական փոխանցման իրավունքով:

Բնակարանային շինարարությունն արագացնելու նպատակով ընդունված որոշումները արժանացել են սովետական մարդկանց հավանությանը: Գործն ամենուրեք սկսել է բարեփոխվել, բայց նոր պրոբլեմներ էլ են ծագում: Աճած պահանջմունքներին չի համապատասխանում շինարարական կազմակերպությունների և շինանյութերի արդյունաբերության բազայի զարգացման մակարդակը: Այդտեղ էլ շատ բան կա անելու՝ օգտագործելով մարզերում, երկրամասերում և հանրապետություններում եղած բոլոր հնարավորությունները: Շատ բան է կախված նաև մեքենաշինարարներից, որոնք պարտավոր են ամենաարդիական տեխնիկա ու սարքավորումներ մատակարարել շինարարներին և շինանյութերի ինդուստրիայի ձեռնարկություններին: Այդ ամենը պետք է լուծել անհետաձգելիորեն, գործարար կերպով:

Եվ, վերջապես, ժողովրդական սպառման ապրանքների պահանջարկի բավարարման, առևտրի և սպասարկման ոլորտի զարգացման մասին: Այստեղ կատարված փոփոխությունները չեն վերացնում գլխավոր պրոբլեմը. ապրանքների և սպասարկումների առաջարկը շարունակում է հետ մնալ բնակչության գնողունակության աճից, ինչը զգալիորեն պայմանավորված է ինչպես այդ ոլորտի բարձիթողությամբ, այնպես էլ դրա նկատմամբ եղած վերաբերմունքով:

Շատ բան է կախված թեթև արդյունաբերության աշխատանքից: Այսօր մենք, ինչպես ասում են, քաղում ենք այդ ճյուղի զարգացման նկատմամբ բազմամյա քամահրական վերաբերմունքի պտուղները:

Ճյուղի ձեռնարկություններում օգտագործվում են հնացած սարքավորումներ, շատ է ձեռքի ծանր աշխատանքը: Այդ ամենը անդրադառնում է արտադրողականության, արտադրանքի քանակի ու որակի, կադրերի կայունության վրա: Ներկայումս միջոցներ են ձեռնարկված, որոնք կոչված են շտկել իրադրությունը այստեղ: Խոշոր միջոցներ են հատկացված: Ձեռնարկությունները արդիականացվում են, օգտագործելով ինչպես հայրենական, այնպես էլ ներմուծվող սարքավորումներ:

Բայց կան նաև այլ պատճառներ: Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության դանդաղ ավելացումը մեծապես բացատրվում է մեր տնտեսական մեխանիզմի անկարգավորվածությամբ, թույլ ազդակներով: Միութենական մինիստրությունների և գերատեսչությունների այն ձեռնարկությունների մեծամասնությունը, որոնք կոչված են տևական օգտագործման ապրանքներ մատակարարել շուկային, այդ խնդիրը համարում է երկրորդական, փորձում բոլոր պատրվակներով խուսափել դրա լուծումից:

Մենք պետք է կարճ ժամկետում ստեղծենք ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ժամանակակից և հզոր ինդուստրիա: Դա վերաբերում է ոչ միայն թեթև արդյունաբերությանը, այլև պաշտպանական գործարաններին, ծանր ինդուստրիայի ձեռնարկություններին, որոնց ներդրումը սպառողական ապրանքների արտադրության և մատակարարման գործում պետք է վճռականորեն մեծացվի: Եվ խոսքը ոչ միայն քանակական, այլև որակական ցուցանիշների մասին է:

Ապրանքներով և սպասարկումներով ապահովելու համար առանձնակի պատասխանատվություն է ընկած տեղական մարմինների վրա:

Հանրապետություններում և մարզերում տեղական հնարավորությունների հաշվին շուկան ապրանքներով հագեցնելու գործում իսկական նախաձեռնության և ձեռներե-

ցության քիչ օրինակներ չկան: Եվ, այդուհանդերձ, շատ ռեգիոններում չափից ավելի ուժեղ են խնամառուական տրամադրությունները, նույնիսկ այնպիսի ապրանքների ֆոնդեր կորզելու փորձերը, որոնք միանգամայն հնարավոր է արտադրել տեղում: Նման դիրքորոշումը աններելի է այժմ, երբ կոոպերատիվ ու անհատական աշխատանքային գործունեության զարգացման լայն հնարավորություններ են ընձեռված: Այնտեղ, որտեղ դա ժամանակին են հասկացել և անհրաժեշտ պայմաններ ստեղծել, արդյունքները առկա են, հայտնվում են նոր ապրանքներ և սպասարկման ձևեր: Եվ դա կարելի է միայն ողջունել:

Կարճ ասած, մարդկանց կենսական շահերը շոշափող այդ գործի նկատմամբ վերաբերմունքը պետք է արմատապես փոխել թե՛ կենտրոնում, թե՛ տեղերում:

## 2. ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ ԻՐԱԿԱՆԱՑՆԵԼ ԱՐՄԱՏԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ

Ընկերներ, քննարկելով վերակառուցման ընթացքը, պետք է հատկապես առանձնացնել այն հարցը, թե ինչպես է իրականացվում արմատական տնտեսական ռեֆորմը:

Ձեռնարկությունների անցումը տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնակառավարման, կոլեկտիվներին հնարավորություն է տալիս իսկապես զգալ թե՛ իրենց նոր իրավունքները, թե՛ պատասխանատվության ոչ թեթև բեռը: Ու թեև ռեֆորմը սոսկ առաջին քայլերն է անում, իսկ տնտեսավարման նոր մեթոդները դեռ նոր-նոր են յուրացվում, դրանք արդեն սկսում են դրականորեն անդրադառնալ արտադրական ու սոցիալական շատ պրոբլեմների լուծման, կոլեկտիվների ամբողջ մթնոլորտի վրա:

Ընթացիկ տարում նորովի աշխատող ձեռնարկությունները ոչ միայն ապահովեցին արտադրանքի թողարկման պլանի կատարումը, այլև լրջորեն բարելավեցին իրենց տնտեսական ցուցանիշները: Դա շատ հատկանշական է:

Բայց այսօր գլխավորը ռեֆորմի սկզբնական փուլի դժվարություններից դասեր առնելն է: Պրակտիկան ի հայտ բերեց պրոբլեմներ, որոնք հանգեցնում են տնտեսական նոր մեխանիզմի տեղապտույտին: Ինչ-որ չափով դրանք կապված են այն բանի հետ, որ տակավին չեն ներդրված նրա բոլոր տարրերը, որ ռեֆորմի իրականացումը մենք, ինչպես ասվում է, սկսեցինք երթի ժամանակ, հնգամյակի ընթացքում, այն պայմաններում, երբ արդեն որոշված էին պլանի կառուցվածքային դիրքերը, պահանելով հնացած գները, ռեսուրսների բաշխման նախկին կենտրոնացված մեթոդները:

Եվ դրանով շատ բան կարելի է բացատրել: Շատ բան, բայց բնավ էլ ոչ բոլորը: Ծագած դժվարությունները զգալիորեն տնտեսավարման ստերեոտիպերի կենսունակության, էկոնոմիկայի ղեկավարման սովորական վարչահրամայական մեթոդները պահպանելու ձգտման, կառավարման աշխատողների մի մասի կողմից նորին ցույց տրվող դիմադրության ծնունդ են: Իսկ մի շարք դեպքերում մենք բախվում ենք նաև ռեֆորմի էությունը աղավաղելու, կառավարման նոր ձևերը հին բովանդակությամբ հագեցնելու անմիջական փորձերին: Ամենուրեք մինիստրությունների և գերատեսչությունների կողմից թույլ են տրվում նահանջներ ձեռնարկությունների մասին օրենքի տառից ու ոգուց, որի հետևանքով, ինչպես խոստովանում են շատ տնտեսավարներ, այն լիովին չի իրացվում:

Հենց այդ է վկայում ձեռնարկությունների ընթացիկ տարվա պլանների մշակման փորձը, երբ պետական պատվերների անվան տակ փաստորեն պահպանվեց արտադրության ծավալի գծով պարտադիր առաջադրանքների նախկին համակարգը: Դա ոչ այլ ինչ է, քան մինիստրությունների կամայականության արդյունք՝ պատշաճ վերահսկողության բացակայությամբ, և անգամ պետպլանի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի մշտական մարմինների թողտվությամբ հանդերձ:

Եվ արդեն բոլորովին անթույլատրելի է, երբ պետական պատվերների միջոցով ձեռնարկություններին հարկադրում են թողարկել այնպիսի արտադրանք, որը պահանջարկ չի վայելում սպառողների շրջանում: Հարկադրում են միայն նրա համար, որ ապահովեն տխրահռչակ «համախառնը»: Նմանօրինակ թելադրանք է թույլ տրվել նույնիսկ այնպիսի խոշոր կոլեկտիվների նկատմամբ, ինչպիսիք են Ուրալմաշը, Ալ-



թայսելմաշը, Կուրգանի անվավոր քարշակների գործարանը, Բաքվի անվադողերի գործարանը, չխոսելով արդեն բազում միջակ ու մանր ձեռնարկությունների մասին: Մեզանում որքան շատ են այնպիսիները, որոնք հավատարմորեն ծառայում են նորին մեծություն «համախառնին»:

Պե՞տք է արդյոք ապացուցել, որ դա արմատապես հակասում է ռեֆորմի իմաստին, հավասազոր է կառավարման այն մեթոդների պահպանմանը, որոնք մեր էկոնոմիկան փակուղու առջև են կանգնեցրել:

Թվում է, թե այժմ արդեն բոլորի համար պետք է պարզ լինի, որ նախորդ կարգերին վերադարձ չկա ու չի լինելու: Այդուհանդերձ, հիմա էլ մենք երբեմն լսում ենք կարծիքներ, թե եթե պլանով «ճնշում չգործադրվի» ձեռնարկության վրա, ապա նա իբր չի ձգտի բարելավել տնտեսական ցուցանիշները: Առաջին հայացքից թվում է, թե այդ դատողություններում ինչ-որ իմաստ կա: Բայց կյանքն այլ բան է ասում: Բերեմ միայն մեկ փաստ:

Շատերը երկյուղ էին կրում, թե ձեռնարկությունների իրավունքների ընդլայնումը, դիրեկտիվ ցուցանիշների շրջանակի նեղացումը կհանգեցնեն պլանային ցուցանիշների նվազեցմանը և հնգամյակի առաջադրանքների վերանայման անհրաժեշտությանը: Իսկապես շահույթի պլանների գումարը, որոնք այս տարվա համար ընդունվել էին լրիվ տնտհաշվարկի անցած արդյունաբերական ձեռնարկությունների կողմից, 4,5 միլիարդ ռուբլով ցածր էին հնգյակի թվերից: Հին մեթոդների որոշ մոլի հետևորդներ ոչ առանց չարախնդության ձեռքերն էին շփում. իբր ահա թե ինչի է հանգեցնում սոսկ տնտեսական լծակներին և ազդակներին ապավինելու ձգտումը:

Իրականում ինչպե՞ս էր ընթանում գործը: Իսկ այն ընթանում էր այսպես. ընթացիկ տարվա հինգ ամսում այդ ձեռնարկությունները շահույթի իրենց պլանները գերակատարեցին 2,5 միլիարդ ռուբլով: Լրիվ տնտհաշվարկով գործող աշխատավորական կոլեկտիվներում շահույթի հավելաճը կազմեց 18,8 տոկոս՝ հին ձևով գործող ձեռնարկությունների 10,2 տոկոսի դիմաց: Ընդ որում կարևոր է, որ շահույթի ավելացումը ձեռք է բերվել գլխավորապես ինքնարժեքի իջեցման, նյութական ծախսումների նվազեցման հաշվին:

Վերջին ժամանակներս մեր էկոնոմիկայի համար այդ արդյունքը, ուղղակի ասեմ, խիստ անսովոր է: Այն արժանի է, որ ուշադրությամբ ու բազմակողմանիորեն իմաստավորվի: Ի՞նչ կարելի է ասել այդ առթիվ: Ըստ երևույթին տնտեսական մեխանիզմում դեռևս արդյունավետ ազդակներ չեն ստեղծվել, որպեսզի ձեռնարկությունները էլ ավելի բարձր պլանային առաջադրանքներ ստանձնեն: Այդ մասին էլ պետք է մտածել: Բայց, վերջ ի վերջո, մեզ համար, ընկերներ, կարևոր է վերջնական արդյունքը: Եվ եթե տնտեսական մեխանիզմը գործեց, ապահովվում է իրական արդյունքների բարելավումը, ապա դա հենց այն է, ինչ պահանջվում է: Ուսանելի դաս է: Այն պետք է վերջապես պլանային մարմիններին մղի վճռականորեն վերանայելու պլանավորման նկատմամբ մոտեցումները, ծանրության կենտրոնը «պլանով ճնշելուց» փոխադրի տնտեսական լծակների ու խթանների վրա:

Փորձը, ընկերներ, ցույց է տալիս, որ տնտեսական ռեֆորմի ընթացքը ՍՄԿԿ Կենտկոմի և կառավարության մշտական ուշադրության կարիքն ունի: Պետք է խոստովանել, որ պետական պատվերի գաղափարի խեղաթյուրումը նրանք ուշացումով հայտնաբերեցին: Անհազանգերը, որ ստացվում էին, ժամանակին և պատշաճ կերպով չգնահատվեցին: Այժմ այդ սխալը շտկվում է: Մոտ ժամանակներս կառավարական որոշումներ կընդունվեն պետական պատվերների կիրառման կարգի մասին: Ռեֆորմի սկզբնական փուլում աշխատավորական կոլեկտիվների և կառավարման մարմինների ուշադրության կենտրոնում հայտնվեցին նաև տնտեսագիտական նորմատիվների ձևավորման հարցերը: Այստեղ էլ դրսևորվեցին ձեռնարկությունների նկատմամբ բռնադատական բարքերը պահպանելու մինիստրությունների և գերատեսչությունների փորձերը: Շատ մինիստրություններ ջանացել են այնպիսի նորմատիվներ սահմանել, որ դրանց միջոցով հնարավորություն ունենան, ինչպես նախկինում, լավ աշխատող ձեռնարկությունների միջոցները սակավ արդյունավետների օգտին վերաբաշխելու:

Հավանաբար, այսօր, հաշվի առնելով տնտհաշվարկի և ինքնածախսածածկման ուղին բռնող աշխատավորական կոլեկտիվների մեկնարկային տարբեր հնարավորությունները, նման վերաբաշխումը ինչ-որ չափով բացատրելի է:

Բայց չէ որ նորմատիվների գլխավոր խնդիրն այլ է. ինչպես ապահովել եկամուտների անմիջական շաղկապվածությունը վերջնական արդյունքների հետ, որպեսզի կոլեկտիվի աշխատանքի որակի ամեն մի բարելավում խրախուսվի նրա եկամուտ-

ների ավելացմամբ: Մենք չենք կարող հաշտվել խնամառության, վատ աշխատելով բարեկեցիկ ապրելու հնարավորության ամեն տեսակ՝ ակնհայտ թե թաքնված, ձևերի հետ: Մեր հոգեբանության մեջ և տնտեսական պրակտիկայում, ընկերներ, արդ շատ ամուր է նստած հավասարեցման պրակտիկան: Նրան, ինչպես ասում են, վռնդում ես դռնից, իսկ նա մտնում է պատուհանով:

Մենք նույնպիսի պրոբլեմի ենք բախվում աշխատավարձի ռեֆորմի ընթացքում: Նրա առաջին արդյունքները կարծես թե հուսադրող են: Նոր պայմանների փոխադրըված կոլեկտիվներում բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, աճել նրա վարձատրությունը: Բայց այստեղ էլ հավասարեցումը անձնատուր չի լինում: Լավ աշխատողներին ըստ արժանվույն վարձատրելու և ծույլերի, խոտանարարների, անբանների վաստակը նվազեցնելու իրավունք ստանալով, ձեռնարկությունները, այդուհանդերձ, դա օգտագործում են վեհերոտ կերպով, այն սկզբունքով, թե չլինի հանկարծ որևէ մեկին նեղացնեն:

Աշխատավորական կոլեկտիվների գործունեության մեջ մենք առայժմ չենք հաղթահարել լճացման ժամանակաշրջանից ժառանգած մոտեցումները, որոնց դեպքում ստեղծագործական, բարձրարդյունավետ, իսկ երբեմն էլ եզակի աշխատանքի օրինակ ցույց տվող բանվորների, տեխնիկների, ինժեներների աշխատավարձը արհեստականորեն սահմանափակվում է: Քննադատական վերաբերմունքի են արժանի նաև որոշ նորմատիվ ակտեր դրա վերաբերյալ:

Մի՞թե դեռևս պետք է ապացուցել, որ հավասարարակցման միտումներն արմատախիլ անելու ամենաարդյունավետ ուղին տնտհաշվարկի սկզբունքների հետևողական կենսագործումն է ո՛չ միայն աշխատավորական կոլեկտիվների, այլև դրանց բոլոր ստորաբաժանումների գործունեության մեջ, յուրաքանչյուր աշխատատեղում:

Պարզապես ասած, ռեֆորմը չի գործի, չի տա մեր ակնկալած արդյունքները, եթե խորապես չշոշափի բառացիորեն յուրաքանչյուր աշխատավորի անձնական շահերը, եթե չդառնա նրա հարազատ գործը:

Արմատական տնտեսական ռեֆորմի մայր ուղղություններից մեկը կոոպերատիվ շարժման լայն զարգացումն է: Այդ հարցերը բավականին հանգամանորեն քննարկվեցին թե կոլտնտեսականների համագումարում և թե Գերագույն սովետի այն նստաշրջանում, որը հաստատեց կոոպերացման մասին օրենքը: Դրանով իսկ մենք հիմնականում ավարտեցինք նրա ըստ ամենայնի զարգացման համար անհրաժեշտ նախադրյալների ստեղծումը: Կենտրոնական կոմիտեն ելնում է այն բանից, որ կոոպերատիվ շարժման վերելքը լայն հնարավորություններ է ընձեռում հասարակության կենսականորեն կարևոր բազում պրոբլեմների լուծման համար:

Մենք կոոպերացիայի զարգացմանը տվեցինք հենց այն նշանակությունը և այն դերը, որոնք նրան հատկացնում էր Վ. Ի. Լենինը: Ներկայումս ծանրության կենտրոնը փոխադրվում է պրակտիկ գործերի ասպարեզ: Եվ սովետների, կուսակցական կազմակերպությունների անմիջական պարտականությունն է ամեն կերպ պաշտպանել կոոպերացիայի հիման վրա վերակառուցման գործում հարանուն ավանդ ներդնելու աշխատավորների ձգտումը:

Ընկերներ, տնտեսական ռեֆորմը զգալիորեն ավելի լավ կիրականացվեր, եթե կառավարման ապարատում այնքան կենսունակ չլինեին պահպանողականությունը: Հրամայականությունը և վարչարարությունը համառորեն կառչում են իրենց դիրքերից: Ռեֆորմի պրակտիկ իրագործման ընթացքում մենք իրապես զգում ենք իներցիոն ուժերի դիմադրությունը, և դա մերթ ընդ մերթ հանգեցնում է կիսատ-պռատ, փոխզիջողական, իսկ երբեմն էլ սխալ որոշումների կայացման:

Չէ որ փաստ է, ընկերներ, որ պետական արտադրական միավորումներ ստեղծելու պատրվակով փորձ արվեց վերածնել նախկին բյուրոկրատական մինիստրական գլխավոր վարչության համակարգը: Այդ միջոցով մտադիր էին ինքնուրույն ձեռնարկությունների կամավոր միավորման գաղափարը նենգափոխել խիստ կենտրոնացված կազմակերպությամբ, պահպանելով գերատեսչական միջնորմներն ու կառավարման ուռճացած ապարատը:

Թե՛ կենտրոնում, թե՛ տեղերում դեռևս քիչ չեն այն աշխատողները, որոնք չեն ընդունում կառավարման նոր ձևերը, որոնք համապատասխանում են դեմոկրատացման և տնտեսական ռեֆորմի պայմաններին:

Դա դրսևորվեց նաև կառավարման միութենական և հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների, մարզային ու երկրամասային մարմինների կառավարչական ապարատը կրճատելիս: Այստեղ ի՞նչ պետք է ասել: Մեզ համար



սա սկզբունքային հարց է: Մենք պետք է հաստատակամորեն վարենք ապարատը կրճատելու և էժանացնելու, նրա աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու գիծը: Միաժամանակ պետք է հոգ տանենք, որ այդ միջոցառումների հետևանքով ազատվող մարդիկ չհիմնավորվեն ուրիշ գրասենյակներում, այլ գնան արտադրություն, սպասարկման ոլորտ, կոոպերատիվներ, առևտրի բնագավառ, կոմունալ տնտեսություն՝ այնտեղ, որտեղ իրոք կադրերի պակաս է զգացվում:

Ինչպես տեսնում ենք, ռեֆորմի սկզբի հետ կապված պրոցեսների նույնիսկ հակիրճ վերլուծությունը ցույց է տալիս, թե դա ինչ դժվար գործ է, թե դա ինչ մեծ և անդուլ ուշադրություն է պահանջում: Այո՛, դժվարություններ կան: Դրանք բացառված չեն նաև ապագայում, բայց ռեֆորմն ընդգրկում է տնտեսության ավելի ու ավելի լայն ոլորտներ և ցուցադրում իր կենսունակությունը:

Հաշվի առնելով կուտակված փորձը, մենք պետք է հանգամանորեն նախապատրաստվենք նյութական արտադրության ոլորտի բոլոր ձեռնարկությունները 1989 թվականի սկզբից տնտեսավարման նոր պայմանների փոխադրելն ավարտելուն: Սա շատ լուրջ հարց է: Նրանում մանրուքներ չկան, քանի որ ռեֆորմը կշոշափի նորանոր միլիոնավոր աշխատողների շահերը:

Անցյալում թույլ տրված ամենամեծ սխալը, որը երբեք չի կարելի կրկնել, ձեռնարկությունների կաբինետային նախապատրաստումն էր նոր պայմաններում աշխատելուն: Հենց այնտեղ, որտեղ աշխատավորները, աշխատավորական կոլեկտիվների խորհուրդները մի կողմ էին կանգնում ռեֆորմն իրականացնելուց, որտեղ ամեն ինչ լուծվում էր թաքուն, վերևից, հենց այդտեղ էլ հայտնաբերվեցին ամենալուրջ վրիպումները, ծագեցին բազմաթիվ չկանխատեսված դժվարություններ: Իսկ դա անդրադարձավ մարդկանց սոցիալական ինքնազգացողության, ռեֆորմի նկատմամբ նրանց վերաբերմունքի վրա:

Այս տարվա փորձը մեր մեջ ամրապնդեց նաև արտադրության միջոցների մեծածախ առևտրին անցումն արագացնելու անհրաժեշտության ըմբռնումը: Ի՞նչ ենք տեսնում այսօր: Նրանց համար, ովքեր անցել են տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման, մեծածախ առևտուրը ոչ միայն ցանկալի է, այլև կենսականորեն անհրաժեշտ: Քանի որ եկող տարվա սկզբից նյութական արտադրության ոլորտի բոլոր ձեռնարկությունները աշխատելու են տնտհաշվարկով, մենք, ըստ երևույթին, պետք է նորովի մոտենանք նաև արտադրամիջոցների մեծածախ առևտրին անցնելու ժամկետներին, որպեսզի այն չձգձգվի երկար տարիներ, այլ ավարտվի ընթացիկ հնգամյակի շրջանակներում: Կարծում եմ, որ թե ՍՍՀՄ պետպլանը, թե պետմատը կոնկրետ առաջարկություններ կներկայացնեն դրա վերաբերյալ:

Եվ, անշուշտ, շատ բան հիմա դեմ է առնում գնագոյացման ռեֆորմին: Ես նկատի ունեմ և մեծածախ, և գնման, և մանրածախ գների, և սակագների վերանայումը: Այդ չլուծված պրոբլեմը, անչափ բարդացնում է տնտեսական ռեֆորմի իրագործումը: Առանց գների ռեֆորմի մենք չենք կարող տնտեսական նորմալ հարաբերություններ ստեղծել ժողովրդական տնտեսության մեջ, ապահովել արտադրության ծախսերի և արդյունքների հիմնավորված գնահատականը, ապրանքների և սպասարկումների փոխանակման համարժեքությունը, խթանել գիտատեխնիկական առաջընթացը և ռեսուրսախնայողությունը, նորմալացնել շուկայի իրադրությունը և իրագործել արդարացի բաշխում ըստ աշխատանքի:

Ինչպե՞ս կարելի է, օրինակ, կարգավորել տնտեսության խնայողական վարումը հումքի և վառելիքի իջեցված գների պայմաններում: Դա պարզապես անհնար է անել: Կամ մի այլ հարց: Բարձր շահույթ ստանալով ապրանքների մի խմբից պետությունը միևնույն ժամանակ հարկադրված է բյուջեից տասնյակ միլիարդավոր ռուբլիների լրավճարներ տրամադրել ապրանքների մի այլ խմբի համար: Մինչդեռ քաջ հայտնի է, որ թե ցածր՝ լրավճարային, թե անարդարացիորեն բարձր գները չեն խթանում արտադրության աճը և խիստ բացասաբար են անդրադառնում գիտատեխնիկական առաջընթացի վրա:

Անհրաժեշտ է նաև ընդգծել, որ գնագոյացման ռեֆորմը ինքնըստինքյան չի բարելավի տնտեսական իրավիճակը, եթե միաժամանակ չլուծվեն ֆինանսական հաշվեկշռվածության, վարկաֆինանսական համակարգում, բանկերի գործունեության մեջ, բյուջեում կարգուկանոնի հաստատման հարցերը և այլն:

Ուստի գնագոյացման ռեֆորմի իրագործումը պետք է սերտորեն շաղկապել ժողովրդական տնտեսության ֆինանսական առողջացման ծրագրի իրականացման հետ: Իսկ դա, իր հերթին, կապված է յուրաքանչյուր ձեռնարկության ֆինանսական վիճա-

կի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի աշխատանքի հետ: Այդ մասին նույնպես մոռանալ չի կարելի: Գնագոյացման ռեֆորմը չի կարող չշոշափել նաև մանրածախ գները, քանի որ դրանք սերտորեն շաղկապված են գների ամբողջ համակարգի հետ:

Այսօր շատ սննդամթերքների ու նախ և առաջ մսի ու կաթի մանրածախ գները զգալիորեն ցածր են դրանց արտադրման իրական ծախսերից և գնման գներից: Պետությունը հարկադրված է այդ տարբերությունը ծածկել սպառողին լրավճար տրամադրելու ձևով: Նման վիճակը նորմալ չէ: Այն խարխլում է այդ մթերքների արտադրման խթանները ու խնայողական վերաբերմունք առաջացնում դրանց, հատկապես հացի նկատմամբ:

Այդ ամենը մենք բոլորս լավ գիտենք, ընկերներ: Ուստի այդ խնդիրը մեզ պարզապես անհրաժեշտ է լուծել որքան էլ որ այն դժվար լինի, ինչպիսի տարակուսանք ու երկյուղներ էլ որ նա առաջին հայացքից հարուցի: Ներկայումս լրջորեն մշակվում է մանրածախ գների հարցը: Այդ առթիվ եղած առաջարկությունները կդրվեն ժողովրդի համակողմանի քննարկմանը:

Այստեղ կարող է լինել միայն մեկ մոտեցում. մանրածախ գների փոփոխումը բնավ չպետք է ուղեկցվի մարդկանց կենսամակարդակի նվազեցմամբ: Հարցն այսպես է դրվում. այն միջոցները, որոնք պետությունը այսօր վճարում է լրավճարների ձևով, որպես փոխհատուցում լիովին կտրամադրվեն բնակչությանը: Այդպիսով, մանրածախ գների վերանայումից պետությունը որևէ անմիջական ֆինանսական օգուտ չի ստանա և բնակչությունը ոչինչ չի կորցնի: Խոսքն այն մասին է, որ առողջացվի ժողովրդական տնտեսության իրադրությունը, ավելի նպաստավոր պայմաններ ստեղծվեն տնտեսական լծակների ու խթանների գործողության, արտադրանքի արտադրության ավելացման և որակի բարձրացման, սննդամթերքներով շուկայի շուտափույթ հագեցման համար:

Վերակառուցման շրջանակներում, և հաշվի առնելով արմատական տնտեսական ռեֆորմի իրագործումը, մեծ աշխատանք է կատարված արտաքին տնտեսական քաղաքականությունը վերաիմաստավորելու ուղղությամբ: Այստեղ էլ պարզվեց, որ անհրաժեշտ են սկզբունքորեն նոր մոտեցումներ, որոնք թույլ են տալիս ավելի լավ օգտագործել աշխատանքի միջազգային բաժանման առավելությունները: Ձեռնարկությունների և միավորումների համար այժմ լայնորեն բաց են արտաքին շուկա դուրս գալու, անմիջական արտաքին տնտեսական կապեր կարգավորելու, համատեղ ձեռնարկություններ ստեղծելու հնարավորությունները:

Առաջնությունը, ինչպես նախկինում, մենք տալիս ենք սոցիալիստական երկրների հետ ունեցած հարաբերություններին: Բարեկամների հետ՝ երկկողմ ու բազմակողմ հիման վրա, տնտեսական փոխօգնության խորհրդի շրջանակներում, մենք ձեռնամուխ ենք լինում գիտատեխնիկական առաջընթացի, տնտեսական համագործակցության ժամանակակից ձևերի զարգացման էական խնդիրների լուծմանը: Հեռանկարը մենք տեսնում ենք ռուբլու ազատ փոխարկելիության անցնելու, միասնական սոցիալիստական շուկա կազմավորելու մեջ:

Մենք կձգտենք նաև ընդլայնել արտաքին տնտեսական կապերը կապիտալիստական ու զարգացող երկրների հետ՝ փոխշահավետության հիման վրա: Այստեղ նաև կուրս է վերցված խորապես և կոմպլեքսայնորեն համագործակցելու գիտության, տեխնիկայի և արտադրության ասպարեզում՝ միջազգային կոոպերացման ու մասնագիտացման տարբեր ձևերի հիման վրա:

Ընկերներ, ամփոփելով տնտեսական ռեֆորմի առաջին արդյունքները, մենք չպետք է մտածենք միայն այն մասին, թե ինչպես կատարենք ընթացիկ հնգամյակը: Սկզբունքորեն կարևոր է վերակառուցման առաջին տարիների դասերն օգտագործել ապագայի, ու նախ և առաջ տասներեքերորդ հնգամյակի ստրատեգիայի մշակման համար:

Կենտրոնական կոմիտեում և կառավարության մեջ հետևյալ միասնական կարծիքն է ստեղծվում. տասներեքերորդ հնգամյակի և երկրի հետագա զարգացման կոնցեպցիայի մեջ պետք է խորապես և անշեղորեն իրականացվի մեր էկոնոմիկայի սոցիալական վերակողմնորոշման՝ Կենտկոմի ապրիլյան պլենումի, ՍՄԿԿ XXVII համագումարի գիծը:

Դա նախ և առաջ լիարժեք սննդամթերքների նկատմամբ մարդկանց պահանջմունքների բավարարումն է, շուկայի հագեցումը ժողովրդական սպառման ապրանքներով ու սպասարկումներով՝ անհրաժեշտ տեսականիով ու բարձր որակով, բնակարանային շինարարության, առողջապահության բարելավման, ժողովրդական կրթության ու մշակույթի ծրագրերի իրականացումը: Առաջնահերթ խնդիրներից է բնական միջավայրը պահպանելու, երկրի էկոլոգիական իրադրությունը արմատապես բարելավելու ջանքերի ակտիվացումը: Միայն նման մոտեցման դեպքում կարող ենք մեր հաշիվները փակել լճացման ժամանակաշրջանից մնացած պարտքերի հետ, մեր էկոնոմիկան դուրս բերել առողջ զարգացման ռելսեր՝ ի շահ ժողովրդի:

Տնտեսական զարգացման սոցիալական վերակողմնորոշումը, ազգային եկամտի մեջ սպառման բաժնի ավելացումը պետք է դառնան ամբողջ կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության առանցքը, էկոնոմիկայի տեմպերի ու համամասնությունների ձևավորման անկյունաքարը: Այսօր պարզ է, որ անհրաժեշտ են խոր փոփոխություններ, որոնք ընդգրկեին ամբողջությամբ վերցված ժողովրդական տնտեսությունը՝ սկսած սպասարկման ոլորտից և վերջացրած ծանր ինդուստրիայով ու պաշտպանական արդյունաբերությամբ:

ՍՄԿԿ Կենտկոմը ակնկալում է, որ կոնֆերանսը կարտահայտվի ի պաշտպանություն այդ կուրսի:

Այդ առնչությամբ պետք է քննարկել ևս մի հարց: Խոսքը տնտեսական զարգացման չափանիշների և ցուցանիշների մասին է: Մենք արդեն առաջին ազամ չենք ասում, որ կարևոր են ոչ թե ինքնըստինքյան արտադրանքի աճի տեմպերը, այլ դրանց իրական հագեցումը, ժողովրդի պահանջմունքների իրական բավարարումը:

Ինչ օգուտ հումքի և վառելիքաէներգետիկ ճյուղերի արտադրանքի ավելացումից, եթե այն «կուլ է գնում» ռեսուրսների ոչ ռացիոնալ, վատնողական օգտագործման հետևանքով: Կամ՝ ու՞մ է պետք գյուղմեքենաների թողարկման ավելացումը, եթե դրանք չեն վաճառվում աշխատանքային ցածր արդյունավետության պատճառով: Թեթև արդյունաբերության մեջ ևս հարկավոր է ոչ թե «համախառնը», ոչ թե ինքնըստինքյան արտադրության ծավալը, այլ այնպիսի արտադրատեսականին, որը բավարարեր մարդկանց իրական պահանջարկը:

Մենք տակավին ոչ մի կերպ չենք կարողանում հրաժարվել հին մոտեցումներից: Մեզ հարկավոր են ոչ թե պարզապես միլիոնավոր տոննաներով պողպատ, միլիոնավոր տոննաներով ցեմենտ, միլիոնավոր տոննաներով քարածուխ, այլ կոնկրետ վերջնական արդյունքներ: Մինչև երբ կարող ենք պտտվել անհուսալիորեն հնացած պատկերացումների ու ձևակերպումների արատավոր շրջանակում. «Արտադրություն՝ հանուն արտադրության» և «պլան՝ հանուն պլանի»:

Անհրաժեշտ է, որ ՍՍՀՄ պետպլանը, գիտությունների ակադեմիան առաջարկություններ մշակեն այդ հարցի վերաբերյալ, որոնց հիման վրա արդեն տասներեքերորդ հնգամյակում իրականացվեր պլանավորումը և գնահատվեին տնտեսական զարգացման արդյունքները:

Սրանք են, ընկերներ, սոցիալ-տնտեսական ոլորտում մեր կատարած աշխատանքի մի քանի արդյունքները, սրանք են արմատական տնտեսական ռեֆորմի սկզբնական փուլի մի քանի հակասություններն ու պրոբլեմները, սրանք են մոտ ապագայի և ավելի հեռավոր հեռանկարի մի քանի նկատառումները:

## 3. ԱԿՏԻՎԱՑՆԵԼ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄՏԱՎՈՐ, ՀՈԳԵՎՈՐ ՊՈՏԵՆՑԻԱԼԸ

Ընկերներ: Վերակառուցումը, սոցիալիզմի նորացումը աներևակայելի են առանց հասարակության մտավոր, հոգևոր պոտենցիալի ըստ ամենայնի ակտիվացման, որ պարունակում են գիտությունը, կրթությունը, ամբողջ մշակույթը: Բայց այս բանը միայն հավաստելը քիչ է: Պետք է գործել, ընդ որում եռանդագին ու մասշտաբայնորեն, հաշվի առնելով նաև այն, որ ամբողջ աշխարհում հենց այդ ուղղության վրա են կենտրոնացվում հսկայական ջանքերը, այդտեղ է նկատելիորեն ավելանում կապիտալ ներդրումների հոսքը:

Դեռ վերակառուցման սկզբին առաջադրվեց հետևյալ խնդիրը՝ կտրուկ կերպով փոխել առաջնությունները, բարձրացնել հոգևոր ոլորտի դերը, հաղթահարել դրա թերագնահատումը: Եվ այստեղ շատ բան է փոխվել: Ստեղծվել է մի նոր հասարակական-քաղաքական մթնոլորտ՝ բացախոսության, ստեղծագործության և դիսկուսիաների ազատության, անաչառ, անկանխակալ հետազոտության, քննադատության և ինքնա-

քննադատության մթնոլորտ: Տեղի է ունենում գիտակցության իսկական հեղաշրջում, առանց որի անհնար է նոր կյանքի արարումը:

Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս վերակառուցման մեջ մեր գիտնականների ավանդին: Կենտկոմի թեզիսներում ընդգծված է, որ կուսակցության տնտեսական ու սոցիալական ստրատեգիայի հիմքը գիտատեխնիկական առաջադիմության արագացումն է, և ամենից առաջ ավանգարդային տեխնոլոգիաների՝ միկրոէլեկտրոնիկայի, ռոբոտատեխնիկայի, ինֆորմատիկայի, կենսատեխնոլոգիայի զարգացման հետ կապված տեխնիկական առաջադիմության ժամանակակից փուլի նվաճումներին տիրապետելը:

Գիտության ու տեխնիկայի զարգացման մեջ նկատվում են դրական փոփոխություններ, մեծացել է պահանջկոտությունը արտադրանքի տեխնիկական մակարդակի նկատմամբ, կրճատվել են գիտահետազոտական կազմակերպությունների մշակումների յուրացման ժամկետները: Խոշոր միջոցներ են ձեռնարկված հետազոտությունների ու մշակումների պլանավորման, ֆինանսավորման և նյութական ապահովման, պրակտիկայում գիտական նվաճումների ավելի արագ օգտագործման, գիտական աշխատանքի խթանման համակարգի փոփոխման համար: Այդ միջոցառումներն իրենց դրական ազդեցությունն են գործել, բայց դեռ չի հաջողվել արմատապես փոխել իրադրությունը:

Իրավիճակը առանձնապես բարդ է ֆունդամենտալ հետազոտությունների բնագավառում, որոնք որոշում են գիտության և գիտատեխնիկական առաջադիմության հեռանկարները: Առաջվա պես իրենց զգալ են տալիս ղեկավարման վարչահրամայական մեթոդների տիրապետության ժամանակներից ժառանգություն մնացած արգելակիչ շատ գործոններ, երբ գիտությանը հաճախ պարտադրվում էին հետազոտությունների այնպիսի ուղղություններ, որոնք չէին բխում նրա իսկ զարգացման տրամաբանությունից: Եվ, ընդհակառակն, հետազոտությունների հեռանկարային շատ նոր բնագավառներ ժամանակին պաշտպանություն չէին գտնում կամ նույնիսկ արգելվում էին:

Մի շարք հիմնավորված խնդիրների առաջադրումը չէր ապահովվում նյութապես ու կազմակերպորեն, ինչը վարկաբեկում էր ամբողջությամբ վերցված գիտական քաղաքականությունը: Գիտությունը անհրաժեշտ չափով մտցված չէր ընդհանուր պետական պլանային համակարգի մեջ՝ որպես անբաժանելի բաղկացուցիչ մաս, առանց որի հնարավոր չեն սոցիալ-տնտեսական քաղաքականության մշակումն ու իրականացումը բառիս ամենալայն իմաստով: Գիտնականները հազվադեպ էին ներգրավվում նախագծերի, լուծումների, պլանների փորձաքննության մեջ, իսկ նրանց կարծիքը, եթե տարբերվում էր գերատեսչությունների շահերից, անտեսվում էր և երբեմն էլ հալածվում:

Դրա հետևանքով վերջին տասնամյակներում գիտության հասարակական ստատուսը և գիտական գործունեության վարկը բացահայտորեն նվազել էին: Ամենատագնապալին այն է, որ լճացման տարիներին սովետական գիտությունը սկսել էր հետ մնալ մի շարք առաջատար ուղղություններում, իսկ գերիշխողը դարձել էր դրա զարգացումը «վազել-հասնելու» ձևով: Աննորմալ է այն հանգամանքը, որ ֆունդամենտալ հետազոտությունների հիմնական ծավալը կատարող գիտության ակադեմիական հատվածին բաժին է ընկնում գիտական հետազոտություններին հատկացվող բոլոր միջոցների ընդամենը 6,8 տոկոսը:

Ահա թե ինչու այսօր գիտական քաղաքականության մեջ այդ բոլոր սխալներն ու վրիպումները միայն ուղղելը բավական չէ: Խոսքը վերաբերում է տնտեսական մեխանիզմի խոր վերակառուցմանը, նրա կարծրացած շատ կառուցվածքների վերափոխմանը, գիտության մեջ ներքին հարաբերությունների կատարելագործմանը: Անհրաժեշտ է ստեղծել որակապես նոր հայրենական գիտական պոտենցիալ, առանց որի անհնար է կարճ ժամանակամիջոցում ճեղքումներ կատարել ֆունդամենտալ հետազոտությունների ասպարեզում և դրա հիման վրա հաջողությամբ իրագործել մեր հասարակության սոցիալ-տնտեսական վերակառուցման նախատեսված ծրագրերի ամբողջ կոմպլեքսը:

Վճռական միջոցներ են պահանջվում կատարելագործելու գիտատեխնիկական առաջադիմության կառավարումը, հաղթահարելու համար գերատեսչական արգելքները: Այստեղ ուղիներից մեկը միջճյուղային գիտատեխնիկական համալիրների, ինժեներական կենտրոնների, ժամանակավոր կոլեկտիվների կազմավորումն է նպատակային խնդիրների լուծման համար: Կարևոր նշանակություն ունեն նաև տնտհաշվարկային



հարաբերությունների համակարգի մեջ գիտական կազմակերպությունների սկսված օրգանական ներգրավումը, գիտական հետազոտություններ-տեխնիկա ու տեխնոլոգիա-ինվեստիցիաներ-արտադրություն-վաճառահանում-սպասարկում ավարտուն ցիկլի ստեղծումը:

Հասկանալի է, որ ֆունդամենտալ և կիրառական գիտությունների պոտենցիալը կուտակվում է տարիներով ու տասնամյակներով, բայց գոյություն ունեն նաև գիտական զարգացումն արագացնելու գործոններ: Դրանք են ամենից առաջ գիտության մեջ իրադրության դեմոկրատացումը, բյուրոկրատիզմի ու վարչարարության, պահպանողականության ու մենաշնորհայնության հաղթահարումը: Պետք է ասպարեզ բացել տաղանդների առավելագույն դրսևորման, ստեղծագործական նախաձեռնության և ինքնակառավարման, գիտական գաղափարների ու կարծիքների իրավահավասար մրցության, մրցակցման համար: Մի շարք գիտնականներ առաջադրում են նաև գիտության կազմակերպման եղանակները բազմազանացնելու, այստեղ էլ պետական ու կոոպերատիվ ձևերի խելամիտ զուգակցմանը դիմելու նպատակահարմարության հարցը:

Առանձնակի ուշադրություն է պահանջում հասարակական գիտությունների զարգացումը: Հենց դրանք են առավել մեծ չափով տուժել անհատի պաշտամունքից, ղեկավարման բյուրոկրատական մեթոդներից, դոգմատիզմից և անգիտակ միջամտությունից: Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XX համագումարից հետո տեղի ունեցավ հասարակագիտական հետազոտությունների նկատելի աշխուժացում: Երևան եկան գիտական նոր ուղղություններ և գործը նոր ձևով վարելու ընդունակ գիտնականների նոր կադրեր: Բայց շուտով նորից սկսեցին վերակենդանանալ հասարակագիտական մտքի խնդիրների ձևավորմանը ցույց տրվող կամայական մոտեցումները, դրանց լուծման դոգմատիկ մեթոդները:

Վերակառուցման պայմաններում հասարակագիտական հետազոտությունների սոցիալական սուր պահանջ առաջացավ:

Մենք մարքս-լենինյան աշխարհայեցողական ու մեթոդաբանական հիմքի վրա հասարակական գիտությունների իսկական վերելքի կարիք ունենք: Անհրաժեշտ են վերակառուցման այնպիսի պրոբլեմների օբյեկտիվ գիտական հետազոտություններ, ինչպիսիք են տնտեսական ռեֆորմը, քաղաքական սիստեմի վերակառուցումը, դեմոկրատացումը, հումանիստական նորացումը, ազգամիջյան հարաբերությունները, նոր քաղաքական մտածողությունը և ուրիշ շատ պրոբլեմներ: Այլ կերպ ասած, հասարակությունը, որը գնում է դեպի իր որակապես նոր վիճակը, կարիք ունի զարգացման ամբողջական կոնցեպցիայի, պրոցեսների դիալեկտիկայի, մասսաների գիտակցության մեջ դրանց արտացոլման հակասականության տեսունակության, կարիք ունի կարծիքների պլյուրալիզմը հաշվի առնելու, գիտականորեն հիմնավորված հեռանկարները մշակելու:

Կուսակցությունն իր խնդիրն է համարում այսուհետև էլ խթանել ստեղծագործական որոնումը հասարակական գիտությունների մեջ, նպաստել վերակառուցման տեսական զինանոցի մեծացմանը: Բայց արմատական փոփոխություններ են պետք գիտությանը ցույց տրվող վերաբերմունքի մեջ: «Չպահանջված» գիտությունը վաղ թե ուշ մեռնում է, իսկ պրակտիկան գիտական գիտելիքին ցույց տրվող նման վերաբերմունքի դեպքում կուրանում ու տկարանում է: Այս ամենն անընդունելի է մեզ համար: Այնպես որ, պահանջելով գիտնականներից, հարկավոր է ավելի շատ վստահել նրանց և բոլոր անհրաժեշտ պայմանները ստեղծել արարման, նորի որոնման համար:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման խնդիրները պետք է քննության առնվեն սոցիալական զարգացման ընդհանուր կոնտեքստի մեջ:

Ինչպես գտնում են գիտնականները, հիմնական ուշադրությունը պետք է նվիրել տարբեր գիտությունների՝ բնական, տեխնիկական և հասարակական, «կցակետերում» եղած պրոբլեմների վերլուծությանը: Դրանց սերտ փոխգործակցությունը այսօր հեղափոխական ճեղքումներ է ապահովում գիտության ու տեխնիկայի զարգացման բոլոր ուղղություններում: Համապատասխանաբար պահանջվում է սոցիալական հետազոտությունների ավելի մեծ ազդեցություն գիտատեխնիկական առաջադիմության ամբողջ համալիրի, դրա մարդկային չափանիշի վրա: Դասեր քաղելով անցյալից, պետք է հարկ եղածին պես և խոշոր մասշտաբներով կազմակերպել գիտատեխնիկական և ինժեներական նախագծերի սոցիալական փորձաքննություն՝ լայն հասարակայնության մասնակցությամբ, որպեսզի նվազագույնի հասցվեն, իսկ ավելի լավ է, լրիվ բացառվեն էկոլոգիական և այն մյուս վնասները, որ հնարավոր են այդ նախագծերի չվերահսկող մշակման և իրացման դեպքում:

Վերջին երեք տարվա ընթացքում կուսակցության մեջ, հասարակության մեջ տեղի էր ունենում կրթության՝ որպես տնտեսական ու սոցիալական առաջադիմության, հոգևոր նորացման հիմնարար գործոններից մեկի, հսկայական դերի գիտակցման պրոցես: Մենք քննադատաբար գնահատեցինք նաև այդ ոլորտում տիրող վիճակը, մշակեցինք ուսուցման ու դաստիարակության գործում փոփոխությունների ծրագիր:

Այդ ոլորտին հատկացվում են լրացուցիչ մեծ միջոցներ: Զգալի զարգացում է ստանում ուսուցման պրոցեսի կոմպյուտերացումը, բարձրացված է ուսուցիչների աշխատանքի վարձատրությունը:

Իհարկե, կրթության և գիտության համար նախատեսվող ծախսումները մեծ են, բայց դրանց հետ մնալու գինը անհամեմատ բարձր է: Առանց կրթության, գիտական հետազոտությունների ընդհանուր և պրոֆեսիոնալ կուլտուրայի բարձր որակի, առանց այս ամենի վերակառուցման նպատակներին հասնել անհնար կլինի: Պետք է բոլոր պայմանները ստեղծել, որպեսզի սովետական մարդկանց նոր սերունդները, գիտակցական աշխատանքային ու քաղաքական կյանք մտնելով, ունենան բարձր գաղափարայնություն ու բարոյականություն, լավ տիրապետեն իրենց մասնագիտությանը, ունենան լայն կուլտուրական մտահորիզոն, պատրաստ լինեն իրենց վրա վերցնելու պատասխանատվությունը երկրի բախտի համար:

Մեր հասարակության սոցիալիստական նորացման մեջ հսկայական դեր են կոչված խաղալու սովետական մշակույթի գործիչները: Վերակառուցման պլատֆորմի վրա ստեղծագործական ուժերի համախմբումը կուսակցության գործնական խնդիրն է դարձել հետապրիլյան ժամանակաշրջանում:

Այսօր մենք կարող ենք արձանագրել, որ անցյալի գիրկն են անցնում մշակույթի ղեկավարման մեջ եղած վարչարարությունը, արվեստագետների հասցեին արվող խրատները ու քարոզները: Հոգևոր ոլորտում աստիճանաբար ստեղծվում է մրցակցության, ազատ ստեղծագործական որոնման մթնոլորտ՝ հիմնված իր սոցիալիստական հասարակության հանդեպ արվեստագետի քաղաքացիական պատասխանատվության վրա:

Գեղարվեստական մշակույթն իր մեջ կրում է սերունդների կենդանի կապն ու հաջորդայնությունը, մարդուն օգնում է զգալու հոգեհարազատություն իր ժողովրդի, նրա պատմության և ապագայի հույսերի հետ, ամեն մի պրակտիկ գործունեության հիմքում դնելու բարոյական վեհ իդեալներ:

Մեր հրապարակախոսության մեջ, գեղարվեստական և գիտական հրատարակություններում իր մասշտաբով, անկեղծությամբ, մտավոր հագեցվածությամբ աննախադեպ խոսակցություն է տեղի ունենում սոցիալիզմի նորացման ուղիների մասին, պատմության և արդիականության մասին: Եվ դա հրաշալի է, կուսակցությունը բարձր է գնահատում մտավորականության հարանուն ավանդը վերակառուցման իրականացման մեջ: Մենք ողջունում ենք գիտության, կրթության, մշակույթի ներկայացուցիչների հասարակական, քաղաքական գործունեության ակտիվացումը: Մենք նրանցից ակնկալում ենք ստեղծագործական նոր հայտնագործություններ, խոր առաջանցում մտքի և ոգու բոլոր ոլորտներում:

Այսպիսով, մշակույթի ոլորտում պրոցեսներն ամբողջությամբ վերցրած զարգանում են առողջ հիմքի վրա:

Բայց մենք թույլ կտայինք ոչ օբյեկտիվ վերաբերմունք, ճշմարտության դեմ մեղանչած կլինեինք, եթե ասեինք, որ այդ պրոցեսներն ընթանում են առանց հակասությունների, առանց թերացումների, որոնք երբեմն դուրս են գալիս սոցիալիստական արժեքների շրջանակներից: Ինչպես ամբողջ հասարակության մեջ, այնպես էլ մտավորականության շրջանում դրսևորվում են նաև պահպանողականություն, նորի չընդունում, կան նաև անլրջություն տեղի ունեցող իրադարձությունների գնահատման մեջ և նույնիսկ անպատասխանատվություն մեր զարգացման բարդ պրոբլեմներին ցույց տրվող մոտեցումներում:

Ցավոք, երբեմն առիթ է լինում տեսնել, որ որոշ ընկերներ երկրի համար այս բախտորոշ ժամանակներում այդպես էլ չեն կարողանում ազատվել երկպառակտչական պայքարից, խմբային կրքերից և անձնական պատվամոլությունից: Քիչ չեն նաև այնպիսիք, ովքեր նյարդայնությամբ են ընդունում ստեղծագործական որոնումները, իսկ հարանուն բազմազանությունը դիտում են որպես շեղում սոցիալիստական արվեստի սկզբունքներից: Դա հասկանալի է. շատ երկար ժամանակ միատեսակությունը, միօրինակությունը, գորշությունը առաջադիմության չափանմուշներ էին համարվում: Մենք դեռ դիսկուսիաների, այլախոհության, ազատ մրցակցության սովորություն



չունենք: Չէի ցանկանա վիճակը դրամատիկ պատկերել: Ասենք, դրա համար առանձին հիմքեր էլ չկան: Բայց խելամիտ չէր լինի նման երևույթները չնկատելը, դրանց կողքով անցնելը:

Եթե խոսելու լինենք վերակառուցման ժամանակաշրջանում գիտության, կրթության և մշակույթի բնագավառում վարվող քաղաքականության գլխավոր ուղղության մասին, ապա դա դիտվում է որպես վերադարձ լենինյան սկզբունքներին, շրջադարձ դեպի մարդը, դեպի ժողովրդի հոգևոր հարստացումը: Կուսակցությունն իր խնդիրն է համարում մեծացնել ջանքերը հանուն այդ մարդասիրական նպատակի:

## 4. ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ

Ընկերներ: ՍՍՀՄ-ում տեղի ունեցող վերակառուցումը համաշխարհային նշանակության գործոն է դարձել: Սեփական տանը կատարվող արմատական փոփոխությունները պահանջեցին նաև միջազգային գործերի նկատմամբ նոր մոտեցումներ:

Գնահատելով հետպատերազմյան ժամանակաշրջանի սովետական արտաքին քաղաքականությունը, մենք չենք մոռանում, որ իմպերիալիզմն էր մեր ու մեր դաշնակիցների շուրջն ստեղծել փաստորեն արտակարգ իրավիճակ: Արևմուտքի ռազմական դաշինքը ԱՄՆ-ի գլխավորությամբ սոցիալիզմի նկատմամբ իրեն պահում էր բացահայտ ագրեսիվորեն: Պատերազմի սպառնալիքը մեզ համար դարձել էր մշտական մեծություն: Այդ սպառնալիքը չի վերացած նաև մինչև օրս: Սովետական Միությունը իր դաշնակիցների հետ միասին պարզապես չէր կարող չարձագանքել դրան, ինչպես նաև սոցիալիստական երկրների դեմ մղվող նպատակասլաց հոգեբանական պատերազմին:

Այդուհանդերձ, դասեր քաղելով անցյալից, չի կարելի չընդունել, որ վարչահրամայական մեթոդները չէին շրջանցել նաև մեր արտաքին քաղաքական բնագավառը: Պատահում էր, նույնիսկ կարևորագույն որոշումներն ընդունվում էին անձանց նեղ շրջանակի կողմից, առանց կոլեկտիվ, բազմակողմ քննարկման ու վերլուծության, իսկ երբեմն էլ առանց բարեկամների հետ հարկ եղած խորհուրդն անելու: Դա հանգեցնում էր միջազգային իրադարձությունների և մյուս պետությունների քաղաքականության նկատմամբ ոչ նույնական վերաբերմունքի, նույնիսկ սխալ որոշումների: Ցավոք, միշտ չէ, որ կշռադատվում էր, թե ինչ կնստի ժողովրդի վրա և թե ինչի կարող է հասցնել գործողությունների այս կամ այն տարբերակը:

Մեզ և ամբողջ սոցիալիստական աշխարհին նետված միջուկային մարտահրավերին ի պատասխան անհրաժեշտ էր հասնել ԱՄՆ-ի հետ ստրատեգիական զուգակշռության: Եվ դա արվեց: Բայց մենք, իմպերիալիզմին հակազդելու ռազմական կողմի վրա կենտրոնացնելով հսկայական միջոցներ և ուշադրություն, միշտ չէ, որ պետության անվտանգության ապահովման, լարվածության մեղմացման և ժողովուրդների փոխըմբռնման համար օգտագործում էինք այն քաղաքական հնարավորությունները, որ բացվել էին աշխարհում կատարվող հիմնարար փոփոխությունների կապակցությամբ:

Հետևանքը եղավ այն, որ թույլ տվեցինք ներքաշել մեզ սպառազինությունների մրցավազքի մեջ, ինչը չէր կարող չանդրադառնալ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման և նրա միջազգային դրության վրա:

Այնինչ սպառազինությունների մրցավազքը մոտենում էր կրիտիկական նիշին: Այդ ֆոնի վրա խաղաղության և զինաթափման օգտին մեր ավանդական քաղաքական ու հասարակական գործունեությունը սկսեց կորցնել իր համոզչությունը: Իսկ եթե ավելի սուր ասենք՝ չբեկելով նման զարգացման տրամաբանությունը, կարելի էր իրոք հայտնվել ռազմական առճակատման եզրին:

Ահա թե ինչու պահանջվեց արտաքին քաղաքականության ոչ թե պարզապես կատարելագործում, այլ վճռական նորացում:

Դրա համար պետք էր նոր քաղաքական մտածողություն: Եվ դրա հիմքերը դրվեցին Կենտկոմի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի կողմից: Պլենումն ու համագումարը տվեցին վերակառուցման պայմաններում մեր միջազգային գործունեության փիլիսոփայական հիմնավորումը: Նոր մտածողությունը փակ և ավարտուն դոկտրինա չէ։

Այն դիալեկտիկական է, ինչը թույլ է տալիս մշտապես կատարելագործել և զար-

գացնել քաղաքականությունը կենդանի կյանքի ընթացքին համապատասխան: Եվ իհարկե՝ մեր սոցիալիստական ընտրությանը, լենինյան սկզբունքներին համապատասխան:

Ինչպես ներքին գործերում, այստեղ նույնպես սովետական ղեկավարությունը դիմեց Լենինին, նրա փորձին՝ ամենուրեք, բոլոր իրավիճակներում գործել ռեալիզմի դիրքերից: Միայն այդպիսի արտաքին քաղաքականությունը կարող է արդյունավետորեն ծառայել վերակառուցմանը: Միայն այդ դեպքում նա կարող է ռեալիստական վերաբերմունք ակնկալել նրանց կողմից, ում այն ուղղված է: Միայն այդ որակով է նա ընդունակ դառնում օգնելու աշխարհի փրկությանը վերահաս սպառնալիքներից:

Վերլուծելով արդի աշխարհը, մենք ավելի հստակորեն պատկերացրինք, որ միջազգային հարաբերությունները, չկորցնելով դասակարգային բնույթը, իրենց ավելի ու ավելի մեծ չափով են դրսևորում որպես հենց ժողովուրդների փոխհարաբերություններ: Մենք հավաստեցինք ժողովուրդների, ազգերի, ձևավորվող նոր ազգային գոյացումների հարաճուն դերը համաշխարհային գործերում: Իսկ դա ենթադրում է, որ միջազգային գործերում չի կարելի հաշվի չնստել շահերի բազմազանության հետ: Դրանք հաշվի առնելը նոր քաղաքական մտածողության կարևոր տարր է:

Արդիականության դիրքերից, որին բնորոշ են միջուկային սպառնալիքի մեծացումը, մյուս գլոբալ պրոբլեմների սրումը, ամբողջ հակասականությամբ հանդերձ ավելի ու ավելի ամբողջական և փոխկախված աշխարհում, բոլոր պրոցեսների միջազգայնացման ուժեղացումը, մենք ջանացինք ավելի խոր կերպով իմաստավորել պրոլետարական-դասակարգային ու համամարդկային շահերի փոխադարձ կապի գաղափարը, որն ի սկզբանե բովանդակում է մարքսիզմը: Դա մեզ բերեց այն եզրահանգմանը, որ մեր դարում համամարդկային արժեքները առաջնայինն են: Այստեղ է նոր քաղաքական մտածողության միջուկը:

Դա մեզ թույլ տվեց ավելի մասշտաբայնորեն գնահատել արդի միջազգային հարաբերությունների համար այն բարոյական արժեքների կենսական նշանակությունը, որոնք հարյուրամյակների ընթացքում մշակվել են ժողովուրդների կողմից և ընդհանրացվել, հղկվել մարդկության մեծ մտածողների կողմից:

Աշխարհում կատարվող հիմնարար փոփոխությունների վերլուծության ընթացքում հաղթահարվում են շատ ստերեոտիպեր, որոնք կաշկանդում էին մեր հնարավորությունները և որոշակի չափով առիթներ տալիս նրանց, ովքեր զբաղվում էին մեր իսկական մտադրությունների խեղաթյուրումով:

Մեծ դեր խաղաց մեր կողմից լայն կոնտակտների հաստատումը մյուս երկրների ներկայացուցիչների հետ՝ պետությունների ու կառավարությունների ղեկավարներից մինչև հասարակ քաղաքացիներ, գիտության, մշակույթի բնագավառի հանրահանաչ հեղինակությունների, ականավոր գրողների, քաղաքական կուսակցությունների, հասարակական կազմակերպությունների և շարժումների ղեկավարների ու պատվիրակությունների, արհմիութենական և սոցիալ-դեմոկրատական լիդերների, կրոնական գործիչների և պառլամենտականների հետ:

Անմիջական շփման այդ հագեցվածությունը ասես Սովետական Միությանը նորից է «հայտնագործում» արտաքին աշխարհի համար: Իսկ մենք մեր կողմից հնարավորություն ստացանք ավելի լավ տեսնել ու հասկանալ շրջակա աշխարհը, մասնակցել նրա պրոբլեմների քննարկմանը և դրանց լուծման ուղիների որոնմանը, քաղել օգտակարը ուրիշ մշակույթների և հոգևոր ավանդույթների բովանդակած գաղափարներից, ինչը, օրինակ, իր արտահայտությունը գտավ Դելիի 1986 թվականի դեկլարացիայում: Այդ «հետադարձ կապի» օգնությամբ ավելի հեշտ դարձավ փոխըմբռնում գտնել նաև այնպիսի արժեքների նշանակության հարցում, ինչպիսիք են ազատությունը, դեմոկրատիան:

Այս ամենը դինամիկություն հաղորդեց սովետական արտաքին քաղաքականությանը, թույլ տվեց առաջ քաշել մի ամբողջ շարք խոշոր նախաձեռնություններ:

Դրանք են. մինչև 2000 թվականը միջուկային զենքը փուլ առ փուլ վերացնելու ծրագիրը, համապարփակ անվտանգության համակարգը, ընտրության ազատությունը, շահերի հաշվեկշիռը, «համաեվրոպական տունը», Ասիա—Խաղաղ օվկիանոսի ռեգիոնում հարաբերությունների վերակառուցումը, պաշտպանական բավարար մակարդակը և ոչ հարձակողական դոկտրինան, սպառազինությունների մակարդակի իջեցումը՝ որպես ազգային և ռեգիոնալ անվտանգության ամրապնդման ուղի, ուրիշի տերիտորիաներից զորքերի ու բազաների դուրս բերումը, վստահության միջոցները, միջազգային



տնտեսական անվտանգությունը, գիտության հեղինակությունը համաշխարհային քաղաքականության մեջ անմիջականորեն ներգրավելու գաղափարը:

Միջպետական գծով մեր կոնտակտների հիմքում դրվեց երկխոսությունը, իսկ զինաթափման ոլորտում՝ փոխադարձ խոր վերահսկողության պատրաստակամությունը: Դա թույլ տվեց վստահության ընդգրկումը տարածել սովորական աշխարհայեցողական սպեկտրի սահմաններից հեռու: Եվ մենք գոյակցության ու համագործակցության համար փոխըմբռնման և պատրաստակամության ոչ քիչ պոտենցիալ հայտնաբերեցինք նույնիսկ այն ազդեցիկ շրջաններում, որոնք գաղափարախոսության տեսակետից շատ հեռու են մեզանից:

Համատեղ խորհրդածությունների և որոնումների մեր անկեղծ ու բացահայտ հրավերը մեծ արձագանք գտավ աշխարհում: Իսկ հրապարակայնությունը, վերակառուցումը «նյութական» համոզչություն են հաղորդում մեր արտաքին քաղաքական գաղափարներին և նախաձեռնություններին:

Այս մոտեցումը հնարավոր դարձրեց համաշխարհային քաղաքականության մեջ ու ամենից առաջ զինաթափման բնագավառում այնպիսի խոշոր ճեղքումներ, ինչպիսիք են Ժնևը և Ռեյկյավիկը, որոնք ռեալ ընթացք տվեցին բանակցությունների պրոցեսին և կանխորոշեցին Վաշինգտոնի ու Մոսկվայի բարձր մակարդակի հանդիպումների հաջողությունը: Դրա շնորհիվ փոխվում է ամբողջ միջազգային իրավիճակը:

Նոր մտածողության տեսանկյունից քննության առնվեց սոցիալիզմի աշխարհում տիրող դրությունը: Մենք բարեկամների հետ միասին ընկերաբար ջանացինք մեր հարաբերությունների ինտերնացիոնալիստական էությունն ազատել անցյալի շերտանստվածքներից: Աշխուժացավ, գործարար և օպերատիվ դարձավ կուսակցությունների ու պետությունների ղեկավարների անձնական շփումը: Կատարելագործվում է սոցիալիստական ընկերակցության արտաքին քաղաքականության կոորդինացումը:

Համաշխարհային սոցիալիզմը անսովոր բեկումնային ժամանակաշրջան է ապրում: Սոցիալիստական երկրների դուրս գալը նոր բնագծեր, ազգային և միջազգային շրջանակներում նրանց պոտենցիալների բացահայտումը մեծացնում են սոցիալիզմի դերն ու հեղինակությունը համաշխարհային ասպարեզում:

Նոր մտածողության մեջ կարևոր տեղ է գրավում ընտրության ազատության կոնցեպցիան: Մենք համոզված ենք միջազգային հարաբերությունների համար այդ սկզբունքի համակիրառելիությանը, երբ քաղաքականության բուն գոյատևումը դարձել է գլխավոր, ընդհանրացնող համաշխարհային պրոբլեմ:

Այդ կոնցեպցիան պայմանավորված է աշխարհի աննախադեպ ու հարաճուն բազմազանությամբ: Մենք վկաներն ենք մի այնպիսի երևույթի, ինչպիսին է համաշխարհային պատմության մեջ միլիարդավոր մարդկանց ակտիվ ներգրավումը, որոնք դարեր շարունակ դուրս են մնացել այդ պատմության սահմաններից: Այդ միլիարդավոր մարդիկ ինքնուրույն պատմական ստեղծագործության բեմ են դուրս գալիս միանգամայն նոր պայմաններում: Եվ ազգային ինքնագիտակցության համատարած աճի պայմաններում նրանք դեռ կասեն իրենց խոսքը սեփական ուղու ընտրության որոնումներում:

Այդ իրադրության մեջ բոլոր միջոցներով, չխոսելով արդեն ռազմական միջոցների մասին, դրսից սոցիալական կարգերի, ապրելակերպի, քաղաքականության պարտադրումը նախորդ տարիների վտանգավոր զինահանդերձանք է: Սուվերենությունը և անկախությունը, իրավահավասարությունը և չմիջամտելը միջազգային հարաբերությունների հանրաճանաչ նորմաներ են դառնում, ինչը ինքնին XX դարի խոշոր նվաճում է: Ընտրության ազատությանը հակադրվել նշանակում է հակադրվել հենց պատմության օբյեկտիվ ընթացքին: Ահա թե ինչու ուժի քաղաքականությունը իր բոլոր ձևերով ու դրսևորումներով պատմականորեն իրեն սպառել է:

Մի խոսքով, մենք խորապես համոզված ենք, որ նոր մտածողությունը և դրա վրա հիմնված քաղաքականությունը ճիշտ արտահայտեցին արդի աշխարհի հասունացած պահանջմունքներն ու իմպերատիվները: Դրանք հույս ծնեցին, ուղի բացեցին մարդկության գիտակցության մեջ որակական փոփոխությունների համար:

Այն գլխավոր հարցին, որը բոլորից շատ է մտահոգում սովետական մարդկանց և որի առթիվ նրանք ուզում են լսել երեք տարվա աշխատանքի արդյունքների գնահատականը՝ հաջողվե՞լ է արդյոք հեռացնել պատերազմի սպառնալիքը, մենք կարող ենք պատասխանել. այո, անպայման:

Ինչո՞վ է դա արտահայտվել: Ամենից առաջ նրանով, որ միջազգային կյանքի առանցքը տեղաշարժվում է առճակատումից դեպի համագործակցություն, փոխըմ-

բռնում, դեպի բանակցություններ՝ կոնկրետ արդյունքների հասնելու հեռանկարով, առաջին հերթին զանգվածային ոչնչացման զենքի հարցում: Բարելավվել են սովետաամերիկյան հարաբերությունները: Կնքված է պայմանագիր միջուկային սպառազինությունների մի մասի վերացման մասին: Աշխուժացել է համաեվրոպական պրոցեսը միջպետական և առանձնապես հասարակական մակարդակով:

Ժնևի համաձայնագրերը և Աֆղանստանից մեր զորախմբի սկսված դուրսբերումը կարևոր միջազգային ուղենիշ դարձան ռեգիոնալ կոնֆլիկտների քաղաքական կարգավորման գործում, որոնք իրենց մեջ ամբողջ աշխարհի համար վտանգ են թաքցնում, արգելակում ժողովուրդների առաջընթացը:

Թույլ տվեք մեր կուսակցական կոնֆերանսի ամբիոնից կուսակցության ու ժողովրդի անունից մեկ անգամ ևս խորին երախտագիտություն հայտնել այն զինվորներին ու սպաներին, քաղաքացիական մասնագետներին՝ բոլոր նրանց, ում ճակատագիրը շոշափեց և ում կսկծացրեց այդ պատերազմը: **(Ծափահարություններ):** Մեր ռազմիկները Աֆղանստանից հեռանում են հայրենիքի հրամանով, որը իմաստնություն ցուցաբերեց՝ այդ տարիներին ձեռք բերելով նոր քաղաքական ու բարոյական փորձ, արդի աշխարհի, նրա հակասությունների և ապագայի ճանապարհին եղած դժվարությունների ավելի խոր ըմբռնում:

Ամբողջությամբ վերցրած, ընկերներ, արդեն գոյություն ունեցող իրողությունների վերլուծությունը թույլ է տալիս ենթադրել. եթե հաջողվի այդ իրողություններն ամրապնդել ու զարգացնել, ապա XX—XXI դարերի սահմանագծում աշխարհի համար բնորոշ կլինեն հետևյալ միտումները.

— միջազգային հարաբերությունների աստիճանական ապառազմականացում և հումանիզացում, երբ ի վերջո ոչ թե ևսամոլական ձգտումներն ու նախապաշարմունքները, այլ բանականությունը, իմացությունն ու բարոյական նորմերը պետություններին կառաջնորդեն աշխարհի մեծաթիվ հակասությունները լուծելիս և շահերի հաշվեկշիռ հասնելիս, երբ ճանաչված կլինի յուրաքանչյուրի համար ընտրության ազատության իրավունքը.

— պետությունների անվտանգության ապահովումը ռազմական պոտենցիալների հարաբերակցության ոլորտից ավելի ու ավելի մեծ չափով կտեղափոխվի քաղաքական փոխգործակցության և միջազգային պարտավորությունների խստիվ կատարման ոլորտ, կստեղծվի միջազգային անվտանգության համապարփակ համակարգ, գլխավորապես միավորված ազգերի կազմակերպության դերի և արդյունավետության բարձրացման միջոցով.

— գիտատեխնիկական պոտենցիալի վիթխարի աճն ավելի քաղաքակիրթ կերպով կօգտագործվի գլոբալ տնտեսական, էկոլոգիական, էներգետիկ, պարենային, բժշկական և այլ խնդիրների համատեղ լուծման համար, հօգուտ բովանդակ մարդկության.

— անկախ պետությունների և ժողովուրդների բազմակողմ և կամավոր շփումը հուսալիորեն կծառայի նրանց նյութական ու հոգևոր փոխհարստացմանը, կամրապնդի ընդհանուր խաղաղության կառուցվածքը:

Այստեղ արդյոք պատրանքներ չկա՞ն: Մի՞թե անհետացել են ագրեսիայի ու պատերազմների իմպերիալիստական ակունքները: Ոչ: Մենք չենք մոռանում իմպերիալիստական միլիտարիզմի կողմից աշխարհին սպառնացող վտանգը և գտնում ենք, որ սկսված դրական պրոցեսների անշրջելիության երաշխիքներ դեռևս չկան:

Քաղաքական նոր մտածողությունն էլ հենց թույլ է տալիս առաջվանից ավելի լայն քաղաքական հիմքի վրա տեսնել ու գտնել ուժի քաղաքականությանը դիմակայելու նոր հնարավորություններ: Այդ հնարավորություններն ամրապնդում են նաև նոր օբյեկտիվ գործոնները, որոնք առաջացել են այս դարի երկրորդ կեսին:

Սրանով է որոշվում նաև մեր պաշտպանական շինարարությունը, որի արդյունավետությունն այսուհետև պետք է ապահովվի առավելապես որակական չափանիշներով՝ ինչպես տեխնիկայի, ռազմագիտության, այնպես էլ զինված ուժերի կազմի առնչությամբ: Այն պետք է երաշխավորի սովետական պետության ու նրա դաշնակիցների հուսալի անվտանգությունը, իրականացվի մեր պաշտպանական դոկտրինային խստիվ համապատասխան:

Մեր պրակտիկ միջազգային գործունեության մեջ մենք այսուհետև էլ կայուն խաղաղության ու միջազգային համագործակցության ուղիներ կորոնենք: Մեզ համար այսուհետև էլ առաջին պլանում կլինեն մեր և սոցիալիստական երկրների հարաբերությունները: Մենք հետևողականորեն կվարենք զարգացող պետությունների,



չմիանալու շարժման հետ մեր հարբերությունների խորացման գիծը: Ակտիվ երկխոսություն ու բանակցություններ կանցկացնենք իրենց երկրներում իշխանությամբ օժտված պետական գործիչների հետ, նախ և առաջ համաշխարհային քաղաքականության գլխավոր ուղղությունում՝ զինաթափման հարցերում: Վերակառուցման տարիներին մենք բարելավել ենք հարաբերությունները կամ առաջին անգամ հարաբերություններ ենք հաստատել մեծ թվով պետությունների հետ՝ հարևան կամ շատ հեռավոր: Եվ ոչ մեկի հետ հարաբերությունները չենք փչացրել: Կաշխատենք այսուհետև էլ այսպես գործել:

ՍՄԿԿ-ն իրեն համարում է անբաժանելի մասը համաշխարհային կոմունիստական շարժման, որն այժմ իր պատմական զարգացման նոր փուլի անցնելու ուղիների դժվարին որոնում է կատարում: Եվ մենք լիակատար իրավահավասարությամբ և հարգալից վերաբերմունքի հիման վրա ակտիվորեն կմասնակցենք այդ որոնմանը: Միջազգային հարաճուն պոտենցիալ է ամփոփված համաշխարհային գիտությունն ու մշակույթը ներկայացնող բազմաթիվ հասարակական ուժերի, գաղափարախոսական այլ ուղղության քաղաքական կուսակցությունների, առաջին հերթին սոցիալիստների, սոցիալ-դեմոկրատների, լեյբորիստների, ուրիշ այսպես կոչված «ձախ» շրջանների ու շարժումների հետ մեր նոր հարաբերություններում: Անփոփոխ է մեր համերաշխությունը ամբողջ աշխարհի աշխատավորների հետ, գաղութատիրության, ռասիզմի ու հետադիմության դեմ պայքարող մարտիկների հետ:

Ընկերնե՛ր: Սովետական արտաքին քաղաքականությունը, չնայած անցյալում թույլ տրված որոշ սխալներին ու վրիպումներին, ընդհանուր առմամբ հսկայական ծառայություններ ունի երկրի, սոցիալիզմի հանդեպ, ամբողջ մարդկության հանդեպ: Վերակառուցումը այդ քաղաքականությունից պահանջեց նոր որակ՝ թե ըստ էության, և թե՛ ըստ ձևի: Այնպես, ինչպես ներքին քաղաքականությունը, այն պետք է գործնականորեն ներառի կուսակցության ու ժողովրդի կոլեկտիվ միտքը: Օպերատիվորեն հաշվի առնի ոչ միայն ընթացիկ, այլև կանխատեսելի փոփոխությունները: Աշխարհում տեղի ունեցող օբյեկտիվ պրոցեսներն ու մեր հնարավորությունները պետք է դառնան մշտական գիտական ու հրապարակային քննարկումների առարկա՝ հասարակայնության ու նրա կազմակերպությունների մասնակցությամբ: Հարկավոր է լրջորեն բարձրացնել միջազգային հարցերին վերաբերող ինֆորմացիայի որակը: Քաղաքական սիստեմի ռեֆորմի շրջանակներում պետք է ստեղծվի միջազգային քաղաքականության հարցերի գործարար ու որակյալ քննարկման սահմանադրական լիազոր գործուն մեխանիզմ:

## II. ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՌԵՖՈՐՄԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՆՇՐՋԵԼԻՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԵՐԱՇԽԻՔՆ Է

Ընկերնե՛ր: XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի քննարկմանը դնելով հասարակական-քաղաքական կյանքի արմատական դեմոկրատացման և քաղաքական սիստեմի ռեֆորմի ծրագիրը, ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ դա հնարավորություն կտա արմատապես բարձրացնել մեր քաղաքական հաստատությունների արդյունավետությունը, ի հայտ բերել սոցիալիստական ժողովրդապետության պոտենցիալը:

### *1. ԻՆՉՈՒ Է ՀԱՐԿԱՎՈՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՌԵՖՈՐՄԸ*

Մենք այս աշխատանքը դատարկ տեղում, զրոյից չենք սկսում: Մեր թիկունքում կա աշխարհի առաջին սոցիալիստական դեմոկրատիայի եզակի փորձը: Ժողովրդապետության՝ սոցիալիզմի ծնունդ հանդիսացող ձևերն ու մեթոդները հսկայական ազդեցություն են գործել մարդկության սոցիալական առաջադիմության վրա, մտել են

արդիականության քաղաքական կուլտուրայի մեջ: Հենց մեր երկրում է ծնունդ առել աշխատավորների իշխանությունը՝ մարմնավորված սովետների հանրապետությունում, բանվորական վերահսկողությունը, աշխատանքի իրավունքը և անհատի ուրիշ կարևորագույն սոցիալական իրավունքներ, կանանց ու տղամարդկանց, ազգերի ու ազգությունների իրավահավասարությունը: Այլ խոսքով, մենք առաջինն ենք եղել 20-րդ դարի դեմոկրատական շատ նախաձեռնություններում:

Իսկ ինչու՞ է այսօր առաջ քաշվում քաղաքական սիստեմի արմատական ռեֆորմի խնդիրը: Բանն, ընկերներ, նախ և առաջ այն է, և դա մենք պետք է այսօր ընդունենք, որ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի շնորհիվ ստեղծված քաղաքական սիստեմը որոշակի փուլում լուրջ ձևախեղումների ենթարկվեց:

Դրա հետևանքով հնարավոր դարձավ թե՛ Ստալինի ու նրա շրջապատի անսահման իշխանությունը, թե՛ բռնությունների ու ապօրինությունների ալիքը: Կառավարման այն տարիներին ստեղծված վարչահրամայական եղանակները կործանարար ազդեցություն գործեցին մեր հասարակության զարգացման տարբեր կողմերի վրա: Այս սիստեմից են գալիս արմատները շատ դժվարությունների, որ մենք այսօր էլ կրում ենք:

Կուսակցության XX համագումարի որոշումները հնարավորություններ բացեցին կուսակցության ու պետության կյանքի լենինյան սկզբունքների խախտումների հաղթահարման համար: Սակայն այդ հնարավորությունները չօգտագործվեցին նախ և առաջ սոցիալիստական դեմոկրատիայի նշանակության թերագնահատման ու նսեմացման պատճառով: Եվ դա վերստին հանգեցրեց անհատի պաշտամունքի երևույթների կրկնությանը:

Գոյություն ունեցող քաղաքական սիստեմն անընդունակ եղավ մեզ ապահովելու վերջին տասնամյակներում տնտեսական ու սոցիալական կյանքում տեղ գտած լճացման երևույթների ահագնացումից և անհաջողության դատապարտեց այն ժամանակ ձեռնարկված ռեֆորմները: Բնորոշ դարձավ կուսակցական-քաղաքական ղեկավարության ձեռքում տնտեսական-կառավարչական ֆունկցիաների ավելի ու ավելի մեծ կենտրոնացումը: Միաժամանակ գերաճեց գործադիր ապարատի դերը:

Տարբեր պետական ու հասարակական մարմիններում ընտրված անձանց թիվը հասավ երկրի չափահաս բնակչության մեկ երրորդին, բայց նրանց հիմնական զանգվածը մեկուսացված էր պետական ու հասարակական գործերի լուծմանը ռեալ մասնակցությունից:

Լճացման ժամանակաշրջանում կառավարչական ապարատը, որը վերաճեց շուրջ հարյուր միութենական և ութ հարյուր հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների, փաստորեն սկսել էր իր կամքը թելադրել թե՛ տնտեսությանը, թե՛ քաղաքականությանը: Հենց գերատեսչություններն ու մյուս կառավարչական կառուցվածքներն էին իրենց ձեռքին պահում ընդունված որոշումների կատարումը, իրենց գործողություններով ու անգործունեությամբ որոշում, թե ինչը պետք է լինի, և ինչը ոչ: Սովետները, իսկ մեծ մասամբ նաև կուսակցական մարմինները ի վիճակի չէին վերահսկելու գերատեսչական շահերի հարձակումը: Ունիվերսալ կանոն էր դարձել այն, որ որոշումներ ընդունող մարմինը տնտեսական պատասխանատվություն չէր կրում իր գործողությունների հետևանքների համար:

Ստեղծված քաղաքական համակարգի լուրջ թերությունն էր նաև հասարակական կյանքի չափազանց մեծ պետականացումը: Իհարկե, սոցիալիզմի օրոք պետության խնդիրն ու ֆունկցիաները զգալիորեն ավելի լայն են, քան կապիտալիզմի պայմաններում: Բայց, մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների կարծիքով, կառավարչական ֆունկցիաների նման ընդլայնում պետք է ձեռք բերվի ոչ թե վարչարարության ու հարկադրման վրա հենվող իշխանության ուժեղացման միջոցով, այլ նախ և առաջ դեմոկրատական գործոնի ակտիվացման, կառավարման մեջ ժողովրդական լայն զանգվածների ներգրավման միջոցով:

Հիշենք սոցիալիստական պետության լենինյան հայտնի բնորոշումը, որն արդեն պետություն չէ «բառիս իսկական իմաստով» և ոչ էլ՝ «կիսապետություն», որն աստիճանաբար վերաճում է հասարակական ինքնակառավարման: Ցավոք, Վ. Ի. Լենինի մահից հետո տեսության մեջ, ասենք նաև պրակտիկայում գերիշխեց պետության նկատմամբ այդ հասկացության հենց «բուն», այսինքն հին իմաստով մոտեցումը: Պետական կարգավորումը տարածվեց հասարակական գործունեության անչափ լայն ոլորտի վրա: Կենտրոնացված մանրամասն պլանավորմամբ ու վերահսկողությամբ կյանքի բոլոր անկյուններն ընդգրկելու ձգտումը բառացիորեն կաշկանդել էր հասա-



րակությունը, լուրջ արգելակ դարձել մարդկանց, հասարակական կազմակերպությունների ու կոլեկտիվների նախաձեռնության համար: Դա այլ բաների թվում ծնեց «ստվերային» էկոնոմիկա և մշակույթ, որոնք մակաբուծական գոյություն էին պահպանում բնակչության նյութական ու հոգևոր պահանջմունքները ժամանակին և լրիվ ծավալով բավարարելու պետական մարմինների անընդունակության հետևանքով:

Պետական կառուցվածքների բյուրոկրատացումը, մասսաների սոցիալական ստեղծագործության թուլացումը հասարակությանը վարժեցրին մտածողության միօրինակության ու քարացածության: Ձևավորվել է և դեռևս շարունակում է մարդկանց գիտակցության վրա ներգործել սոցիալիստական ժողովրդապետության պարզունակացված, թերի պատկերը, երբ իշխանության փաստական իրագործումը նույնացվում է ոչ թե աշխատավորների ակտիվ քաղաքական գործունեության, այլ նախ և առաջ գործադիր մարմինների հետ:

Վերջապես, գործող քաղաքական սիստեմը տասնամյակներ շարունակ հարմարեցվում էր ոչ թե օրենքների շրջանակներում հասարակական կյանքի կազմակերպմանը, այլ գլխավորապես կամայական կարգադրությունների ու ցուցումների կատարմանը: Խոսքով դեմոկրատական սկզբունքների հռչակումը և գործով ավտորիտարությունը, ժողովրդապետության մասին ամբիոնից տեղացող շաղակրատանքները, բայց պրակտիկայում իրականացվող վոլյունտարիզմն ու սուբյեկտիվիզմը, դեմոկրատական հաստատությունների մասին բարբաջանքներն ու իրականում սոցիալիստական ապրելակերպի նորմերի ռեալ ոտնահարումը, քննադատության ու հրապարակայնության պակասը՝ այս ամենը բավական լայնորեն տարածվել, արմատացել էր հասարակության կյանքում:

Այսպիսի մեթոդների հատույցը դաժան եղավ՝ մասսաների անտարբերություն, նրանց սոցիալական ակտիվության թուլացում, հանրային սեփականությունից և կառավարումից աշխատավոր մարդու օտարացում: Հենց իշխանության քարացած սիստեմին, նրա հրամայական-ճնշիչ կառուցվածքին են այսօր բախվում վերակառուցման արմատական պրոբլեմները՝ թե՛ տնտեսական ռեֆորմը, թե՛ սոցիալ-մշակութային ոլորտի զարգացումը, թե՛ երկրում տեղի ունեցող ամեն ինչի նկատմամբ մարդկանց մեջ տնտեսատիրոջ շահագրգիռ վերաբերմունքի դաստիարակումը:

1985 թվականի գարնանը կուսակցությունը վճռական պայքար սկսեց հասարակական-քաղաքական կառուցվածքների նորացման համար: Տեղի է ունենում նոր տնտեսական մեխանիզմի աստիճանական կարգաբերում: Փոխվում է հասարակական հարաբերությունների բնույթը: Ամրապնդվում են վերակառուցման իրավական հիմքերը: Մենք սովորում ենք դեմոկրատիա ու հրապարակայնություն, սովորում ենք վիճել և դիսկուսիաներ վարել, միմյանց ճշմարտությունն ասել: Սա, իհարկե, արդեն քիչ բան չէ:

Բայց դեմոկրատացման պրոցեսները՝ թե՛ կենտրոնում, թե՛ տեղերում դանդաղ են զարգանում: Այսօր հարկավոր է խիզախություն ունենալ խոստովանելու. եթե քաղաքական սիստեմը մնա անշարժ, առանց փոփոխությունների, ապա մենք վերակառուցման խնդիրները լուծել չենք կարողանա:

Առաջադրելով քաղաքական սիստեմի արմատական ռեֆորմի հարցը, հարկավոր է նախ և առաջ ելնել մի պարզ պատկերացումից. նրա որ հատկանիշներն են դիմացել ժամանակի քննությանը և մեզ անհրաժեշտ են այսօր, իսկ որ հատկանիշները, ընդհակառակն, հարկավոր է նվազագույնի հասցնել կամ լիովին հաղթահարել:

Խոսքը, ինչպես մենք պատկերացնում ենք, պետք է վերաբերի հետևյալ հիմնական խնդիրների լուծմանը:

Նախ, ամեն ինչ անել, որպեսզի միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորներ ոչ թե խոսքով, այլ գործով ներգրավվեն երկրի կառավարման մեջ:

Երկրորդ, ամենալայն ասպարեզը բացել հասարակության ինքնակարգավորման և ինքնակառավարման պրոցեսների համար, պայմաններ ստեղծել քաղաքացիների, իշխանության ներկայացուցչական մարմինների, կուսակցական ու հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության լրիվ զարգացման համար:

Երրորդ, կարգավորել բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի շահերի և կամքի ազատ ձևավորման ու արտահայտման, սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության մեջ դրանց համաձայնեցման և իրացման մեխանիզմը:

Չորրորդ, պայմաններ ապահովել յուրաքանչյուր ազգի և ազգության հետագա ա-

զատ զարգացման, ինտերնացիոնալիզմի սկզբունքներով նրանց բարեկամության ու իրավահավասար համագործակցության ամրապնդման համար:

Հինգերորդ, արմատապես ամրապնդել սոցիալիստական օրինականությունն ու իրավակարգը, բացառելու համար իշխանության բռնատիրման և չարաշահման հնարավորությունը, արդյունավետորեն դիմակայել բյուրոկրատիզմին ու ձևականությանը, ապահովել քաղաքացիների սահմանադրական իրավունքների և ազատությունների պաշտպանության, ինչպես նաև նրանց կողմից հասարակության ու պետության նկատմամբ ունեցած պարտականությունների կատարման հուսալի երաշխիքներ:

Վեցերորդ, հստակորեն սահմանազատել կուսակցական ու պետական մարմինների ֆունկցիաները՝ կոմունիստական կուսակցության՝ որպես հասարակության քաղաքական ավանգարդի դերի և սովետական պետության՝ որպես ժողովրդի իշխանության միջոցի դերի լենինյան կոնցեպցիաներին համապատասխան:

Վերջապես, յոթերորդ, ստեղծել այնպիսի արդյունավետ մեխանիզմ, որը հաշվի առնելով փոփոխվող ներքին ու միջազգային պայմանները, ապահովի քաղաքական սիստեմի ժամանակին ինքնանորացումը՝ սիստեմ, որն ընդունակ լինի սոցիալիստական դեմոկրատիայի ու ինքնակառավարման սկզբունքների ավելի ու ավելի ակտիվ զարգացման և կյանքի բոլոր ոլորտներում դրանց արմատավորման:

## 2. *ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄՆ ՈՒ ՄԱՐԴՈՒ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ*

Քաղաքական սիստեմի ռեֆորմի վերջնական նպատակն ու այն բանի գլխավոր չափանիշը, թե մեզ որքանով կհաջողվի կենսագործել դա, մարդու իրավունքների համակողմանի հարստացումն է, սովետական մարդկանց սոցիալական ակտիվության բարձրացումը: Այդ հարցը կենտրոնական տեղ է գրավում սոցիալիզմի տեսության մեջ և պրակտիկայում: Մեր երկրում Հոկտեմբերյան հեղափոխության գցած հիմքի վրա կառուցվեց շատ բնագավառներում քաղաքացու երաշխավորված իրավունքների պատկառազդու շենքը: Մենք օգտվում ենք դրանցից և, ինչ մեղքներս թաքցնենք, հազվադեպ ենք խորհում այն մասին, որ այդ բոլոր իրավունքները, որոնք այնքան սովորական բան են մեզ համար, աշխարհի դեռ շատ շրջաններում մնում են միայն աշխատավորների հույսը, նրանց պայքարի նպատակները:

Մարդու իրավունքները մեր հասարակության մեջ պետության պարգևը չեն, ինչ-որ մեկի բարերարությունը չեն: Դրանք սոցիալիզմի անկապտելի հատկանիշն են, նրա նվաճումը: Անհատն ու հասարակությունը, քաղաքացին ու պետությունը, մարդն ու կոլեկտիվը՝ այս ամենը միևնույն պրոբլեմի տարբեր կողմերն են: Այն, թե ինչպես է դա լուծվում, արտացոլում է քաղաքական կարգերի բնույթը և մեծապես կանխորոշում մարդկանց գործունեության արդյունքները ամբողջ հասարակական կացութաձևը: Այդ պրոբլեմի սոցիալիստական լուծումը օրգանապես միացած է կոլեկտիվիստական ու անձնական սկզբունքներին: Հասարակության կառուցվածքի այդ կարևոր հարցում մեր փիլիսոփայությունը բխում է «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» հայտնի ձևակերպումից. յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է:

Մեզ համար, ընկերնե՛ր, կարևոր է հասկանալ, որ հասարակության մեջ մարդու հենց դիրքով, նրան տրված իրավունքներով և նրա վրա դրված պարտականություններով է վերջին հաշվով որոշվում նաև նրա սոցիալական, աշխատանքային, քաղաքական ակտիվությունը: Ընդ որում, ոչ միայն հասկանալ, այլև գործել այդ ուղղությամբ, իրականացնելով տնտեսական ռեֆորմը և քաղաքական սիստեմի ռեֆորմը:

Ինչպիսի՞ կոնկրետ խնդիրներ են այստեղ կանգնած:

Նախ և առաջ անհատի սոցիալական իրավունքների մասին: Մեզանում ձևավորվել է մարդու նկատմամբ հասարակության հոգատարության ճյուղավորված համակարգ, բայց զարգացման ներկա փուլում մենք տեսնում ենք նրա թուլություններն ու թերությունները, ձգտում ենք հնարավոր ամեն բան անել աշխատանքի պայմանները բարելավելու, ժողովրդական կրթության ու առողջապահության որակը բարձրացնելու, աշխատավորների սոցիալական ապահովության մակարդակը բարձրացնելու համար: Այս ամենի մեջ արտահայտվում է սովետական մարդկանց իրավահավասարությունը, նրանց սոցիալական պաշտպանվածությունը ապահովելու կուսակցության անսասան հիմնադրույթը:

Բայց ահա թե ինչ կարելի է ասել այս կապակցությամբ: Մենք ուզում ենք ամ-



րապնդել անհատի սոցիալ-տնտեսական իրավունքների երաշխիքները, իսկ դրա համար տնտեսական ու քաղաքական պայմանների համապատասխան փոփոխություններ են պետք: Բայց թե՛ այդ փոփոխությունների բնույթը, թե՛ դրանց իրականացման ժամկետները սերտորեն շաղկապված են սովետական հասարակության բոլոր անդամների աշխատանքային գործունեության հետ: Հասարակությունից ստացվելիք սոցիալական բարիքները և աշխատանքի նկատմամբ վերաբերմունքը փոխկապակցված են ամենաանխզելի կերպով: Կարևոր է, որ յուրաքանչյուր մարդ հասկանա ինքն իր նկատմամբ պահանջկոտ վերաբերմունքի անհրաժեշտությունը: Այստեղ մեկ անգամ ևս ի հայտ է գալիս տնտեսության վարման տնտհաշվարկային սկզբունքների կարևորությունը, որոնք հնարավորություն են տալիս ոչ միայն աշխատավարձը, այլև սոցիալական պահանջմունքների բավարարումը շաղկապել մարդու, յուրաքանչյուր կոլեկտիվի աշխատանքային ավանդի հետ: Արժեքներն ու բարիքներն իրենք իրենց չեն գալիս: Դրանք ստեղծում է միայն աշխատանքը: Մեզ համար անընդունելի են գործի նկատմամբ անբարեխիղճ վերաբերմունքը, աշխատանքային ցածր կարգապահությունը, անտարբերությունը, սոցիալական խնամառությունը:

Այո՛, մենք գիտենք, որ լճացման տարիներին ոչ քիչ դժվարին պրոբլեմներ են կուտակվել աշխատանքային գործունեության ոլորտում: Հիմա մենք հարկադրված ենք շտկելու գործը և լրացնելու բաց թողնվածը: Եվ դա այնքան էլ հեշտ չէ, քանի որ վերաբերում է ամբողջ հասարակությանը:

Վերակառուցումը դրեց մարդու քաղաքական իրավունքների հարցը: Դրանց իրականացման վրա առանձնապես հիվանդագին են անդրադարձել ղեկավարման վարչահրամայական մեթոդներն ու դրանց հետ կապված դեմոկրատիայի սահմանափակումը: Այս ամենը արգելակել ու բարդացրել է իշխանությունից, քաղաքականությունից մարդու խորթացումը հաղթահարելու պրոցեսը, պրոցես, որ սկսել է հոկտեմբերը:

Քաղաքական ռեֆորմի նախագիծն էլ հենց, որը դրվում է մեր կոնֆերանսի քննարկմանը, նպատակամղված է այն բանին, որ արագացնի երկրի գործերի կառավարման մեջ աշխատավորների լայն ներգրավման պրոցեսը: Դրա համար պետք է, բնականաբար, ստեղծվեն ռեալ պայմաններ՝ փոփոխվի ընտրական համակարգը, վերակազմվի իշխանության և կառավարման մարմինների կառուցվածքը, նորացվի օրենսդրությունը: Իհարկե, դա ենթադրում է նաև համապատասխան փոփոխություններ միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց հասարակական գիտակցության մեջ:

Ահա այժմ հաճախ են տեղերից ասում ու գրում, թե վերակառուցումը իրենց չի հասել, հարցնում են, թե երբ է դա տեղի ունենալու: Բայց վերակառուցումը երկնային մանանա չէ, և պետք է ոչ թե սպասեն, մինչև այն ինչ-որ տեղից բերեն, այլ արարեն իրենք սեփական քաղաքում կամ գյուղում, սեփական աշխատավորական կոլեկտիվում: Այսօր, ինչպես երբեք, հարկավոր են արարմունքներ, գործեր և ոչ թե խոսակցություններ վերակառուցման առթիվ: Այստեղ շատ բան է կախված մեր կադրերից, շրջանային, քաղաքային, մարզային, հանրապետական և միութենական մասշտաբի ղեկավարներից:

Բայց նրանում, որ մեզ մոտ դեռ քիչ չեն այն վայրերը, որտեղ վերակառուցումը տեղապտույտ է տալիս, ամենևին էլ միայն ղեկավարները չէ, որ մեղավոր են: Ինչպես հայտնի է, ղեկավարության վրա գցելը ամենահեշտ, և, ի դեպ, մեզանում շատ տարածված բան է: Այս սովորությունը դեռ կարելի էր ինչ-որ կերպ հասկանալ, երբ հասարակական մթնոլորտը երկրում, կուսակցական ու պետական մարմինների գործունեությունը պատշաճ նախադրյալներ չէին ստեղծում քաղաքացիական ակտիվ դիրքորոշման դրսևորման համար: Բայց այժմ, ընկերներ, ամեն ինչ արմատապես փոխվում է, և շատերը հիմնավորապես ներգրավվել են վերակառուցման բոլոր պրոցեսների մեջ: Ուստի նրանց, ովքեր այսօր էլ շարունակում են գանգատվել, գցել ղեկավարության վրա, «վերևների» վրա, մենք պետք է ուղղակի հարց տանք. իսկ ի՞նչ ես դու արել վերակառուցման համար: **(Երկարատև ծափահարություններ):**

Առանձնապես ուզում եմ կանգ առնել քաղաքական ազատությունների վրա, որոնք մարդուն հնարավորություն են տալիս իր կարծիքն արտահայտել ցանկացած հարցի առթիվ: Այդ ազատությունների իրականացումը ռեալ երաշխիքն է այն բանի, որ հասարակական հետաքրքրություն ներկայացնող ամեն մի պրոբլեմ համակողմանիորեն քննության առնվի, որ ծանրութեթև արվեն բոլոր «թեր» ու «դեմերը», և դա կօգներ առավել ճիշտ լուծումները գտնել, հաշվի առնելով բոլոր բազմապիսի կարծիքներն ու ռեալ հնարավորությունները: Կարճ ասած, ընկերներ, խոսքը երկրում հասարակական կարծիքի նոր դերի մասին է: Եվ չպետք է վախենալ նորությունից, դատողու-

թյունների արտասովորությունից, չպետք է դեսուդեն նետվել և ծայրահեղությունների մեջ ընկնել դիսկուսիաների յուրաքանչյուր շրջադարձի դեպքում:

Ուզում եմ շոշափել նաև մի այնպիսի սկզբունքային հարց, ինչպիսին խղճի ազատությունն է: Այժմ դրան մեծ ուշադրություն է նվիրվում Ռուսիայում քրիստոնեության ընդունման 1000-ամյակի կապակցությամբ: Մենք չենք թաքցնում մեր վերաբերմունքը կրոնական աշխարհայացքի նկատմամբ որպես ոչ մատերիալիստական, ոչ գիտական աշխարհայացք: Բայց դա հիմք չէ հավատացյալ մարդկանց հոգևոր աշխարհի հանդեպ անհարգալից վերաբերմունքի համար և առավել ևս՝ մատերիալիստական աշխարհայացքի հաստատման նպատակով որևէ վարչական ճնշում գործադրելու համար:

Պետությունից եկեղեցու և եկեղեցուց դպրոցի անջատման վերաբերյալ 70 տարի առաջ ընդունված լենինյան դեկրետը նրանց միջև հարաբերությունների նոր հիմքեր ստեղծեց:

Հայտնի է, որ ոչ միշտ են այդ հարաբերությունները նորմալ դասավորվել: Բայց ինքը կյանքը, պատմությունը հավատացյալներին ու անհավատացյալներին միավորել է որպես սովետական երկրի քաղաքացիներ, հայրենասերներ՝ թե՛ Հայրենական մեծ պատերազմի փորձությունների տարիներին, թե՛ մեր սոցիալիստական հասարակության ստեղծման գործում, թե՛ խաղաղության պայքարում:

Բոլոր հավատացյալները, անկախ այն բանից, թե ինչ կրոն են նրանք դավանում, ՍՍՀՄ-ի լիիրավ քաղաքացիներ են: Նրանց գերակշիռ մեծամասնությունը ակտիվորեն մասնակցում է մեր արտադրական ու հասարակական կյանքին, վերակառուցման խնդիրների լուծմանը: Խղճի ազատության մասին օրենքի այժմ պատրաստվող նախագիծը հենվում է լենինյան սկզբունքների վրա, հաշվի է առնում բոլոր ժամանակակից իրողությունները:

Այժմ քաղաքացիների անձնական իրավունքների մասին: Այստեղ նույնպես ավելի հստակ օրենսդրական կարգավորում է պահանջվում: Որոշ բան արդեն արվել է: Մեծ գոհունակությամբ ընդունվեց անստորագիր նամակները չքննարկելու որոշումը, քննադատության պատճառով հետապնդելու համար քրեական պատասխանատվության սահմանումը, պաշտոնատար անձանց ապօրինի գործողությունները դատարանում գանգատարկելու, այդպիսի գործողությունների հետևանքով պատճառված վնասը հատուցելու կարգը, հոգեկան հիվանդ մարդկանց իրավունքների պահպանության ուժեղացումը: Մեր ամբողջ իրավակարգը կոչված է երաշխավորելու քաղաքացիների անձնական կյանքի, բնակարանի անձեռնմխելիության իրավունքների խստիվ պահպանումը, հեռախոսային խոսակցությունների, նամակագրության, փոստային ու հեռագրային առաքումների գաղտնիությունը: Օրենքը պետք է հուսալիորեն պահպանի մարդու անձնական արժանապատվությունը:

Ըստ ամենայնի պահպանելով ու երաշխավորելով սովետական մարդկանց իրավունքներն ու ազատությունները, մենք չենք կարող դրանք քննության առնել քաղաքացիական պարտականություններից մեկուսացված:

Դեմոկրատիան նախատեսում է խելամիտ հասարակական կարգ, առանց որի, ինչն ասած, չի կարող լինել նաև անձնական ազատություն: Մեր օրենսդրությունը նպատակ ունի հասարակությունը վճռականորեն պաշտպանել ամեն տեսակ գոփողներից, նկաշառակերներից, փախցնող-տանողներից, խուլիգաններից, զրպարտիչներից, անտաշ մարդկանցից: Հասարակությունը պետք է հակահասարակական տարրերի վրա ներգործության, նրանց վերադաստիարակման ու ու նորմալ աշխատանքային կյանքի մեջ ներգրավման արդյունավետ միջոցներ ունենա:

Եվ էլի մի պրոբլեմ: Անձնական իրավունքների ու ազատությունների հաստատումը, ամբողջությամբ վերցված դեմոկրատիայի ու հրապարակայնության ընդլայնումը պետք է ձեռք-ձեռքի քայլեն օրինականության ամրապնդման, օրենքի նկատմամբ անվերապահ հարգանքի դաստիարակման հետ: Դեմոկրատիան անհամատեղելի է թե՛ քմահաճության, թե՛ անպատասխանատվության, թե՛ սանձարձակության հետ: **(Ծափահարություններ):**

Ինչպես գիտեք, վերջին ժամանակներս մենք մեկ անգամ չէ, որ բախվել ենք դեմոկրատական իրավունքները հակադեմոկրատական նպատակներով օգտագործելու փորձերին: Ոմանց թվում է, թե այդ կերպ կարելի է լուծել ցանկացած հարց՝ սահմանների վերաձևումից մինչև ընդդիմադիր կուսակցությունների ստեղծումը:

ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ դեմոկրատացման նման չարաշահումները ար-



մատապես հակասում են վերակառուցման խնդիրներին, հակադրվում են ժողովրդի շահերին: **(Երկարատև ծափահարություններ):**

Մարդու իրավունքների պրոբլեմն ունի նաև միջազգային կարևոր տեսանկյուն: Մենք խորապես համոզված ենք մեր սոցիալիստական ընտրության ճշտությանը և հաստատապես մտադիր ենք, վերացնելով բոլոր շեղումներն ու ձևախեղումները, անհատի իրավունքները հարստացնել հենց սոցիալիստական հողի վրա, գործելով այն շրջանակներում և այն մեթոդներով, որոնք համապատասխանում են մեր կարգերի բնույթին: Բայց արդի պայմաններում մարդու իրավունքները և առաջին հերթին ապրելու իրավունքը դառնում են ամբողջ համաշխարհային հանրության հոգածության առարկան, միջազգայնանում են, ինչպես հասարակական կյանքի ուրիշ շատ կողմեր:

Մենք պատրաստ ենք ակտիվորեն համագործակցել մյուս բոլոր երկրների հետ, փորձի փոխանակում կատարել, բծախնդրորեն կատարել մեր ստանձնած պարտավորությունները:

Մենք համոզված ենք, որ վերակառուցումը հնարավորություն կտա ցույց տալ սոցիալիզմի անվերապահ առավելությունները մարդու բոլոր իրավունքների՝ սոցիալական, քաղաքական և անհատական իրավունքների ապահովման գործում: **(Ծափահարություններ):**

## 3. ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Ընկերնե՛ր: Հայտնի է, որ մեր պետությունը ծնունդ է առել որպես բանվոր դասակարգի դիկտատուրայի գործիք, իսկ 60-ական թվականների սահմանագծին հետևություն արվեց, որ այն աստիճանաբար վերաճել է համաժողովրդականի: Բայց մենք որքան ավելի ենք խորամուխ լինում քաղաքական պրոցեսի բովանդակությանը, այնքան ավելի ակնհայտ է դառնում մեր պետականությունը այդ հասկացության լրիվ ծավալով համաժողովրդական դարձնելու անհրաժեշտությունը: Դրա համար անհրաժեշտ է իշխանության և կառավարման այնպիսի կազմակերպում, երբ վճռական, վերջին խոսքը միշտ ժողովրդինը լինի, երբ առավելագույն ասպարեզ ստանան հասարակության ինքնակարգավորման և ինքնակառավարման պրոցեսները: Այստեղ սկզբունքային նշանակություն ունի քաղաքական սիստեմի հիմնական օղակների և նախ և առաջ կուսակցության ու պետության իշխանության լիազորությունների ճիշտ բաշխումը:

Կյանքը մեզ ամենայն սրությամբ առաջադրում է ժողովրդական դեպուտատների սովետների լիիշխանությունը վերածնելու խնդիրը, և այստեղ կիսամիջոցներով յոլա չես գնա: Հարկավոր է պրոբլեմին մոտենալ կոմպլեքսայնորեն և այն լուծել արմատապես:

Կոնֆերանսի նախօրեին անցկացված դիսկուսիան ցույց տվեց, որ սովետների վերակառուցման նպատակով Կենտկոմի առաջարկած միջոցներն արժանանում են աջակցության և հավանության:

Հիմնական սկզբունքը կարելի է ձևակերպել այսպես. պետական, տնտեսական կամ սոցիալական ոչ մի հարց չի կարող լուծվել առանց սովետների: Կուսակցության տնտեսական, սոցիալական, ազգային քաղաքականությունը պետք է վարվի նախ և առաջ ժողովրդական դեպուտատների սովետների՝ որպես ժողովրդապետության մարմինների միջոցով:

Լրիվ չափով հասունացել է ինքնակառավարման, ինքնաֆինանսավորման և ինքնապահովման սկզբունքներով տեղական գործերի ղեկավարումը վերակազմակերպելու անհրաժեշտությունը:

Դա պետք է դառնա տնտեսական ռեֆորմի օրգանական շարունակությունը, ամբողջ հասարակության շահերը փոխադարձաբար կապելով դրա յուրաքանչյուր տարածքային բջջի և աշխատավորական կոլեկտիվի պահանջմունքների հետ, վերջ դնի տեղական տնտեսության գերատեսչական տարանջատվածությանը և մասնատվածությանը: Հարկավոր է սովետների լիակատար պատասխանատվություն և ինքնուրույնություն սահմանել ենթակա տարածքի զարգացման պրոբլեմների լուծման գործում, ավելացնել նրանց բյուջեում ձեռնարկությունների շահույթից կատարվող մասհանումները, անկախ դրանց ենթակայությունից:

Սովետները պետք է ունենան եկամուտների պատկառելի, տևական նորմատիվ-

պուտատների պատասխանատվությունը: Հիմա հարկավոր է առաջ ընթանալ, յուրացնելով ու ամրապնդելով նոր մոտեցումները ընտրական համակարգին:

Սովետները կազմելիս հարկավոր է ապահովել թեկնածությունների անսահմանափակ առաջադրման իրավունքը, նրանց լայն և ազատ քննարկումը, ընտրությունների դեմոկրատական արարողակարգի խստիվ պահպանումը, դեպուտատների կանոնավոր հաշվետվությունը, նրանց հետ կանչելու հնարավորությունը: Հարկավոր է ավելի լայն լիազորություններ տալ օկրուգային նախընտրական ժողովներին, որոնք պետք է դառնան թեկնածուների մրցակցական ընտրության դեմոկրատական համաժողովներ:

Մի խոսքով, ընկերներ, այսուհետև դեպուտատական կորպուսը մեզանում պետք է ձևավորվի ոչ թե կարգադրագրով, այլ նախ և առաջ ընտրողների կամքի կենդանի, ազատ արտահայտման հիման վրա: Սովետների աշխատանքի արդյունավետության առաջին պայմանը դրանցում սկզբունքային, եռանդուն ու փորձառու, պետական մտածելակերպ ունեցող, իր ընտրողներին արժանավայել ներկայացնելու և իշխանության մարմիններում ակտիվորեն գործելու ընդունակ մարդկանց ընտրելն է:

Եվ չպետք է վախենալ բնակչության տարբեր խավերի անհամամասնական ներկայացուցչությունից: Մարտական, քաղաքականապես գրագետ ու ակտիվ մարդիկ մեզանում կան թե՛ բանվոր դասակարգի, թե՛ գյուղացիության, թե՛ մտավորականության մեջ: Հարկավոր է միայն ստեղծել լավ կարգաբերված մրցակցական մեխանիզմ, որն ապահովի ընտրողների կողմից նրանց լավագույն ընտրությունը: Եվ այն ժամանակ բնակչության բոլոր հիմնական խմբերը, նրանց շահերը իրենց արտացոլումը կգտնեն սովետների կազմում: Ինչպես մենք հասկանում ենք, հասարակության մեջ համաձայնություն կա տեղական սովետի թվակազմի նվազեցման հարցում:

Կոնֆերանսի առթիվ Կենտկոմի թեզիսները քննարկելիս լայն պաշտպանություն գտավ բոլոր սովետների համար լիազորությունների մեկ ժամկետ՝ հինգ տարի, սահմանելու առաջարկությունը: Այս պայմաններում տեղական սովետների դեպուտատները կաշխատեն ավելի վստահ, նրանք բավականաչափ ժամանակ կունենան իրենց մտահղացումների իրականացման համար: Դե, իսկ ոչ ջանադիր կամ գործից գլուխ չհանած դեպուտատին հետ կանչելու կամ էլ անհրաժեշտության դեպքում սովետի կազմը համալրելու իրավունք ընտրողները միշտ էլ ունեն:

Սովետների արդյունավետ աշխատանքի համար վճռական նշանակություն ունի այն, թե ինչպես են կառուցված և ինչպիսի լիազորություններ ունեն սովետական իշխանության բարձրագույն մարմինները: Բոլորի համար ակնհայտ է. այն ամենով հանդերձ, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատները, նախագահությունը, հանձնաժողովները օգտակար աշխատանք են կատարում, այնուամենայնիվ, իշխանության մեր բարձրագույն մարմնի կառուցվածքն ու նրա գործունեության կարգը էական փոփոխություններ են պահանջում: Կենտկոմի թեզիսների շուրջը ծավալված դիսկուսիայում այդ հարցի նկատմամբ ցուցաբերվեց առանձնակի հետաքրքրություն:

Բավականաչափ առաջարկություններ են ստացվել դիմելու հետհոկտեմբերյան առաջին տասնամյակների փորձին, երբ մեզանում գործում էր սովետների համագումարների համակարգը: Դրանք լայն ու լիիշխան ժողովրդական ժողովներ էին, որոնց միջև ընկած ժամանակահատվածներում գործում էին բավականին լիազորություններով օժտված կենտրոնական գործադիր կոմիտեները:

Ներկայացուցչության մասսայականությունը զուգակցվում է օրենսդրության, կառավարման ու վերահսկողության հետ կապված մշտական աշխատանքին: Դիսկուսիայում արտահայտվեց նաև երկրի իշխանության բարձրագույն մարմնում մեր հասարակական կազմակերպությունների ուղղակի ներկայացուցչության անհրաժեշտության միտքը:

Ընդհանրացնելով այս կարծիքները, ՍՄԿԿ Կենտկոմը կոնֆերանսի քննարկմանն է ներկայացնում հետևյալ առաջարկությունները:

ԱՌԱՋԻՆ: Զգալիորեն ընդլայնել աշխատավորների ներկայացուցչությունը պետական իշխանության բարձրագույն էշելոնում: Այդ նպատակով, այժմ միության սովետում գոյություն ունեցող ամբողջ բնակչության տերիտորիալ ներկայացուցչությունը և Ազգությունների սովետում ազգերի ու ազգությունների ներկայացուցչությունը համալրել մեր քաղաքական սիստեմի մեջ մտնող հասարակական կազմակերպությունների անմիջական ներկայացուցչությամբ: Այսպիսով, 1500 դեպուտատ, ինչպես և այժմ, կընտրվի տերիտորիալ և ազգային օկրուգներից, իսկ մոտավորապես 750 դեպուտատ էլ կընտրվի կուսակցական, արհմիութենական, կոոպերատիվ, երիտասար-



դական, կանանց, վետերանների, գիտական, ստեղծագործական և այլ կազմակերպությունների համագումարներում կամ նրանց կենտրոնական մարմինների պլենումներում: Այդ կազմակերպությունների ցանկն ու ներկայացուցչության նորմաները կարելի է վավերագրել սահմանադրության մեջ:

Բոլոր դեպուտատները միասին վերցրած, որոնք կընտրվեն 5 տարի ժամկետով, կկազմեն պետական իշխանության նոր ներկայացուցչական գերագույն մարմինը՝ ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարը:

Համագումարն իր նիստերը կհրավիրի տարեկան մեկ անգամ, լուծելով երկրի կյանքի ամենակարևոր սահմանադրական, քաղաքական ու սոցիալ-տնտեսական հարցերը:

Օրենսդրական, կարգադրիչ և վերահսկիչ բնույթի բոլոր հարցերի քննարկման ու լուծման, ենթահաշվետու մարմինների և ստորադաս սովետների աշխատանքի ուղղորդման համար ժողովրդական դեպուտատների համագումարը իր կազմից կընտրեր համեմատաբար ոչ մեծ թվակազմով (ասենք, 400—450 մարդ), երկու պալատից բաղկացած ՍՍՀՄ Գերագույն սովետ: Դա կլինի իշխանության մշտապես գործող բարձրագույն մարմին, որը հաշվետու է ժողովրդական դեպուտատների համագումարին: Այսպիսով, օրենսդրությանն ու վերահսկողությանը վերաբերող ամբողջ աշխատանքը կկենտրոնացվի անմիջականորեն Գերագույն սովետում ու նրա հանձնաժողովներում, որը նոր քայլ կդառնա բարձրագույն պետական կառուցվածքների դեմոկրատացման ճանապարհին: Կարելի է մտածել նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի կազմի մի մասի պարբերական նորացման մասին:

ԵՐԿՐՈՐԴ: Պետք է ակտիվացնել ՍՍՀՄ Գերագույն սովետի պալատների աշխատանքը, հրաժարվելով այժմ գոյություն ունեցող նրանց գործառական անդեմությունից:

Իհարկե, պետական կյանքի հանգուցային պրոբլեմներին վերաբերող օրենքների նախագծերն ու որոշումները առաջվա նման պետք է քննարկվեն և ընդունվեն Գերագույն սովետի երկու պալատի անդամների կողմից:

Դրա հետ մեկտեղ, ազգությունների սովետը, որը ներկայացնում է երկրի բոլոր ազգային-պետական և ազգային-վարչական կազմավորումները, կարող էր քննության առնել նրանց տնտեսական ու սոցիալական զարգացման, ազգամիջյան հարաբերությունների, այդ ոլորտում օրենսդրության պահպանման, միութենական մինիստրությունների ու գերատեսչությունների գործունեության վերահսկման հարցերը, որոնք շոշափում են հանրապետությունների, ինքնավար կազմավորումների շահերը և այլն:

Իր հերթին Միության սովետը, որն արտահայտում է համաժողովրդական շահերը, բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի պահանջմունքները, կարող էր կենտրոնանալ սոցիալ-տնտեսական խոշոր ծրագրերի ու պլանների մշակման, գների ու հարկերի բնագավառի քաղաքականության, աշխատանքային հարաբերությունների, քաղաքացիների իրավունքների պաշտպանության, երկրի պաշտպանունակության ամրապնդման, միջազգային պայմանագրերի վավերացման և այլ հարցերի վրա:

Այստեղ, մեր կոնֆերանսում, մենք պետք է պայմանավորվենք սկզբունքային առումով պալատների ֆունկ[illegible]նարի սահմանազատման շուրջը: Այս ամենը կոնկրետ պետք է իր արտացոլումը գտնի ՍՍՀՄ սահմանադրության մեջ և մյուս օրենսդրական ակտերում:

Քննարկումն ի հայտ է բերել ևս մեկ թեմա, որն ակտիվ դիսկուսիայի առարկա է դարձել՝ դա վերաբերում էր բարձրագույն կուսակցական և պետական պաշտոնների հարաբերակցությանը, գերագույն իշխանության կառուցվածքում դրանց տեղին:

Այս կապակցությամբ ոմանք ճիշտ են համարում վերադառնալ այն պրակտիկային, որ գոյություն ուներ Վ. Ի. Լենինի օրոք, երբ կուսակցության լիդերը միաժամանակ կառավարության ղեկավարն էր: Մյուսները խոսում են կուսակցական ու պետական պոստերի առհասարակ համատեղման անցանկալիության մասին: Երրորդներն արտահայտվում են ՍՍՀՄ պրեզիդենտի պոստ հիմնելու օգտին: Չորրորդները մատնանշում են իրավական պետության կոնցեպցիայի անհամապատասխանությունը այն վիճակին, երբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը փաստորեն կատարում է երկրի բարձրագույն ներկայացուցչի դերը: Ուրիշ շատ դատողություններ էլ են արվում:

Այս հարցն, ընկերներ, լուրջ է և հարկավոր է այն հանգամանորեն քննարկել մեր կոնֆերանսում: Ընդ որում այնպես, որ այն նպատակահարմար լուծում գտնի քաղաքական սիստեմի ռեֆորմի ընթացքում:

ՍՄԿԿ Կենտկոմի կարծիքով, բարձրագույն ներկայացուցչական մարմինների և ժողովրդական դեպուտատների սովետների ամբողջ սիստեմի դերի բարձրացմանը, իշխանության իրավական բնույթի ամրապնդմանը, համաշխարհային գործերում Սովետական Միության լավագույն ներկայացմանը կհամապատասխաներ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահի պոստի հիմնումը:

Պետք է սահմանել, որ նա ընտրվում և հետ է կանչվում գաղտնի քվեարկությամբ, ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարի կողմից, լիովին պատասխանատու է նրա առջև և հաշվետու է նրան: Ներկայացուցչական մարմինների դերի ընդհանուր բարձրացման պայմաններում ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահը պետք է օժտված լինի պետական բավական լայն լիազորություններով: Նա կարող էր, մասնավորապես, իրականացնել օրենքների և սոցիալ-տնտեսական կարևորագույն ծրագրերի նախապատրաստության ընդհանուր ղեկավարումը, լուծել արտաքին քաղաքականության, երկրի պաշտպանունակության և անվտանգության արմատական հարցեր, գլխավորել պաշտպանության խորհուրդը, առաջարկություններ մտցնել ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի թեկնածության վերաբերյալ, ինչպես նաև կատարել պետության մեջ այդպիսի պոստի համար ավանդական մի շարք այլ պարտականություններ:

Մենք գտնում ենք, որ բարձրագույն իշխանության կառուցվածքում հարկավոր է ունենալ նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահություն, որը կաշխատի Գերագույն սովետի նախագահի ղեկավարությամբ: Նախագահության կազմի մեջ կարող են մտնել նախագահի երկու առաջին տեղակալ, որոնցից մեկը կլիներ ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահը, տասնհինգ տեղակալ (միութենական հանրապետությունների թվին համապատասխան) Գերագույն սովետի պալատների, մշտական հանձնաժողովների ու կոմիտեների նախագահները: Նախագահությունը կհրավիրեր նստաշրջաններ, կկոորդինացներ Գերագույն սովետի հանձնաժողովների ու դեպուտատների աշխատանքը, ինչպես նաև կկատարեր որոշ ներկայացուցչական և այլ լիազորություններ:

Նպատակահարմար է ամրապնդել իշխանության բարձրագույն մարմնի մշտական հանձնաժողովների ստատուսը, որոնք կազմվեին Գերագույն սովետի անդամների և ժողովրդական դեպուտատների համագումարի դեպուտատների թվից: Դրանք կարող են ստեղծվել ինչպես առանձին՝ ըստ պալատների, այնպես էլ համատեղ (միացյալ կոմիտեներ):

Հանձնաժողովների ու կոմիտեների լիազորությունները, հաշվի առնելով նոր խնդիրները, հարկ կլիներ էապես ընդլայնել: Մասնավորապես, նախատեսել, որ միայն դրանց նախնական քննարկումից հետո կարող են որոշումներ ընդունվել ներքին ու արտաքին քաղաքականության խոշոր հարցերի վերաբերյալ, նշանակումներ կատարվել մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների, պաշտոնատար այլ անձանց պոստերում: Հարկ կլիներ ավելի լայնորեն գնալ դեպի հանձնաժողովներում ու կոմիտեներում ղոնքաց ունկնդրումներ, հասարակական սուր հետաքրքրություն առաջ բերող պրոբլեմների ուսումնասիրման համար դեպուտատական հատուկ խմբերի ստեղծում:

Ծառանում է նաև գերագույն իշխանության կառուցվածքում այնպիսի մարմնի ստեղծման հարցը, ինչպիսին սահմանադրական հսկողության կոմիտեն է, որն ընտրվեր ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարի կողմից: Նա կհետևեր մեր օրենքների և իրավական մյուս ակտերի համապատասխանությանը երկրի հիմնական օրենքին և դրա համար օժտված կլիներ բավականաչափ լիազորություններով: Ի դեպ այդ կոմիտեի գոյությունը բոլոր պաշտոնական անձանց, ներառյալ ամենաբարձր պոստերը զբաղեցնողները, գործունեության դեմոկրատական վերահսկողության լրացուցիչ երաշխիքը կլիներ:

ԵՐՐՈՐԴ: Բարձրագույն իշխանության կազմակերպման նոր ձևերն ինքնըստինքյան դեռ չեն երաշխավորում նրա արդյունավետությունը: Դրա համար հարկավոր է վճռականորեն փոխել Գերագույն սովետի գործունեության բուն բնույթն ու ոճը: Հարկավոր է նստաշրջանները զերծ պահել երկարաշունչ ճառերից ու ինքնահաշվետվությունից, կազմակերպամոլությունից ու ձևականությունից: Դրանք պետք է աշխույժ ու պահանջկոտ դառնան, համադրեն առաջարկվող որոշումների տարբերակները, քննարկեն ուղղումները, լրացումները, առարկումները: Արժեր մտցնել դեպուտատների հարցերին կառավարության պատասխանների օրեր, ընդլայնել դեպուտատական հարցապնդումների պրակտիկան:



Իհարկե, կարող է պատահել նաև այնպես, որ մեզանում լիակատար միահամուռություն չլինի այս կամ այն որոշումն ընդունելիս: Բայց դա դեմոկրատական պրոցեսի համար նորմալ երևույթ է: Առհասարակ վաղուց ժամանակն է սովորել զգայուն կերպով անսալ ընդդիմախոսի ձայնին: Նրա նկատմամբ ակնհայտ կանխակարծությամբ չվերաբերվել: Կարծիքների սոցիալիստական պլյուրալիզմը, վեճը, դիսկուսիան, հայացքների համադրումը լավագույն նպատակահարմար լուծումների որոնման ուղին են:

Այս փոփոխություններն առաջարկելով ՍՍՀ Միության իշխանության բարձրագույն մարմնի կառուցվածքում և աշխատանքի կազմակերպման գործում, ՍՄԿԿ Կենտկոմը գտնում է, որ դրանցից շատերը ընդունելի են նաև հանրապետությունների իշխանության գերագույն մարմինների համար: Այդ քայլերը կնպաստեին նրանց դերի ու հեղինակության բարձրացմանը, ընդհանուր առմամբ կնշանակեին միութենական հանրապետությունների իրավունքների հետագա ընդլայնում: Բացի այդ, իշխանության միութենական ու հանրապետական մարմինների կառուցվածքն ու նրանց դեմոկրատական գործառության կարգի միասնությունը կապահովեր սովետների ամբողջ սիստեմի աշխատանքի արդյունավետությունը, ներդաշնակությունը:

Հաշվի առնելով նախատեսվող փոփոխությունները, անհրաժեշտ է քննարկել նաև ինքնավար հանրապետությունների իշխանության մարմինների կազմավորման, կառուցվածքի ու ֆունկցիաների հարցերը:

Եթե պատգամավորները համաձայն լինեն, այս բոլոր առաջարկությունները կարելի է ձևակերպել կոնֆերանսի հատուկ բանաձևում: Ընդ որում չպետք է երկար ժամկետով հետաձգել սովետների վերակառուցումը:

Մասնավորապես, արդեն այս տարվա աշնանը կարելի էր համապատասխան օրենսդիր ակտերը քննության առնել ՍՍՀՄ Գերագույն սովետում, իսկ այնուհետև գալիք տարվա գարնանը կայանալիք հերթական ընտրություններից հետո անցկացնել պետական իշխանության ընդհանուր միութենական մարմինների վերակազմում:

Ամրապնդելով սովետները որպես ներկայացուցչական դեմոկրատիայի հիմք, անհրաժեշտ է պայմաններ ստեղծել անմիջական դեմոկրատիայի համակողմանի զարգացման համար՝ արտադրությունում, ըստ բնակության վայրի, քաղաքացիների ժողովներում ու հավաքներում, համապետական ու տեղական կարևորագույն որոշումների քննարկման պրոցեսում:

Վերջին տարիների փորձը ցույց է տվել, թե որքան արդյունավետ է համապետական խոշորագույն որոշումների նախագծերի համաժողովրդական քննարկումը՝ պետական ձեռնարկության, կոոպերացիայի, դպրոցի ռեֆորմի, առողջապահության կազմակերպման մասին և այլն: Շատ ավելի հաճախ, քան այժմ, պետք է որոշումներ ընդունել գյուղի, շրջանի, քաղաքի մակարդակով՝ քաղաքացիների քվեարկությամբ, հատկապես այն հարցերի առթիվ, որոնք կենդանի կերպով շոշափում են մարդկանց շահերը և որոնց վերաբերյալ միասնական կարծիք չկա: Թող նման դեպքերում այս կամ այն պրոբլեմները լուծվեն մեծամասնության կողմից:

Հսկայական ռեզերվներ են դրված ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման բոլոր ձևերի զարգացման հիմքում: Մենք այժմ ունենք թե՛ իրավական, թե՛ քաղաքական, թե՛ ինչ-որ չափով հոգեբանական հիմք դրանց լայն ծավալման համար, հատկապես աշխատավորական կոլեկտիվներում: Համակողմանիորեն գնահատելով թե՛ սեփական փորձը, թե՛ սոցիալիստական երկրների մեր բարեկամների փորձը, պետք է նորից ու նորից ծանրութեթև անենք այստեղ ծառացող հարցերը, որոնք կապված են պետական մարմինների առանձին ֆունկցիաներ այս կամ այն ինքնակառավարվող կազմակերպություններին լրիվ կամ մասամբ հանձնելու նպատակահարմարության հետ: Գլխավորն այն է, որ դա արվի ոչ թե ձևականորեն, այլ ըստ էության:

Մենք բոլորս վկաներն ենք այն բանի, թե ինչպես է վերակառուցման, դեմոկրատիայի ու հրապարակայնության ծավալման պայմաններում, ամենատարբեր բնագավառներում ի հայտ գալիս աշխատավորների ինքնագործունեությունը: Թեև, ասենք ուղղակի, այստեղ, ընկերներ, բնավ էլ ամեն ինչ չէ, որ հեշտ ու հունգիստ է: Վերցնենք, օրինակ, տնտհաշվարկով գործող աշխատավորական կոլեկտիվը: Այն կարող է ինքնաֆինանսավորման սկզբունքներով աշխատել միայն որպես ինքնակառավարվող օրգանիզմ: Իսկ դա նշանակում է, որ այստեղ նորովի են ծառանում նաև կոլեկտիվի ընդհանուր ժողովի և խորհրդի միջև, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների և ադմինիստրացիայի միջև փոխգործողության, ժողովրդական դեպուտատների սովետի հետ այդ ամբողջ համալիրի հարաբերությունների հարցերը: Մենք, գուցեև, քիչ փորձ ունենք, բայց օրեցօր այն մեծանում է, և

մենք պետք է տնտեսատիրոջ պես դրանք տնօրինենք՝ ի շահ ինքնակառավարչական պրոցեսի զարգացման:

Վերջապես, սոցիալիստական ժողովրդապետության ևս մեկ կարևորագույն ձևի՝ վերահսկողության մասին:

Բանվորական վերահսկողության գաղափարը սկիզբ է առնում Հոկտեմբերից, այն, ինչպես հայտնի է, Լենինի կողմից մանրամասնորեն ուսումնասիրվել է նրա վերջին աշխատություններում: Մասսաների վերահսկողության մեջ էր հենց նա տեսնում կամայականության, սուբյեկտիվիզմի, իշխանության չարաշահումների դեմ ուղղված վճռական երաշխիքներից մեկը, սոցիալիստական ամուր կարգապահության՝ աշխատանքային, պետական, պլանային, տնտեսական, ֆինանսական կարգապահության ապահովման միջոցը:

Աշխատավորների վերահսկողությունը սոցիալիզմի քաղաքական սիստեմի առանձնահատուկ գիծն է, որն օրգանապես ներհատուկ է մեր հասարակարգին: Եվ այսօր, երբ մենք ծավալում ենք դեմոկրատացման ու ինքնակառավարման պրոցեսները, հարկավոր է լիովին օգտագործել ժողովրդապետության այդ գործիքը:

Ինչպես ասված է ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում, անհրաժեշտ է հասարակական-պետական վերահսկողության միասնական, իշխանության ընտրովի մարմիններին ենթակա համակարգի ստեղծումը: Իսկ այդ համակարգին պատշաճ կշիռ հաղորդելու համար ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահը կարող էր լինել, ինչպես արդեն ասվեց, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահի առաջին տեղակալը: Վերահսկողության այդպիսի համակարգը, որտեղ զուգակցվում են պետական ու հասարակական սկզբունքները, որը հենվում է աշխատավորական կոլեկտիվներում աշխատող ժողովրդական վերահսկիչների լայն ցանցի վրա, կդառնա բացասական երևույթներից հասարակության մաքրման իրոք հզոր ուժ, ինքնակառավարման մասսայական դպրոց:

Այլ խոսքով, մենք պետք է, մի կողմից, վերածնենք լենինյան ժամանակների բանվորագյուղացիական տեսչության բարի ավանդույթը, իսկ մյուս կողմից ամբողջ վերահսկողական աշխատանքը բարձրացնենք արդի խնդիրների մակարդակին:

# 4. ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր: Այժմ, երբ առաջին պլան է մղվում կառավարմանը աշխատավորության մասնակցության համակողմանի ընդլայնման խնդիրը, անհրաժեշտ է իմաստավորել, թե կոնկրետ պայմաններում ինչպես պետք է կիրառվի դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը: Այս հարցի ուսումնասիրումը հանգեցնում է մի հետևության. հասարակության զարգացման պահանջմունքներին համապատասխանող գլխավոր միտումը ապակենտրոնացումն է, որն, իհարկե, իրականացվում է կենտրոնի այն ֆունկցիաների պահպանմամբ, առանց որոնց անհնար է սոցիալիզմի առավելությունների իրացումը, համաժողովրդական շահերի ապահովումը:

Օբյեկտիվ վերլուծությունը ցույց է տալիս, որ մեր ժողովրդական տնտեսության ներկա մասշտաբների, հասարակական կյանքի պրոբլեմների բազմազանության պայմաններում անհնար է մեկ կենտրոնից ժամանակին և ճիշտ լուծել ծագող բոլոր հարցերը: Իսկ այստեղից բխում է տեղերը՝ հանրապետություններին, երկրամասերին, մարզերին ու շրջաններին, աշխատավորական կոլեկտիվներին շատ լիազորություններ տալու անհրաժեշտությունը:

Իսկ առայժմ, ընկերներ, այն իրավիճակն է տիրում, որ ոչ միայն կառավարությունը, այլև ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, Կենտկոմի քարտուղարությունը ստիպված են լուծել տասնյակ ու հարյուրավոր հարցեր, որոնց մեծ մասը, առանց գործին որևէ վնաս հասցնելու, կարող է հանձնվել ստորադաս սովետական, տնտեսական և մյուս մարմիններին: Այս կարգին բոլորն են վարժվել: Ղեկավար կադրերը տեղի-անտեղի զանազան խնդրանքներով հեռագրեր են ուղարկում Կենտկոմ և կառավարությանը, իսկ քաղաքացիները բազմաթիվ դիմումներ են հղում այն հարցերի վերաբերյալ, որոնք ըստ էության պետք է լուծվեն տեղերում, ըստ որում՝ քաղաքում, շրջանում, գյուղում:

„Իհարկե, ֆունկցիաների ու լիազորությունների վերաբաշխումը շատ պատասխանատու գործ է, այն չի կարելի ինքնահոսի մատնել: Այստեղ հարկավոր են թե՛ ուժեղ



քաղաքական ազդակ, թե՛ հստակ իրավական հիմք: Անցկացնել նշանակալի մասշտաբի ապակենտրոնացում, նշանակում է ապահովել արյան կենարար հոսքը դեպի մեր քաղաքական ու տնտեսական սիստեմի մազանոթները: Բայց հասկանալի է, որ այդ դեպքում ոչ մի կերպ չի կարելի խախտել մեր հասարակական օրգանիզմի ուղեղի ու սրտի արյան մատակարարումը:

Այդ գործում կարևոր տեղ է պատկանում ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, որն իշխանության բարձրագույն գործադիր-կարգադրիչ մարմինն է, հաշվետու է ՍՍՀՄ Գերագույն սովետին: Կուսակցական ու պետական մարմինների ֆունկցիաների սահմանազատման պայմաններում անչափ մեծանում է Մինիստրների խորհրդի պատասխանատվությունը ներքին ու արտաքին քաղաքականության իրականացման, տնտեսական, սոցիալական և մշակութային զարգացման պլանների ու հեռանկարային ծրագրերի մշակման և իրականացման համար: Այդ ֆունկցիաների կատարման համար Մինիստրների խորհուրդն ունի մեր սահմանադրությամբ նախատեսված լայն լիազորություններ:

Ընդունելով գերատեսչականության դեմ մղվող պայքարի և ապակենտրոնացման բացառիկ կարևորությունը՝ մենք միաժամանակ պետք է պարզորոշ ասենք, որ դրանք ընդհանուր ոչինչ չունեն տեղայնության խրախուսման հետ: Իսկ քանի որ նման սպառնալիքը միանգամայն իրական է, ապա մեզ պետք են լուրջ հակակշիռներ: Կենտրոնը պետք է պահպանի իր խոսքն ասելու իրավունքը, իսկ ամենագլխավորը՝ պետք է վճռականապես ամրապնդվի դեմոկրատական վերահսկողությունը ներքևից, աշխատավորների կողմից: Մենք բոլորս, կարծում եմ, կքվեարկենք ինքնակառավարման օգտին, բայց ընդդեմ կամայականության, տեղական շահերը հաշվի առնելու օգտին, բայց նաև այն բանի օգտին, որ դրանք անպայման զուգակցվեն ամբողջ հասարակության շահերի հետ: Մի խոսքով, կոպիտ սխալ թույլ կտան նրանք, ովքեր կհամարեն, թե ապակենտրոնացման գիծը բացում է փականքները տեղայնության կամ ռեգիոնալ էգոիզմի համար:

Կենտրոնացման և ապակենտրոնացման ռացիոնալ զուգակցման պրոբլեմը ծառանում է նաև պետական ձեռնարկության (միավորման) մասին, կոոպերացիայի մասին, անհատական աշխատանքային գործունեության մասին ընդունված օրենքների կապակցությամբ: Կառավարման մարմինների ֆունկցիաների ու կառուցվածքի որոշման ելակետը պետք է լինեն այդ փաստաթղթերում ձևակերպված սկզբունքները: Նրանք արդեն առաջվա նման չեն կարող հրամաններ արձակել աշխատավորական կոլեկտիվներին:

Մի խոսքով, ընկերներ, դեմոկրատացումը տնտհաշվարկային օղակի, առանձին աշխատավորական կոլեկտիվի կամ կոոպերատիվի մակարդակով պատշաճ արդյունք չի տա, և մենք դրանում արդեն համոզվել ենք ռեֆորմի առաջին փուլում, եթե չհամալրվի կառավարման դեմոկրատացմամբ՝ մինիստրությունների, տերիտորիալ մարմինների, կենտրոնական տնտեսական գերատեսչությունների մակարդակով:

Իսկ դա նշանակում է, որ հարկավոր է հետևողականորեն վարել գործունեության համասեռ ճյուղերի և ոլորտների կառավարման մարմինների կառուցվածքի պարզեցման, դրանց միավորման, մինիստրությունների ու գերատեսչությունների թվի նվազեցման, ավելորդ օղակների, միջանկյալ և փոխանցական կառուցվածքների վերացման գիծը:

Մենք բոլորս, ընկերներ, հասկանում ենք, որ այժմ, երբ լուծվում են հասարակության վերակառուցման, դեմոկրատացման, կառավարման մեջ ժողովրդի լայն ներգրավման բարդագույն խնդիրները, մենք չենք կարող գործը գլուխ բերել առանց ապարատի և չպետք է քամահրանքով վերաբերվենք նրա կադրերին: Կառավարման ապարատը մեզ պետք է, բայց այն պետք է այլ լինի, քան այժմ է:

Հարկավոր է պայքարել բարձր պրոֆեսիոնալիզմի վրա հիմնված, ժամանակակից ինֆորմացիոն տեխնոլոգիային տիրապետող, ժողովրդի կողմից դեմոկրատորեն վերահսկվող, տնտեսական ու սոցիալական առաջադիմությունն առաջ շարժելու ընդունակ նոր տիպի ապարատի համար: Եվ այսպիսի ապարատում պետք է աշխատեն կառավարման գիտության հիմունքներին լավ տիրապետող մարդիկ: Այստեղից էլ համապատասխան կադրերի պատրաստումն ու վերապատրաստումը նոր, արդի մակարդակով կարգավորելու խնդիրը:

Կառավարման կառուցվածքի կարգավորման աշխատանքը այժմ սկսվել է բոլոր օղակներում: Կենտրոնում և հանրապետություններում վերացվել է մինիստրությունների ու գերատեսչությունների, տեղերում՝ կառավարչական ստորաբաժանումների մի

մասը: Քննարկվել և հաստատվել են կառավարման նոր գլխավոր սխեմաներ: Դրանց համապատասխան միութենական գերատեսչությունների ապարատը կրճատվում է 40 տոկոսով, միութենական հանրապետություններում՝ կիսով չափ, իսկ ինքնավար հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում՝ մեկ երրորդով: Ծավալվող տնտեսական ռեֆորմի շրջանակներում ձեռնարկություններն էլ են սկսել ազատվել ավելորդ վարչական անձնակազմից:

Այդ պրոցեսը, սակայն, հեշտ ու հանգիստ չի ընթանում, հանդիպում է դիմադրության: Բայց պետք է ասել, որ թե՛ ՍՄԿԿ Կենտկոմը, թե՛ կառավարությունը աշխատավորների արդարացի քննադատությանն են ենթարկվում այն բանի համար, որ գործը դանդաղ է առաջ գնում: Եվ այսօր վերակառուցման երեք տարիներից հետո, դեռ պահպանվում է վիթխարածավալ կառավարչական ապարատը, որի զգալի մասը, առանց հասարակության շահերի հետ հաշվի նստելու, ամեն կերպ ձգտում է պահպանել իր դիրքերը: Եվ այստեղ մենք, իհարկե, պետք է կողմնորոշվենք դեպի ժողովրդի միանգամայն հիմնավորված պահանջները:

Խոսելով մեզ մոտ գործող կառավարման համակարգի արդյունավետության արմատական բարձրացման անհրաժեշտության մասին, հարկավոր է այն ներգրավել ամբողջովին: Նրա ոչ մի օղակ չի կարող դուրս մնալ դեմոկրատական նորացման սկզբունքներով իրականացվող վերակառուցումից: Սա լիովին վերաբերում է արտաքին քաղաքական և արտաքին տնտեսական ֆունկցիաների կատարման հետ առնչվող հիմնարկներին: Վերջին ժամանակներս այդ հիմնարկներում իրականացվող էական վերափոխումները ժամանակի ոգուն համապատասխանող նորմալ պրոցես են: Պետք է պաշտպանել նաև պետական անվտանգության կոմիտեի, պաշտպանության մինիստրության և գլխավոր շտաբի ղեկավարության նպատակասլաց աշխատանքը մեր հասարակության զարգացման, դեմոկրատական պրոցեսների ծավալման, ներկա փուլի պայմաններում իրենց գործունեությունը կատարելագործելու ուղղությամբ:

Մի խոսքով, ընկերներ, դեմոկրատացման պրոցեսը սրությամբ է առաջադրում կենտրոնի և տեղերի, ընտրովի և գործադիր մարմինների ճիշտ հարաբերակցության հաստատման, կառավարմանը աշխատավորների մասնակցության ռեալ ընդլայնման միջոցով կառավարման համակարգը որակապես բարելավելու խնդիրը: Հետևաբար, հարցը չի հանգում զուտ կազմակերպական փոփոխությունների, և դա շատ կարևոր է առաջիկա աշխատանքի բնույթն ըմբռնելու համար:

## 5. ԱԶԳԱՄԻՋՅԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր: Սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկը դարձավ մեր երկրում ստեղծված իրավահավասար ազգերի և ազգությունների միությունը: Դա թույլ է տալիս մեծ համոզչությամբ ասել, որ այսուհետև էլ մեր զարգացման միակ առողջ հիմքը կարող է լինել միայն լենինյան ազգային քաղաքականության հետևողական վարումը: Կյանքը հաստատել է մեր մեծ Միության կազմակերպման հիմքում ընկած գաղափարի ճշտությունը. ջանքերի գումարումը, միավորումը յուրաքանչյուր ազգի և ամբողջ հասարակությանը թույլ տվեցին շեշտակիորեն արագացնել իրենց առաջընթացը, դուրս գալ պատմական առաջադիմության նոր բնագծեր: Մեր ճանապարհին եղած բոլոր դժվարություններով հանդերձ այսօր մենք հավաստում ենք, որ այդ դաշինքը բռնել է ժամանակի քննությունը: Այն շարունակում է մնալ մեր բոլոր ժողովուրդների հետագա զարգացման վճռական նախադրյալը:

Ինչպես հայտնի է, նախատեսված է ազգամիջյան հարաբերությունների զարգացման հարցին նվիրել Կենտկոմի հատուկ պլենում: Բայց մենք պետք է արդեն այժմ, մեր կոնֆերանսում անդրադառնանք այդ չափազանց կարևոր և հրատապ պրոբլեմին: Այստեղ կարևոր է տեսնել ամբողջ ռեալ պատկերը. թե՛ անվիճելի նվաճումները և թե՛ ակնհայտ թերամշակումները, վրիպումները և դժվարությունները, որոնք կապված են կոնկրետ սոցիալ-տնտեսական հարցերի լուծված չլինելու հետ, ինչպես նաև երբեմն ազգային ու համաժողովրդական շահերը շաղկապել չկարողանալու հետ:

Մենք պետք է հիմնավորապես զբաղվենք ստեղծված միջհանրապետական տնտեսական և գիտատեխնիկական կապերի հետագա զարգացմամբ ու օպտիմացմամբ, ավելի լրիվ չափով իրացնենք աշխատանքի ներմիութենական բաժանման ու կոոպերացման, գիտականորեն հիմնավորված ռեգիոնալ քաղաքականության առավելություն-



ները: Այստեղ շատ բան է նշանակում հրապարակայնությունը: Աշխատավորները պետք է լրիվ իրազեկ լինեն, թե ինչպես է զարգանում իրենց հանրապետությունը և ինչ տեղ է գրավում ժողովրդատնտեսական համալիրում: Նրանք պետք է իմանան, թե ինչպես են ապրում ու զարգանում ոչ միայն իրենց հարևանները, այլև երկրի բոլոր հանրապետությունները: Դա պետք է անել նաև այն պատճառով, որ երբեմն հարկ է լինում բախվել հանրապետությունների փոխհարաբերությունների մասին այնպիսի խոսակցությունների ու դատողությունների, որոնք հիմնված են ոչ լրիվ կամ նույնիսկ միակողմանի ինֆորմացիայի վրա:

Ճիշտ կլիներ, եթե մեր կուսակցական կոնֆերանսն արտահայտվեր հօգուտ արդարության և միմյանց ցույց տրվող եղբայրական ինտերնացիոնալ օգնության սկզբունքների, հօգուտ երկրի բոլոր ազգերի և ազգությունների, թե՛ ընդհանուր վերելքը և թե՛ նրանց կյանքի տնտեսական ու սոցիալական պայմանների բարելավումն ապահովող փոխգործողության, որպես էկոնոմիկայի ոլորտում ազգամիջյան հարաբերությունների հուսալի կողմնորոշիչների:

Ներկա իրադրության մեջ պետք է իմաստավորվեն և արմատական տնտեսական ռեֆորմին համապատասխանեցվեն միութենական հանրապետությունների իրավունքները: Ըստ երևույթին, նպատակահարմար է, որ նրանք, կատարելով միութենական ֆոնդի հանդեպ պարտավորությունները, կարողանան ընդլայնել արտադրությունը սեփական կարիքների համար՝ հմուտ, նախաձեռնողական տնտեսավարման հաշվին: Սա նույնպես կհամապատասխաներ ազգային հարաբերությունների զարգացման գործում սոցիալական արդարության պահանջներին, կխթաներ մեր ընդհանուր առաջընթացը:

Վերջին տարիներին դեմոկրատացման և հրապարակայնության պրոցեսում երևան են գալիս նաև այնպիսի պրոբլեմներ, որոնց գոյությունը միշտ չէ, որ բավականաչափ հաշվի էր առնվում. օրինակ, լեզվի, մշակույթի, գրականության և արվեստի, պատմական հուշարձանների, բնության պահպանության հետ կապված հարցերը:

Մեր բազմազգ պետության զարգացումը, բնականաբար, ուղեկցվում է ազգային ինքնագիտակցության աճով: Դա դրական երևույթ է, բայց քանի որ այդ կապակցությամբ առաջացող նոր պահանջմունքներին միշտ չէ, որ հարկ եղած ուշադրությունն է նվիրվել, որոշ հարցեր սկսեցին բարդանալ, մի շարք դեպքերում նացիոնալիստական գուներանգ ստանալ: Թեև սկզբունքորեն դրանք կարելի կլիներ հանգիստ կերպով լուծել, առիթ չտալով տարբեր կարգի չարարկումների և հույզերի անզուսպ դրսևորումների համար:

Վերջին ժամանակներս մենք ակնբախորեն համոզվեցինք, թե ինչպես կարող են հանգուցակապվել ազգամիջյան հարաբերությունների պրոբլեմները: Եվ պետք է աչքի լույսի պես պահպանել մեր ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը: Ուրիշ ճանապարհ, խելացի այլընտրանք պարզապես չկան, ընկերներ: **(Ծափահարություններ):** Իսկ նա, ով ջանում է ապացուցել այլ բան, խաբում է թե՛ իրեն և թե՛ մյուսներին: Ավելին, տարբեր ազգությունների մարդկանց գժտեցնել, նրանց միջև երկպառակություն ու թշնամանք սերմանել փորձելը նշանակում է ծանր պատասխանատվություն վերցնել սեփական ժողովրդի և սոցիալիստական հասարակության հանդեպ, չխոսելով արդեն օրենքի մասին: Նման գործողությունները օբյեկտիվորեն խանգարում են թե՛ դեմոկրատացման պրոցեսին և թե՛ վերակառուցման գործին:

Մենք պետք է ազգամիջյան հարաբերությունների հարցերը քննության առնենք նաև սովետական բազմազգ պետության զարգացման ներկա փուլի տեսանկյունից: Պետք է ընդհանրացնել մեր կուտակած փորձը, օգտագործել ամեն արժեքավորը և միևնույն ժամանակ բացահայտել այն, ինչից պետք է ազատվել: Ուղղակի կասենք, այստեղ մտածելու շատ բան կա: Եվ ամենից առաջ մենք պետք է գնահատենք Միության և հանրապետությունների փոխգործակցությունը կանոնարկող նորմատիվային շատ ակտեր. ինչքանով են դրանք համապատասխանում ներկա պայմաններին, մեր բազմազգ հասարակության խնդիրներին և պահանջմունքներին, դեմոկրատիայի զարգացման մակարդակին: Դա, երևի, կպահանջի նաև ճշգրտել միութենական, ինքնավար հանրապետությունների, մյուս ազգային կազմավորումների ունեցած տեղն ու դերը, նրանց իրավունքներն ու պարտականությունները:

Այս նույն հունով պետք է քննության առնել նաև մի այսպիսի հարց: Մեր հասարակությունը աչքի է ընկնում բնակչության մեծ շարժունությամբ, շատ մարդիկ ապրում են իրենց ազգային կազմավորումների սահմաններից դուրս, իսկ կան նաև տերիտորիալ ինքնավարություն չունեցող ազգություններ: Սրանք բոլորը մեր բազ-

մազգ պետության իրողություններն են: Այստեղ կարող են առաջանալ որոշակի բախումներ, և դրանց լուծման համար մենք ունենք միայն մեկ ուղի. միութենական պետության ստեղծված կառուցվածքի շրջանակներում ապահովել, որ առավելագույնս հաշվի առնվեն յուրաքանչյուր ազգի ու ազգության և սովետական ժողովուրդների ամբողջ ընկերակցության շահերը:

Մեր կոնկրետ պայմաններում ուրիշ մոտեցում պարզապես անհնար է, ուրիշ ճանապարհ բռնելու ամեն մի փորձ կործանարար կլիներ:

Վերցնենք, օրինակ, Ղազախստանը: Հսկայական հանրապետություն է, որն ունի զարգացման մեծ հնարավորություններ, իսկական ինտերնացիոնալ ընդհանրություն, որի նվաճումները մեր բոլոր ժողովուրդների համագործակցության արգասիքն են: Այդ երկրամասը յուրացրել են և այդտեղ միասին ապրում են ղազախներ, ռուսներ, ուկրաինացիներ, գերմանացիներ, կիրգիզներ, թաթարներ, ուզբեկներ, թուրքմեններ, ուրիշ շատ ազգերի և ազգությունների ներկայացուցիչներ: Եվ միևնույն ժամանակ ոչ ոք կասկածի տակ չի դնում Ղազախական Հանրապետության ամբողջականությունը: Այս կամ այն չափով նույնպիսի պատկեր կարելի է տեսնել նաև մյուս հանրապետություններում:

Էկոնոմիկայի, նաև ամբողջ հասարակական կյանքի ինտերնացիոնալացումից մենք չենք կարող խուսափել: Եվ ազգային ներփակվածության ամեն մի ձգտում կարող է հանգեցնել միայն տնտեսական ու հոգևոր աղքատացման: Մեր, սոցիալիստական մոտեցումը այլ է. մենք ձգտում ենք հասնել այն բանին, որ ամեն մի ազգության մարդ իրոք լիիրավ լինի երկրի ցանկացած շրջանում, որ նա ամենուրեք կարողանա իրացնել իր իրավունքներն ու օրինական շահերը:

Հանդես գալով ազգամիջյան հարաբերությունների հետագա ամրապնդման օգտին, մենք ելնում ենք այն բանից, որ սովետական միութենական պետության զարգացումը, մեր ժողովուրդների ինտերնացիոնալ կապերն ու եղբայրությունը կենդանի դինամիկ պրոցեսներ են: Դրանք պետք է մշտապես գտնվեն թե՛ հանրապետական և թե՛ միութենական մարմինների տեսադաշտում: Դրանց հետ կապված պրոբլեմները պետք է լուծել՝ հենվելով ժողովուրդների կամքի, նրանց փոխադարձ համաձայնության վրա, հաշվի առնելով բոլոր սովետական մարդկանց շահերը:

Շատ կարևոր է, որ մեր քաղաքական սիստեմի շրջանակներում մշտական հիմքի վրա գոյություն ունենան այնպիսի պետական և հասարակական հաստատություններ, որոնք զբաղվեին ազգամիջյան պրոբլեմների ամբողջ կոմպլեքսով: Վերը ես արդեն ասացի, որ դա պետք է դառնա ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետի գլխավոր խնդիրներից մեկը:

Մի խոսքով, ընկերներ, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը մեր ընդհանուր տունն է: Եվ մենք՝ այդ տան տերերս, պարտավոր ենք մշտապես հոգալ նրա մասին, պահպանել ու բարեկարգել, ջանալ գործն այնպես վարել, որ բոլոր սովետական մարդիկ, ապրելով այդ տանը, հպարտություն զգան իրենց սոցիալիստական հայրենիքի համար **(Երկարատև ծափահարություններ)**:

Այս բանը, ըստ երևույթին, պետք է հատկապես ընդգծել ազգային հարաբերությունների կատարելագործման մասին մեր կոնֆերանսի բանաձևում:

## *6. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՐԱՎԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ*

Չեմ կարող չնշել այն հետաքրքրությունը, որ հարուցեց Կենտկոմի թեզիսների այն դրույթը, որ սովետական հասարակության հետևողական դեմոկրատացման պրոցեսը պետք է ավարտի սոցիալիստական իրավական պետության ստեղծումը: Եթե համառոտակի ասենք, ապա իրավական պետության բնութագրման համար գլխավորն այն է, որ գործնականորեն ապահովվի օրենքի գերակայությունը: Ոչ մի պետական մարմին, պաշտոնատար անձ, կոլեկտիվ, կուսակցական կամ հասարակական կազմակերպություն, ոչ մի մարդ չի ազատվում օրենքին ենթարկվելու պարտականությունից: Ինչպես քաղաքացիներն են պատասխանատվություն կրում իրենց համաժողովրդական պետության հանդեպ, այնպես էլ պետական իշխանությունն է պատասխանատվություն կրում քաղաքացիների հանդեպ: Նրանց իրավունքները պետք է հուսալիորեն պաշտպանված լինեն իշխանության ու նրա ներկայացուցիչների ամեն մի կամայականությունից:



Վերակառուցումը առանձնապես պարզորոշ կերպով ի հայտ բերեց մեզանում գոյություն ունեցող իրավական սիստեմի պահպանողականությունը, որն առայժմ զգալի չափով կողմնորոշված է ոչ թե դեպի ղեկավարման դեմոկրատական, տնտեսագիտական մեթոդներ, այլ դեպի վարչահրամայական մեթոդներ, դրանց մեծաթիվ արգելքներով ու մանրախնդիր կանոնակարգումով հանդերձ: Դրա համար էլ գործող շատ իրավական ակտեր արգելակ են դարձել հասարակական զարգացման համար: Այստեղից սովետական օրենսդրության ռեֆորմի անհրաժեշտությունը, որը պետք է ընդգրկի մեծաթիվ իրավական նորմեր, ամենից առաջ սոցիալիստական սեփականությանը, պլանավորմանը, տնտեսական, աշխատանքային, հարկային, կենսաթոշակային և մյուս հարաբերություններին վերաբերող նորմեր: Օրենսդրությունը նորացնելիս պետք է խստիվ ղեկավարվել հետևյալ սկզբունքով. թույլատրված է այն ամենը, ինչ չի արգելված օրենքով:

Հսկայական նշանակություն ունի դատական մարմինների գործունեությունը: Շատ մարդկանց ճակատագիրը, նրանց իրավունքների պաշտպանությունը, օրենքը խախտածների պատժման անխուսափելիությունը կախված են նրանից, թե ինչքանով է ճշգրիտ արդարադատության կշեռքը: Այդ պայմաններում չափազանց կարևոր է վերականգնել լենինյան հայեցակետը մեր դեմոկրատիայի համակարգում դատարանի դերի մասին, խստիվ հետևել դատավորների անկախության, միայն օրենքին նրանց ենթակայության սկզբունքին: Դրա կարևոր երաշխիքներից մեկը կարող է դառնալ ժողովրդական դեպուտատների վերադաս սովետների կողմից դատարանների ավելի տևական, ասենք, տասնամյա ժամկետով ընտրությունը:

Հասարակայնությունը պահանջում է խստացնել պատասխանատվությունը դատարանը չհարգելու, նրա գործունեությանը միջամտելու համար, ապահովել դատավարության այնպիսի դեմոկրատական հիմունքների խստագույն կիրառումը, ինչպիսիք են կողմերի մրցակցականությունն ու հավասարությունը, հրապարակայնությունը և բացախոսությունը, ամեն մի կանխակալ կարծիքի, մեղադրական թեքման բացառումը, անմեղության կանխավարկածի սկզբունքի անշեղ կենսագործումը:

Արդարացիորեն է առաջադրվում ժողովրդական ատենակալների դերը բարձրացնելու հարցը: Մասնավորապես, ուշադրության է արժանի առավել բարդ գործերը քննելիս նրանց թիվն ավելացնելու առաջարկությունը:

Այսպիսով, ընկերներ, մենք կանգնած ենք խոշոր դատական ռեֆորմի անհրաժեշտության առջև:

Առանձնապես պետք է ասել դատախազության դերի ու պատասխանատվության մասին: Վերջին երկու տասնամյակներում դատախազության վրա դրվել էին բազմաթիվ լրացուցիչ պարտականություններ, որոնք օրինականության հսկողության նրա ֆունկցիաները այս կամ այն կերպ երկրորդ կամ նույնիսկ երրորդ պլան էին մղում: ՍՄԿԿ Կենտկոմը անհրաժեշտ համարեց վերացնել այդ շեղումը, խնդիր դնելով վերադառնալ լենինյան դիրքորոշմանը և որպես դատախազների գլխավոր ֆունկցիա սահմանել ամենուրեք սովետական օրենքների ճիշտ ըմբռնման ու կիրառման հսկողությունը:

Հանցագործությունների դեմ պայքարն ուժեղացնելու կարևոր պայման են քրեական, հետո նաև դատավարական և ուղղիչ աշխատանքային օրենսդրության փոփոխման նպատակով սկսված աշխատանքը, օրենսդրության նորմերի համապատասխանեցումը զարգացման արդի փուլում հասարակության ունեցած պահանջմունքներին:

Մեծ ուշադրություն պետք է նվիրվի միլիցիայի աշխատանքի բարելավմանը: Վերջին 2—3 տարում կուսակցական կոմիտեների և աշխատավորական կոլեկտիվների երաշխավորությամբ միլիցիա են եկել տասնյակ հազարավոր կոմունիստներ ու կոմերիտականներ՝ բանվոր դասակարգի և գյուղացիության ներկայացուցիչներ: Դա կծառայի ներքին գործերի մինիստրության մարմինների առողջացմանը, որտեղ, ինչպես հայտնի է, նույնպես թույլ են տրվում լուրջ շեղումներ աշխատանքում և, ցավոք, չարաշահումներ: Գլխավորը, որ մեզ պետք է օգնի վճռաբար բարձրացնել միլիցիայի աշխատանքի մակարդակը, դա կադրերի հետ տարվող աշխատանքն է, նրանց քաղաքական դաստիարակությունը, իրավաբանական պատրաստությունը և պրոֆեսիոնալ վարպետության բարձրացումը:

Պաշտպանության է արժանի նաև այն առաջարկությունը, որ արդեն մոտ ժամանակներս քրեական գործերի հիմնական զանգվածի քննությունը հանձնվի ներքին գործերի մինիստրության քննչական ապարատին և այն առանձնացվի որպես միլիցիայի տեղական մարմիններին չենթարկվող ինքնուրույն կառուցվածք: Դա թույլ կտա,

թյուն: Եվ միաժամանակ պետք է մշակվեն դրա իրագործման իրավաբանական, տնտեսագիտական ու քաղաքական մեխանիզմները: Այդ քաղաքականության՝ որպես կուսակցության, պետական մարմինների, բոլոր հասարակական կազմակերպությունների գործունեության առանձնահատուկ ուղղության, իմաստն է երիտասարդության համար ստեղծել այնպիսի պայմաններ ու ազդակներ, որ նա կարողանա առավել լրիվ բացահայտել իր միտքն ու եռանդը, զարգացնել ու իրացնել իր ստեղծագործական պոտենցիալը՝ հանուն սոցիալիզմի:

Մենք պետք է գործնականում լիակատար քաղաքական վստահություն ցուցաբերենք երիտասարդության նկատմամբ, փոխենք երիտասարդության հետ հենց վարվելակերպը, «որդիների» նկատմամբ «հայրերի» շփում-խրատատվությունը պետք է իր տեղը զիջի շփում-երկխոսությանը: Եթե մենք ուզում ենք լրիվ վերականգնել երիտասարդության վստահությունը, պետք է սովորենք խոսել նրա հետ, խոսել հավասարը հավասարի պես, բացեիբաց, ազնվորեն և ընդսմին հիշենք, որ միայն ճշմարտությունը կօգնի մեզ: Ինչքան ճշմարտություն՝ այնքան էլ հավատ: **(Ծափահարություններ):**

Մենք պետք է երիտասարդությանը սովորեցնենք անձնվեր լինել մեր իդեալների իրագործման համար մղվող պայքարում: Բայց մենք պետք է միաժամանակ պայմաններ ստեղծենք բերկրալի, գրավիչ ու լիարյուն կյանքի համար: Խոսելով այս ամենի մասին, ընկերներ, ես ուզում եմ պարզորոշ ասել, որ խոսքը երիտասարդությանը ինչ-որ ձևով սիրաշահելու, խնամակալության ու ամենաներման նոր ձևերի մասին չէ: Այո, այդ բանին դեմ է երիտասարդությունն ինքը: Ոչ, մենք պետք է հարաբերությունները կառուցենք փոխվստահության, ընկերականության, հարգալից վերաբերմունքի, փոխադարձ պահանջկոտության, և մեր սոցիալիստական հասարակության նորացման խնդիրների լուծման բնագավառում ակտիվ փոխգործակցության սկզբունքներով:

Այս նույն առնչությամբ հսկայական նշանակություն ունի նաև կոմերիտմիության ներկա դերի հարցը: ՀամԼԿԵՄ-ը սովետական երիտասարդության քաղաքական կազմակերպությունն է, որն աշխատում է կուսակցության ղեկավարությամբ: Նրա գործունեության համար գլխավորը այսօր էլ լենինյան կողմնորոշիչներն են. երիտասարդներին պատրաստել դառնալու կոմունիստներ, ակտիվորեն մասնակցելու կոմունիստական կուսակցության քաղաքականության կենսագործմանը:

Մենք բոլորս էլ ուզում ենք կոմերիտմիությունը տեսնել որպես պատանիների ու աղջիկների կոմունիստական դաստիարակության դպրոց, դեմոկրատիայի իսկական դպրոց, որպես նորարարական կազմակերպություն, որտեղ պաշտպանություն գտնեին ստեղծագործող, նախաձեռնող մարդիկ, որտեղ հրապարակայնությունը, դիրքորոշումների արտահայտման բացախոսությունը, դիսկուսիաների բնույթը զուգակցվում են երիտասարդության շահերի գործնական իրականացման հետ, սոցիալական ու տնտեսական վերափոխումների մեջ նրա ակտիվ ներգրավման հետ: Խոսքը վերաբերում է աշխատանքը անխափան տանելու, ոչ թե վերևից ցուցումների սպասելու, այլ երիտասարդական եռանդի ու նախաձեռնության պոտենցիալը լիովին իրականացնելու ՀամԼԿԵՄ-ի հնարավորությանը:

Ինչ վերաբերում է կուսակցական կոմիտեներին, ապա նրանք պետք է հարգեն ու պահպանեն կոմերիտմիության կազմակերպական ինքնուրույնությունը, ներմիութենական կյանքի առանց բացառության բոլոր հարցերը ինքնուրույնաբար լուծելու, կուսակցության քաղաքականության մշակմանն ու իրականացմանը մասնակցելու, կուսակցական, սովետական և տնտեսական մարմիններում երիտասարդության շահերը պաշտպանելու նրա իրավունքը: Վերակառուցումը պահանջում է, որ երիտասարդ սերունդը լայնորեն ներկայացված լինի սովետներում, արհմիութենական և մյուս հասարակական կազմակերպություններում, որ երիտասարդները տիրապետեն կառավարման գիտությանը, համարձակորեն իրենց ձեռքը վերցնեն պետական ու հասարակական գործերը:

Ընկերներ, մեր աչքի առաջ մեծանում ու ձևավորվում է մի նոր սերունդ՝ վերակառուցման սերունդը: Նոր հերթափոխի պատրաստումը մեր ամբողջ կուսակցության, մեր ամբողջ հասարակության ամենապատասխանատու խնդիրն է: Ակներևաբար, դա այնքան կարևոր հարց է, որ արդեն մոտ ժամանակներս պետք է դառնա կուսակցության Կենտկոմի պլենումում հատուկ քննարկման առարկա:

Սոցիալական շահերի պրոբլեմի կապակցությամբ ուզում եմ անդրադառնալ պետական նշանակություն ունեցող ևս մի հարցի: Դա կանանց հարցն է: Քանիցս



պնդվել է, որ այդ հարցը մեզ մոտ լուծված է մեկընդմիշտ: Իսկապես, մենք ազդարարել ենք տղամարդու հետ կնոջ իրավունքների հավասարություն, ապահովել ենք փաստորեն բոլոր մասնագիտություններին տիրապետելու հավասար հնարավորություն, սահմանել ենք հավասար աշխատանքի դիմաց միատեսակ վարձատրություն, երաշխավորել ենք կանանց մյուս իրավունքները: Այս ամենը ճիշտ է: Բայց գործը մի ընթացք է ստացել, որ անվիճելի ձեռքբերումների հետ մեկտեղ կանանց համար այնպիսի հոգսեր են մնացել, որոնք մինչև օրս նրանց մեծապես խանգարում են լիովին օգտագործելու իրենց իրավունքները: Կենցաղի չկարգավորվածությունը, մանկական հիմնարկների պակասությունը, սպասարկման և առևտրի ոլորտի աշխատանքում տեղ գտած թերությունները՝ այս ամենը առաջին հերթին բաժին է ընկնում կանանց: Այնպես որ այստեղ էլ իրեն զգալ է տվել սոցիալական ոլորտի զարգացման մեջ մնացորդային սկզբունքը: Բայց այդ վիճակը տարիներ շարունակ կարող էր պահպանվել նաև այն պատճառով, որ կանանց կարծիքի հետ այնքան էլ հաշվի չէին նստում: Ղեկավար մարմիններում կանանց հարկ եղած ներկայացուցչությունը չկա: Ասենք, ամբողջությամբ վերցված կանանց շարժումն էլ, որը ծավալվել էր Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, աստիճանաբար կանգ առավ կամ ձևական բնույթ ստացավ:

Վերակառուցումը սրությամբ դրեց այդ բոլոր հարցերը: Ստեղծված է, ավելի ճիշտ՝ վերածնված է կանանց մասսայական կազմակերպությունը: Բայց դա գործի սոսկ կազմակերպական, թեև կարևոր կողմն է: Մենք պետք է հասնենք այն բանին, որ վիճակը ըստ էության փոխվի, որ կանանց առջև լայն ճանապարհ բացվի դեպի ղեկավար մարմիններ՝ վարից վեր, որ կանանց շահերը անմիջականորեն շոշափող հարցերը չլուծվեն առանց նրանց մասնակցության ու որոշիչ եզրակացությունություններ:

Վերակառուցման ևս մի հատկանշական գիծը հասարակական միավորումների բուռն աճն է, որոնք արտահայտում են սոցիալական շահերի ողջ բազմազանությունը: Դրանք են պատերազմի և աշխատանքի վետերանների կազմակերպությունները, գիտաինժեներական ընկերությունների և թատերական գործիչների միությունները, մշակույթի սովետական ֆոնդը, մանկական ֆոնդը, բնության պահպանությամբ, պատմական հուշարձաններով զբաղվող զանազան ընկերություններ, գթասրտության շարժումը: Ամբողջությամբ վերցրած դա ժողովրդի ինքնագործունեության հրաշալի դրսևորում է և արժանի է ամենայն աջակցության:

Իհարկե, հարկ չկա աչք փակելու նաև այն բանի վրա, որ հասարակական վերելքի հունի մեջ երևացել են առանձին խմբեր, որոնց շահերը հեռու են վերակառուցման նպատակներից, ժողովրդի շահերից: Բայց նրանք չէ, որ որոշում են ընդհանուր մթնոլորտը, և հիմա խոսքը նրանց մասին չէ: Կարծում եմ, կուսակցական կազմակերպությունները, աշխատավորները ունակ են սոցիալիստական հասարակության նորացման իսկական ջատագովներին զանազանել նրանցից, ովքեր առաջնորդվում են սոցիալիզմին խորթ նպատակներով:

Միակուսակցական սիստեմի դեպքում, որը պատմականորեն ձևավորվել ու հաստատվել է երկրում, մեզ պետք է կուսակցության և հասարակության մեջ հայացքների համադրման, քննադատության և ինքնաքննադատության մշտապես գործող մեխանիզմ: Հարանուն դեմոկրատացման պայմաններում դա կենսական նշանակություն ունեցող հարց է: Ներկուսակցական դեմոկրատիայի էությունը հենց այդպես էր հասկանում Վ. Ի. Լենինը, որը, դատապարտելով ֆրակցիոնականությունը, վճռաբար դեմ էր այլախոհության համար կուսակցական ընկերների հալածանքին: Մեր կյանքի անբաժանելի հատկանիշները պետք է դառնան մշտական, կոնստրուկտիվ քաղաքական երկխոսությունը, դիսկուսիայի կուլտուրան, հասարակական կարծիքն ուսումնասիրելը և հաշվի առնելը:

Այսօր դրա համար պայմաններ ստեղծվում են: Երկրում ըստ էության ձևավորվում է վերակառուցման կուսակցության գիծը պաշտպանող համաժողովրդական հայրենասիրական շարժումը: Դա ներառում է հասարակության առողջացման օգտին հանդես եկող բոլոր ուժերը՝ կոմունիստներին, կոմերիտականներին, անկուսակցականներին, հավատացյալներին, կանանց, վետերաններին, երիտասարդությանը, բոլոր հիմնական հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներին: Այդ շարժումն արտացոլում է ժամանակակից հասարակական-քաղաքական կյանքի խորքային պրոցեսները, ամրապնդում վստահությունը վերակառուցման գործի հաջողության հանդեպ: Միտինգներում, ժողովներում, մամուլում զանազան առաջարկություններ են

արվում այդ շարժման հեռանկարների, նրա գործունեության հնարավոր ձևերի մասին: Եկեք քննարկենք նաև այդ հարցը:

# III. ՍՄԿԿ-Ի ՂԵԿԱՎԱՐ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ԵՎ ՆԵՐՔԻՆ ԿՅԱՆՔԻ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր: Իրականացնելով վերակառուցումը, մենք նորից ու նորից մեր միտքն ուղղում ենք կուսակցությանը, այդ հեղափոխական պրոցեսում նրա ունեցած տեղին ու դերին:

Հատկանշական է, որ հենց կուսակցության գործունեության ու նրա ղեկավար դերի հարցերն են վերջին ժամանակներս գտնվում մեր հասարակության ուշադրության կենտրոնում: Եվ դա այն համոզիչ հավաստիքներից մեկն է, որ ժողովուրդը կուսակցության հետ է կապում վերակառուցման ընթացքը, ապագայի իր հույսերը: Նույնիսկ զուտ ներկուսակցական պրոբլեմները համաժողովրդական հետաքրքրության առարկա դարձան:

1985 թվականի ապրիլին առաջարկելով նոր կուրս, ՍՄԿԿ-ն հավաստեց, որ հենց ինքն է հասարակության ծրագրային նպատակների կրողը, հենց կուսակցությունն է քաղաքական այն ուժը, որը կարող է երկիրն առաջնորդել նորացման ուղիով: Համարձակորեն մերկացնելով նախաճգնաժամային իրավիճակի և լճացման երևույթների պատճառները, կուսակցությունն իր վրա վերցրեց պատասխանատվությունը ստեղծված դրության համար: Նա օբյեկտիվորեն հայացք նետեց իր գործունեությանը, ղեկավարման մեթոդներին, գիտակցաբար իր վրա հրավիրեց հասարակական քննադատությունը:

ՍՄԿԿ XXVII համագումարում և հատկապես Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում քննադատական վերլուծության ենթարկվեցին այն բացասական պրոցեսները, որոնք վերջին տասնամյակներում տեղի էին ունեցել ոչ միայն ամբողջությամբ վերցված հասարակության մեջ, այլև հենց կուսակցության մեջ: Մենք պետք է պատասխան տայինք սկզբունքային բնույթի հարցերի, ՍՄԿԿ-ն որպես հիրավի դեմոկրատական կազմակերպություն, որը ստեղծվել է աշխատավոր ժողովրդի միս ու արյունից, ինչու՞ չկարողացավ խոչընդոտել սոցիալիզմի ձևախեղման պրոցեսները, որոնք կապված էին Ստալինի անձի պաշտամունքի հետ: Այնուհետև բացահայտելով և դատապարտելով լենինիզմի սկզբունքներից թույլ տրված նահանջները, նա ինչու՞ սահմանափակվեց մակերեսային փոփոխություններով, որի հետևանքով հնարավոր դարձան լճացման լուրջ երևույթները երկրի զարգացման ասպարեզում:

Պատասխանի էությունը նախ և առաջ այն է, որ որոշակի ձևախեղումներ էին տեղի ունեցել բուն կուսակցության մեջ, նրա գործունեության բովանդակության և աշխատավորների հետ ունեցած կապերի մեջ, հանգեցնելով դեմոկրատական բոլշևիկյան շատ ավանդույթների կորստի, որոնք սկզբնապես բնորոշ էին նրան, որոնց հիմքը դրվել էին Լենինի և նրա զինակիցների բազմամյա ջանքերով:

ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց արմատապես վերակառուցել կուսակցական աշխատանքը, նպատակամղեց ներկուսակցական կյանքի դեմոկրատացումը: Ճշմարտության դասերը հարուցեցին ինքնագիտակցության և ինքնամաքրման աճը մեր շարքերում: Կոմունիստները, կուսակցական կազմակերպությունները, կուսակցական մամուլը սկսեցին իրենց ավելի եռանդագին դրսևորել հասարակության մեջ, ավելի համարձակորեն դնել և լուծել հասունացած հարցերը:

Նորացման պրոցեսը, թեպետև ո՛չ հեշտորեն, ո՛չ առանց դժվարությունների, ուժեղանում է: Սակայն նշելով կուսակցության կյանքի իսկապես խոր փոփոխությունները, մենք մինչև վերջ անկեղծ չէինք լինի, եթե չասեինք, որ դեռևս բնավ էլ ամեն ինչ չէ, որ բարեհաջող է: Կուսակցության ոչ բոլոր կազմակերպություններն են վերակառուցում իրենց աշխատանքը՝ նկատի ունենալով նոր պահանջները: Կուսակցական աշխատողների և նույնիսկ կոմիտեների մի մասը հանդես է գալիս պահպանողական դիրքերից: Շատերին հեշտությամբ չեն տրվում աշխատանքի նոր մեթոդներին տիրապետելու գիտությունը, հրապարակայնության և դեմոկրատիայի մթնոլորտում գործելու ունակությունը:

Այո, դա այդպես է: Բայց ես ուզում եմ կոնֆերանսի պատգամավորներին, ամբողջ ժողովրդին ասել գլխավորը. առանց կուսակցության ուղղություն տվող գործունեության, նրա քաղաքական կուրսի մարմնավորման վերակառուցման խնդիրները լուծել հնարավոր չէ: **(Բուռն ծափահարություններ):** Վերակառուցումը դատապարտված կլինի թե՛ քաղաքականապես, թե՛ գաղափարապես, թե՛ կազմակերպորեն:



Ներկա բեկումնային փուլում ՍՄԿԿ-ն պետք է լրիվ ծավալով իրացնի հասարակության ղեկավար ուժի իր ֆունկցիաներն ու խնդիրները: Բայց հենց քաղաքական առաջատարության վճռական նշանակությունն է թելադրում ներկայիս պայմաններում կուսակցական գործունեության կոնկրետ բովանդակությունը հիմնավորապես քննարկելու անհրաժեշտությունը:

## 1. ԼԻՈՎԻՆ ՎԵՐԱԾՆԵԼ ՆԵՐԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ

Այստեղ ի՞նչն է գլխավորը: Թեզիսներում արտահայտված է ՍՄԿԿ Կենտկոմի սկզբունքային դիրքորոշումը: Հիշեցնեմ այն. «կուսակցությունը, հենվելով մարքս-լենինյան ուսմունքի վրա, կոչված է մշակել հասարակական զարգացման տեսությունն ու ստրատեգիան, ներքին ու արտաքին քաղաքականությունը, ձևավորել սոցիալիստական նորացման գաղափարախոսությունը, քաղաքական ու կազմակերպչական աշխատանք տանել մասսաների մեջ, դաստիարակել ու տեղաբաշխել կադրերին»:

ՍՄԿԿ-ի՝ որպես քաղաքական ավանգարդի, ֆունկցիաները մենք սահմանել ենք: Բայց որպեսզի այդ ֆունկցիաները իրականացվեն, կուսակցությունը պետք է վերակառուցի իր գործունեությունը, աշխատանքի ոճը, մեթոդներն ու ձևերը՝ սկզբնական կազմակերպությունից մինչև Կենտրոնական կոմիտե: Յուրաքանչյուր կոմունիստ պետք է իրոք լինի նրա քաղաքականության իրականացման, ժողովրդի շահերի համար պայքարող մարտիկ:

Եվ այստեղ կարևոր է հասկանալ, թե մենք ինչու ենք դժգոհ ինքներս մեզանից, ինչու ենք ամենասուր քննադատության ենթարկում գործերի վիճակը մեր կուսակցական տանը:

Նախ և առաջ այն, որ ՍՄԿԿ-ի կառուցվածքի գործունեության հիմքում դրված դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը որոշակի փուլում շատ բանով փոխարինվել էր բյուրոկրատական ցենտրալիզմով: Դա տեղի էր ունեցել առաջին հերթին այն պատճառով, որ սկզբնական կուսակցական կազմակերպությունները, շարքային կոմունիստները զգալիորեն կորցրել էին կուսակցության գործունեության բովանդակության վրա ներգործելու իրական հնարավորությունները: Լրջորեն խախտվում էր լենինյան այն կարևորագույն պահանջը, որի համաձայն կուսակցական բոլոր մարմինները, նրանց կադրերը պետք է գտնվեն կուսակցական զանգվածների մշտական վերահսկողության ներքո: Կուսակցության մեջ եղած բացասական շատ երևույթներ կապված են նաև ընտրովի մարմինների դերի թուլացման, բոլոր մակարդակներով ապարատի դերի չափից ավելի ուռճացման հետ:

Չի կարելի չասել նաև մի այլ բանի մասին: Մեր կուսակցությունը Վ. Ի. Լենինի կողմից կառուցվել էր որպես համախոհների կազմակերպություն, նրա կյանքի օրենքն էին բոլոր պրոբլեմների ազատ քննարկումը և որոշումներն ընդունելուց հետո գործողությունների միասնությունը:

Սակայն վարչահրամայական համակարգի հաստատմամբ կուսակցական ընկերականության մթնոլորտը աստիճանաբար տեղը զիջում էր հրամանների և կատարման, կուսակցականների՝ որպես պետերի և ենթակաների բաժանման, կոմունիստների հավասարության սկզբունքի խախտման վրա հիմնված հարաբերություններին: Ու թեև մերթ ընդ մերթ ընդունվում էր նման վիճակի անհանդուրժելիությունը, այդուհանդերձ կյանքում ամեն ինչ մնում էր հին ձևով:

Եկեք հիշենք, որ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումը նույնպես ըստ էության անցավ կուսակցական կյանքի լենինյան սկզբունքներն ու նորմերը վերականգնելու լոզունգով: Մինչդեռ իրական պրոցեսները ընթացան այլ ուղղությամբ և լճացման տարիներին երբեմն այլանդակ բնույթ էին կրում: Սկզբնական կուսակցական կազմակերպությունների, ընտրովի մարմինների անդամների ակտիվության վրա անդրադառնում էր նաև կադրերի հերթագայության պրոցեսի կասեցումը: Կոմունիստների ամբողջ սերունդներ չէին կարողանում իսկապես մասնակցել կուսակցական կյանքին: Մյուս կողմից նրանցից շատերը, ովքեր տարիներով մնում էին ղեկավար պաշտոններում, իրենց երևակայում էին իբրև անսխալական և անփոխա-

րինելի: Ընտրովի անձանց և կուսակցական ապարատի մի զգալի մասի պատասխանատվության նվազումը, կուսակցական զանգվածներից, աշխատավորությունից նրանց կտրվելը հաճախ, ինչպես այժմ մենք գիտենք, վերջանում էին քաղաքական ու բարոյական անկումով: Հենց այստեղ են թաքնված իշխանության չարաշահման, բարոյական վերասերման այն ամոթալի փաստերի արմատները, որոնք բացահայտվեցին վերակառուցման ընթացքում:

Ես դառնությամբ եմ խոսում այս երևույթների մասին: Դրանք ծանր անդրադարձան կուսակցության և նրա կազմակերպությունների գործունեության վրա: Գործի այդ կողմի մասին մենք երբեք չպետք է մոռանանք: Բայց կա նաև մի այլ և մեզ համար շատ սկզբունքային կողմ: Այդ բոլոր տարիներին միլիոնավոր կուսակցականներ և հազարավոր կուսակցական կադրեր ազնվորեն էին կատարում իրենց կուսակցական ու քաղաքացիական պարտքը օբյեկտիվորեն և սուբյեկտիվորեն ոչ դյուրին պայմաններում: Նրանք ըստ արժանվույն էին կրում հեղափոխության դրոշը, իրենց տեղամասերում հնարավոր ամեն ինչ անում երկրի զարգացման, սոցիալիզմի համար: Նույնը կարելի է ասել նաև մեր շատ ղեկավար կադրերի, տնտեսավարների ու մասնագետների, գիտնականների, մշակույթի գործիչների մասին:

Կուսակցական միջավայրում խորն էին ապրում լենինյան ավանդույթները: Անկախ ամեն ինչից, հենց կուսակցության մեջ էին կուտակվում ու ձևավորվում այն ուժերը, որոնք ի վիճակի եղան կտրուկ շրջադարձ կատարելու սոցիալ-տնտեսական քաղաքականության մեջ և դուրս գալու վերակառուցման, նորացման ուղին:

Կենտկոմի ապրիլյան պլենումը վճռականորեն արտահայտվեց ՍՄԿԿ-ի դեմոկրատացման, նրա աշխատանքի բացահայտության, կուսակցական կյանքի լենինյան նորմերի լիակատար վերածնման օգտին՝ ու առաջին հերթին սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ, կուսակցության ընտրովի մարմինների աշխատանքում:

Այդ առթիվ Կենտկոմի թեզիսներում արտահայտված նկատառումները աշխույժ դիսկուսիա առաջացրին ոչ միայն կուսակցության մեջ, այլև ամբողջությամբ վերցրած հասարակության մեջ: Բոլոր սովետական մարդիկ շահագրգռված են յուրաքանչյուր կոմունիստի մեջ, յուրաքանչյուր սկզբնական կուսակցական կազմակերպության մեջ, յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի մեջ տեսնել հիրավի դինամիկ քաղաքական ուժ:

Կոնֆերանսի նախօրեին ծավալված դիսկուսիայի ընթացքում նորովի դրվեցին կուսակցական ժողովների դերի, կուսակցական կազմակերպությունների և կուսակցական կոմիտեների, յուրաքանչյուր կոմունիստի գործունեության ձևերի հարցերը: Եվ դա հասկանալի է, քանի որ հենց սկզբնական կուսակցական կազմակերպությունն է հանդիսանում յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի օրգանական մասը, մարմնավորում կուսակցության մշտական ներկայությունը հասարակության կյանքում:

Այդ նպատակներով պետք է լիովին վերածնել սկզբունքայնության, բացախոսության, դիսկուսիաների, քննադատության և ինքնաքննադատության, գիտակցական կարգապահության, կուսակցական ընկերականության և պարտադիր անձնական պատասխանատվության, գործարարության մթնոլորտը կուսակցության մեջ: Այժմ հենց այդ ուղղությամբ են ծավալվում պրոցեսները կուսակցական կազմակերպություններում, և կոնֆերանսի խնդիրն է վճռականորեն պաշտպանել դրանք, անսահմանափակ ասպարեզ բացել դրանց համար:

Այժմ պետք է նորովի առաջադրել աշխատավայրում գործերի վիճակի համար, վերակառուցման մեջ ներդրվող անձնական ավանդի համար, իր կոլեկտիվի գործունեության համար յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության հարցը: Դա կարևոր է նաև այն պատճառով, որ շատերը մինչև այժմ գանգատվում են, թե վերակառուցումը չի հասել սկզբնական կուսակցական կազմակերպություններին: Բայց ո՞վ է մեղավոր դրանում: Եկեք պարզենք:

Վերակառուցման քաղաքական գիծը սահմանել և դրան հավանություն է տվել համագումարը: Աշխատանքի կարևորագույն ուղղությունները ձևակերպված են Կենտկոմի պլենումի որոշումներում: Ընդունված են օրենսդրական ակտեր, որոնք վերաբերում են կյանքի տարբեր ոլորտների: Կուսակցության և հասարակության մեջ ստեղծված է հրապարակայնության մթնոլորտ, ողջունվում և խրախուսվում են նախաձեռնությունը, ինքնուրույնությունը, քաղաքացիական դիրքորոշումը:

Շատ կոմունիստներ, կոմերիտականներ և անկուսակցականներ ակտիվորեն, խղճի կանչով են գործում սոցիալիստական նորացման համար ծավալված պայքարի



տարբեր տեղամասերում: Իսկ ոմանք ինչ-որ բանի են սպասում: Իրեն զգալ է տալիս հին, համառ հիվանդությունը՝ սպասում են ցուցումների: Բայց չէ որ ցուցումներն էլ կան, ընկերներ: Իսկ այ, կոմունիստներին ձեռքից բռնած տանելը վայել չէ:

Հենց այդ առնչությամբ օրախնդիր նշանակություն ունի կուսակցական շարքերի յուրօրինակ ստուգատես անցկացնելու հարցը, որը բարձրացված է թեզիսներում: Հիմա յուրաքանչյուրից պահանջվում են ձեռնարկումներ, ռեալ գործողություններ վերակառուցման խնդիրների իրականացման ուղղությամբ: Կոմունիստների ավանգարդային դերը այսօր, ընկերներ, պետք է ապացուցվի գործերով: **(Ծափահարություններ):**

Կենտրոնական կոմիտեն արտահայտվեց կոմունիստների հասարակական-քաղաքական ատեստավորման օգտին, և սկզբունքորեն մենք զգացինք, որ այդ առաջարկությունը հավանության է արժանանում:

Ճիշտ է, արտահայտվում են նաև երկյուղներ, ընդ որում երկակի բնույթի: Ոմանք պնդում են, թե ատեստավորումը ոչինչ չի տա, թե հարկավոր է կուսակցության զտում, նրա հավելաքեռի թոթափում: Կենտկոմում նման մոտեցումը մենք անիրավական ենք համարում վերակառուցման ու դեմոկրատացման պայմաններում: Եվ ահա թե ինչու: Նրանցից շատերը, ովքեր տակավին վերջերս համարվում էին նվազ ակտիվ, կուսակցական կազմակերպության հետ կապը կորցրած, ում դասում էին այդ հավելաքեռի շարքը, այսօր ջանում են իրենց տեղը գտնել կյանքում: Կուսակցական ընկերներին պետք է վերաբերվել մեծագույն հարգանքով: Ոչ մի ազնիվ աշխատողի չի կարելի թողնել վերակառուցման նավակողից դուրս. եկեք ելնենք սրանից: Սա լենինաբար է և բոլշևիկաբար: **(Ծափահարություններ):**

Ուրիշները վախենում են, թե հանկարծ ատեստավորումը չվերածվի հաշվեհարդարի, հաշիվների մաքրումի հենց նրանց հետ, ովքեր այսօր ակտիվ դիրք են գրավում, անցանկալի են եսասիրական շահեր հետապնդող անձանց ինչ-որ խմբի:

Կարծում եմ, որ եթե այդ լուրջ գործին նաև լրջորեն վերաբերվենք, ապա թե՛ մեկ և թե՛ մյուս երկյուղները զուր կլինեն: Առաջ քաշելով կուսակցության ինքնամաքրման գաղափարը, մենք ակնկալում ենք, որ ատեստավորումը պետք է ընթանա կանոնադրական նորմերին համապատասխան, դեմոկրատական նորմալ պրոցեսի շրջանակներում, կուսակցական բաց ժողովներում, այլ ոչ թե ինչ-որ հատուկ «եռյակների» կամ «հնգյակների» մասնակցությամբ, ոչ թե փակ քննարկումների և ծածուկ բնութագրերի կազմման հիման վրա: Ատեստավորման բուն պրոցեսը պետք է կոմունիստների դաստիարակության դպրոց լինի, որպեսզի անցնելով այդ դպրոցը նրանք այնտեղից դուրս գան զոդված կուսակցական ընկերականության ամուր կապերով, միավորված ընդհանուր նպատակներով ու խնդիրներով, որոնք բոլորիս առջև դրել է վերակառուցումը:

Մի այլ, և շատ էական հարց է ընդունելությունը կուսակցության մեջ: Մենք պետք է վճռականորեն ազատվենք ամեն կարգի կարգադրագրերից, կուսակցության համար այդ կենսականորեն կարևոր հարցի նկատմամբ բյուրոկրատական մոտեցումներից: Կուսակցության մեջ ընդունվողի հատկանիշները գնահատելիս գլխավոր չափանիշը նրա դիրքորոշումն է և իրական մասնակցությունը վերակառուցմանը: Այդ պահանջը պետք է վերաբերի բոլորին՝ և՛ բանվորներին, և՛ գյուղացիներին, և՛ մեր մտավորականության ներկայացուցիչներին:

Բոլորս լավ գիտենք, որ մարդիկ ամենից լավ երևում են աշխատավորական կոլեկտիվում: Այնտեղ տարբերում են նրանց, ովքեր կուսակցության մեջ են մտնում սրտի կանչով, և նրանց, ովքեր անձնական օգուտ են փնտրում:

Առաջարկություններ են ստացվում լավագույն մարդկանց կուսակցության մեջ առաջադրել անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվների կողմից: Փորձը հաստատում է կուսակցության մեջ ընդունվելու դիմումները աշխատավորական ժողովներում նախապես քննարկելու նպատակահարմարությունը: Եվ, հասկանալի է, կոլեկտիվի կարծիքը պետք է կոմունիստների կողմից ուշի ուշով քննարկվի ՍՄԿԿ-ի անդամ ընդունելիս:

Այժմ կուսակցական ընտրովի մարմինների մասին: Այստեղ մենք պետք է շատ բան փոխենք, ընդ որում `արմատապես: Նախ և առաջ պետք է վերականգնել ընտրովի մարմինների՝ որպես կոմունիստների լիազոր ներկայացուցիչների, հեղինակությունը: Թե՛ քարտուղարները, թե՛ բյուրոն և թե՛ առավել ևս կուսակցական ապարատը պետք է գտնվեն ընտրովի կուսակցական մարմնի վերահսկողության ներքո: Այսուհետև և այլևս երբեք չպետք է առաջանա այնպիսի իրավիճակ, երբ բյուրոյի ան-

դամները կամ կուսակցական ապարատի աշխատողներն իրենց թույլ տան հրամայական ոճ գործադրել ընտրովի կոմիտեների անդամների նկատմամբ:

Պակաս կարևոր չէ, իսկ գուցե և ավելի կարևոր է, որ կուսակցական կոմիտեների քննարկմանը դրվեին ամենախոշոր սկզբունքային հարցերը՝ կապված նոր պայմաններում կուսակցության ավանգարդային դերի, մասսաների շրջանում նրա կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի իրականացման հետ:

Պետք է վճռականորեն վերջ տալ այն գործելակերպին, երբ կոմունիստների կուսակցական ժողովների օրակարգերը ծանրաբեռնվում էին տասնյակ մանր, աննշան գործերով: Հարցերը նախապատրաստելիս և քննարկելիս պետք է բացառել նաև կազմակերպամոլության, գովերգության և դատարկախոսության նվազագույն իսկ ակնարկը: Բոլոր ընտրովի մարմիններում պետք է իշխեն բացախոսությունը, քննադատական մոտեցումը, գործարարությունը: Այդ նույնը պետք է բնորոշ լինի նաև կուսակցական ապարատի գործունեությանը, բացառելով աշխատանքի ծածուկությունը և չարդարացված գաղտնիությունը:

Ամբողջ ասվածը լիովին վերաբերում է նաև ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գործունեությանը, որն առանձնակի դիրք է գրավում կուսակցության և հասարակության մեջ: Համագումարների միջև ընկած շրջանում հենց այստեղ են լուծվում ներքին և արտաքին քաղաքականության կարևորագույն հարցերը: Ամբողջ կուսակցության, մեր ողջ հասարակության համար հսկայական շանակություն ունի այն, թե ինչպես է աշխատում Կենտկոմը, ինչ հարցեր է քննարկում, ինչ որոշումներ է կայացնում, ինչքանով է դեմոկրատական նրա գործունեության մթնոլորտը:

Մենք արդեն Կենտկոմի հունվարյան պլենումում ասել ենք, թե մի շարք տարիներ շարունակ ինչպիսին է եղել վիճակը Կենտրոնական կոմիտեում: Չկրկնելով ինքս ինձ, ասեմ միայն, որ շատ վրիպումներից հնարավոր կլիներ խուսափել, եթե ժամանակին և մտածված կերպով լուծվեին երկրի ղեկավարման հասունացած պրոբլեմները, եթե միշտ լիարյուն և դեմոկրատական լիներ կուսակցության Կենտրոնական կոմիտեի աշխատանքը:

Այժմ իրավիճակը սկսել է փոխվել, հատկապես կուսակցության XXVII համագումարից հետո: Ես կասեի այսպես. Կենտրոնական կոմիտեն վերածնվում է, ուժ կուտակում: Այժմ այլ կերպ են անցնում Կենտկոմի պլենումները: Եվ, այդուհանդերձ, մենք դեռևս պետք է զգույշ լինենք գնահատականներում, չընկնենք չափազանցությունների մեջ:

Համար առաջին պրոբլեմը Կենտկոմի ադամների ակտիվ աշխատանքն է ոչ միայն իրենց տեղում, այլև ընդհանուր կուսակցական որոշումների նախապատրաստման, քննարկման և ընդունման ընթացքում: Ասելով այդ մասին, ես նկատի ունեմ նաև որոշակի փորձը: Վերջին պլենումների նախօրեին պրակտիկա դարձան Կենտկոմի անդամների, կուսակցական կոմիտեների քարտուղարների հետ նախապես խորհրդակցելը, օրակարգի վերաբերյալ փաստաթղթերը առաքելը և այլն: Այդ ամենը անդրադարձել է թե՛ հենց Կենտկոմի անդամների ակտիվության վրա, թե՛ ընդունվող որոշումների որակի վրա: Ահա, ի դեպ, նաև աշխատանքում սխալներից խուսափելու որոշակի երաշխիք, իսկ նման սխալների գինը, ինչպես հայտնի է, անչափ մեծ է:

Մենք պետք է խորհենք նաև պլենումների միջև ընկած ժամանակահատվածում և հենց բուն պլենումներում աշխատանքի կազմակերպման նոր ձևերի շուրջը: Արդյոք հարկ չկա՞ Կենտկոմում ունենալ ներքին և արտաքին քաղաքականության կարևորագույն ուղղություններով զբաղվող հանձնաժողովներ, որոնցում կանոնավոր կերպով աշխատեին Կենտրոնական կոմիտեի անդամները: Այդ դեպքում կուսակցական ապարատն էլ իրեն արժանի տեղը կգրավեր:

Հավանաբար պետք է ընդլայնել նաև Կենտկոմի անդամների մասնակցությունը քաղբյուրոյի աշխատանքին: Չեմ ասում, թե դա չկա, բայց առայժմ այդ մասնակցությունը զգալիորեն սահմանափակվում է մայրաքաղաքի ապարատի, գերատեսչությունների և գիտական հիմնարկների աշխատողներով:

Կանոնավոր պետք է դառնան քաղբյուրոյի հաշվետվություններն ու իր գործունեության մասին հաղորդումները Կենտկոմի պլենումներում:

Որպեսզի կուսակցական կոմիտեները, ընտրովի մարմինները լիարյուն գործեն և կարողանան օգտագործել այն ամենը, ինչ դրված է մեր կանոնադրության հիմքում, պետք է վճռականորեն նորացվի դրանց կազմավորման կարգը: Դա ամեն մի ընտրովի, այդ թվում և կուսակցական մարմնի ակտիվության վճռական գործոնն է: Հարկ է, որ բոլոր մակարդակներով ընտրություններն անցնեն դեմոկրատական մթնոլոր-



տում, որն ապահովում է թեկնածությունների լայն քննարկումը, մրցողականությունը և որպես արդյունք՝ գործին իսկապես նվիրված, տաղանդավոր, արժանավոր մարդկանց ընտրվելը, որոնք անուրանալի հեղինակություն են վայելում և ընդունակ են վարել վերակառուցման քաղաքականությունը:

Երևի մեզ չի հաջողվի հասնել դրան, օգտագործելով մոտեցման հին ձևերը, երբ հնարավոր քննարկման, իսկ այնուհետև քվեարկության համար թեկնածությունները ըստ էության տրվում էին քարտուղարի կողմից, լավագույն դեպքում՝ կուսակցության մարզկոմի, քաղկոմի, շրջկոմի բյուրոների անդամների մասնակցությամբ և այլն:

Այդ կապակցությամբ, ընկերներ, կոնֆերանսի քննարկմանն է դրվում մի այսպիսի նկատառում. վերջին խոսքը թողնելով ընդհանուր ժողովին կամ կոնֆերանսի պատգամավորներին, ճանաչել նաև ստորադաս կազմակերպությունների այն իրավունքը, որ կոնֆերանսի կամ համագումարի պատգամավորների ընտրությունների հետ միաժամանակ նրանք կարող են առաջարկություններ մտցնել վերադաս կուսակցական մարմնի կազմի թեկնածությունների վերաբերյալ: Ինչպես ցույց տվեց դիսկուսիան, մեծամասնությունը վճռականորեն պաշտպանել է այն առաջարկությունը, որ կոմունիստները իրավունք ունեն բոլոր կուսակցական կոմիտեների, ընդհուպ մինչև ՍՄԿԿ Կենտկոմի ընտրությունների ժամանակ ավելի շատ թեկնածուներ առաջադրել, քան մանդատներն են, և ընդամին առաջնորդվել ոչ թե նրանով, թե ինչ պաշտոն է զբաղեցնում մարդը, այլ վերակառուցման մեջ նրա ունեցած դիրքորոշմամբ: **(Ծափահարություններ):**

Եթե մեզ մոտ նման կարգ գործեր, ապա չէին ծագի այն հարցերը, որոնք մի շարք դեպքերում տեղ գտան նաև մեր կոնֆերանսի պատգամավորների ընտրությունների ժամանակ:

Համընդհանուր ուշադրության է արժանացել բոլոր կուսակցական կոմիտեների համար լիազորությունների միասնական հնգամյա ժամկետ սահմանելու, ՍՄԿԿ-ում ընտրովի պաշտոններ զբաղեցնելն անընդմեջ երկու ժամկետով սահմանափակելու, երրորդ ժամկետով ընտրվելը միայն բացառիկ դեպքերում թույլ տալու առաջարկությունը: Դրա նկատմամբ հետաքրքրությունը պատահական չէ, դրանում դրսևորվեց թե՛ կոմունիստների, թե՛ անկուսակցականների անհանգստությունը անցյալում թույլ տրված խախտումների առնչությամբ, որոնք կապված էին տևականորեն ղեկավար պաշտոններ զբաղեցնելու հետ: Սկզբունքորեն ինչպես մենք ենք հասկանում, այստեղ դրսևորվել է երեք տեսակետ: Որոշ ընկերներ պաշտպանում են թեզիսների բովանդակած առաջարկությունը: Ուրիշները կողմնակից են այն բանին, որ կուսակցության բոլոր օղակներում ընտրովի պաշտոններում գտնվելը սահմանափակվի անընդմեջ երկու ժամկետով: Եվ վերջապես մյուսներն արտահայտվում են այն բանի օգտին, որ երրորդ ժամկետով անընդմեջ ընտրելու բացառություն թույլ տրվի միայն բարձրագույն էշելոնի համար: Դե ինչ, ընկերներ, եկեք մեկ անգամ ևս խորհրդակցենք և որոշում ընդունենք:

## 2. ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԻ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՈՒՄԸ

Կուսակցության՝ որպես քաղաքական ավանգարդի, դերի իմաստավորման համար ներկայիս պայմաններում հսայական նշանակություն ունի կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաների հստակ սահմանազատման հարցի ճիշտ լուծումը:

Այդ առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի դիրքորոշումները շարադրված են թեզիսներում և հարուցել էին ամենաշահագրգիռ քննարկում: Եվ, դա հասկանալի է: Այդ հարցի լուծումից են կախված ըստ էության, թե՛ մեր քաղաքական սիստեմի վերակառուցումը, թե՛ ամբողջությամբ վերցված վերակառուցման հաջողությունը:

Ես ինչու՞ եմ այդ մասին ասում այսքան որոշակիորեն: Մեր հասարակությունը գտնվում է շատ պատասխանատու փուլում: Թևակոխելով խոր վերափոխումների պրոցես, նա, ավելի քան երբևէ, քաղաքական ու գաղափարախոսական հուսալի կողմնորոշիչների կարիք ունի: Նման կողմնորոշիչների, հասարակական զարգացման ստրատեգիայի մշակումն ու քաղաքականության մեջ դրա մարմնավորումը ի զորու է իրականացնել միայն ուժեղ կուսակցությունը, որն ունի տեսական ու կադրային հսկայա-

կան պոտենցիալ, սերտորեն կապված է ժողովրդի հետ, իր փորձը մշտապես ստուգում և հարստացնում է ժողովրդական զանգվածների փորձով:

Վ. Ի. Լենինը բազմիցս մատնանշել է այն պատկերացումների վնասակարությունը, թե կառավարող կուսակցությունը կարող է անմիջականորեն ղեկավարել, անտեսելով կամ փոխարինելով աշխատավորության մյուս կազմակերպություններին, պահանջել է «սահմանագծել կուսակցության (ու նրա Կենտկոմի) և սովետական իշխանության ֆունկցիաները», խստիվ քննադատում էր յուրաքանչյուր կոնկրետ պրոբլեմի լուծման համար պատասխանատվությունը կուսակցության վրա բարդելու փորձերը, դատապարտում էր այն պրակտիկան, երբ «կոնկրետ մանր գործն արդեն քաղբյուրո են քարշ տալիս»:

Պետք է ասել, որ կուսակցության և պետության միջև ֆունկցիաների բաշխման հարցը մեկ անգամ չէ, որ դրվել է մեր հասարակության պատմության տարբեր փուլերում, ընդ որում ընդունվել են գոյություն ունեցող վիճակի աննորմալությունն ու այն փոխելու անհրաժեշտությունը, վկայակոչելով լենինյան սկզբունքը:

Մինչդեռ խնդիրը ոչ միայն չէր փոխվում դեպի լավը, այլև տարիներով ավելի ու ավելի էր վատթարանում: Տնտեսական զարգացման պրոբլեմների բարդանալու համեմատ կուսակցությունը ներքաշվում էր կառավարչական ամենաբազմազան խնդիրների լուծման մեջ, համապատասխանաբար աճում էր նաև նրա ապարատը: Վարչահրամայական սիստեմի տրամաբանությունը թելադրում էր պահպանել ու ամրապնդել նման պրակտիկան: Ավելին, ոմանք, վկայակոչելով մեր պատմության առանձին փուլերի փորձը, ապացուցում էին, թե իբր դա մեր զարգացման այս կամ այն պրոբլեմի լուծման առավել արդյունավետ ուղին է: Հենց դրա հետ էր առաջին հերթին կապվում կուսակցության ղեկավար դերն աճելու մասին թեզիսը:

Կարծում եմ, դուք կհամաձայնեք, ընկերներ, որ ֆունկցիաների սահմանազատման պրոբլեմը մենք պետք է լուծենք՝ սկսելով երկրի ղեկավարման բարձրագույն էշելոններից: Ես արդեն ասացի պետական իշխանության և կառավարման բարձրագույն մարմինների դերի բարձրացման մասին: Իսկ սրանից ի՞նչ է բխում կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի և Կենտկոմի քաղբյուրոյի համար: Նախ և առաջ դա ենթադրում է, որ Կենտրոնական կոմիտեն և քաղբյուրոն պետք է հանդես գան և գործեն որպես քաղաքական ղեկավարման մարմիններ: Եվ, իհարկե, պետք է վճռականորեն իշխանության ու կառավարման բարձրագույն մարմիններին չփոխարինելու կուրս վերցնել: Այն ամենը, ինչ պետք է անեն ՍՍՀՄ Գերագույն սովետը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, պետք է անեն հենց նրանք:

Հարց է ծագում. Կենտրոնական կոմիտեն, նրա քաղբյուրոն ի՞նչ մեխանիզմ, ի՞նչ հնարավորություններ պետք է օգտագործեն կուսակցության մշակած քաղաքական գիծը, համագումարների և Կենտկոմի պլենումների որոշումները սովետական իշխանության մարմինների միջոցով իրագործելու համար: Այստեղ պետք է լիովին իրագործել լենինյան սկզբունքը. իր քաղաքական կուրսը ՍՄԿԿ-ն իրագործում է պետական իշխանության մարմինների, հասարակության կյանքի բոլոր ոլորտներում աշխատող կոմունիստների միջոցով: Կուսակցական բոլոր կազմակերպությունները պետք է գործեն խստիվ ՍՍՀՄ Սահմանադրության և սովետական օրենքների շրջանակներում: Պետք է բացառել կուսակցական կոմիտեների կողմից այնպիսի որոշումների ընդունումը, որոնք պետական, տնտեսական մարմիններին և հասարակական կազմակերպություններին հասցեագրված անմիջական ցուցումներ են պարունակում:

Ընտրովի կոլեգիաների դերի բարձրացման, կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաների սահմանազատման կապակցությամբ գործնական ասպարեզ առաջ քաշվեց կուսակցական ապարատի կառուցվածքում և կազմում փոփոխություններ կատարելու հարցը: Մենք ստիպված կլինենք հրաժարվել ըստ կառավարման ճյուղերի ՍՄԿԿ Կենտկոմի ապարատի ներկայիս տրոհումից, և ստորադաս կուսակցական մարմինների ապարատի համապատասխան տրոհումից, վերակառուցել դրա կառուցվածքը՝ արդի պայմաններում կուսակցության ֆունկցիաներին համապատասխան, և նվազեցնել թվակազմը:

Կցանկանայի առանձնապես խոսել կուսակցության շրջանային ու քաղաքային օղակների մասին: Դրանց դերը միշտ եղել է ու կմնա խիստ կարևոր:

Հաշվի առնելով նոր պահանջները, պետք է ուշադիր վերաբերվել դրանց ապարատի կազմավորմանը, որպեսզի այն ավելի լավ օգնի կուսակցական կոմիտեներին կատարելու իրենց անմիջական քաղաքական, կազմակերպչական ու դաստիարակչական ֆունկցիաները: Շրջկոմներն ու քաղկոմները պետք է ելնեն հիմնականից՝ ամբողջ



աշխատանքում մշտապես հենվեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների վրա, իսկ դրա համար պետք է վճռականորեն փոխեն իրենց գործունեության ոճն ու մեթոդները:

Ըստ երևույթին, հաշվի առնելով կոնֆերանսում կայանալիք քննարկումն ու այդ հարցերում մեր ընդհանուր դիրքորոշման ձևավորումը, կարելի էր արդեն մոտ ժամանակներս ձեռնամուխ լինել կուսակցական ապարատի նոր կառուցվածքի ստեղծմանը:

Ընկերնե՛ր, այս բոլոր առաջարկությունների նպատակն է հետևողականորեն կիրառել ներկուսակցական կյանքի դեմոկրատական սկզբունքները, բարձրացնել կուսակցության մարտունակությունը, սովետական հասարակության հեղափոխական նորացման պրոցեսները գլխավորելու, վերակառուցմանը տոն տալու նրա ընդունակությունը:

Ընդհանուր առմամբ խոսքն այն մասին է, որ ինքնավերահսկման, իր գործողությունների քննադատական վերլուծման կուսակցության ընդունակությունը կախված է նախ և առաջ այն բանից, թե նրա գործունեության մեջ որչափ լիովին են մարմնավորված դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, կոլեկտիվայնությունը, աշխատանքի կոլեգիալությունը, հրապարակայնությունը:

Եվ մի բան էլ, ընկերներ: Մենք հույս ունենք, որ այդ կերպ մենք վճռական պարտության կմատնենք բյուրոկրատիզմին՝ մի հիվանդություն, որը, ի մեծ ցավ մեզ, ընդգրկել է նաև կուսակցական մարմինների կուսակցական կադրերի զգալի մասին, որն արտահայտվում է աշխատավորներից նրանց կտրվածությամբ, այն բանով, որ նրանք դադրում են ապրել ժողովրդի շահերով ու հոգսերով: Անշուշտ, չկա ու չի կարող լինել բոլոր պրոբլեմները միանգամից լուծելու միայն մի միջոց: Պետք է հաստատակամորեն և հետևողական ընթանալ ներկուսակցական կյանքի լենինյան սկզբունքները վերածնելու ուղիով:

Նույն այս կապակցությամբ կցանկանայինք ասել նաև կուսակցության մեջ կատարվող վերահսկիչ-վերստուգիչ աշխատանքի մասին: Ինչպես ցույց է տալիս դիսկուսիան, ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսների բովանդակած այն առաջարկությունը, որ ստեղծվի այնպիսի միասնական վերահսկիչ-վերստուգիչ մարմին, որն ընտրվեր կուսակցության համագումարի կողմից և վերահսկեր կոմունիստների կողմից կուսակցական կարգապահության, ՍՄԿԿ Կանոնադրության պահանջների կատարումը, կուսակցական կազմակերպությունների ֆինանսական ու տնտեսական գործունեությունը, պաշտպանվում է:

## 3. ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԻՋՈՑՈՎ ԴԵՊԻ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՆՈՐ ՆԿԱՐԱԳԻՐ

Ընկերնե՛ր, Կենտկոմի փետրվարյան պլենումը առաջադրեց մեր գաղափարախոսությունը արմատական տնտեսական ռեֆորմի և կուսակցական ու հասարակական կյանքի դեմոկրատացման հետ մեկտեղ նորացնելու խնդիրը: Դրանով ընդգծվեց, թե կուսակցությունը գաղափարախոսական աշխատանքին ինչպիսի ակտիվ դեր է հատկացնում վերակառուցման նպատակներին հասնելու համար:

Ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներից կատարված շեղումները գաղափարախոսության բնագավառում ծանր հետք էին թողել: Իջել էր նրա տեսական մակարդակը, պրոպագանդան հաճախ հակասում էր կյանքի իրողություններին: Գաղափարախոսական աշխատանքն ըստ էության ի սպաս էր դրված սոցիալիզմի վերաբերյալ դոգմատիկ պատկերացումներին, կորցրել էր քննադատական վերաբերմունքը իրականության նկատմամբ և դրանով իսկ նպաստում էր լճացման երևույթներին: Շրջանցելով կեցության կենսահույզ պրոբլեմները, պրոպագանդան արտահայտվում էր ճոռոմաբանական դատարկախոսության ու փառաբանության տեսքով, ձեռք էր բերել զուտ ծիսական նշանակություն: Ինտելեկտուալ նախաձեռնության կորուստը, դոգմատիզմը, խոսքի ու գործի խզումը հանգեցրել էին կուսակցության գաղափարական ազդեցության թուլացման:

Անցած երեք տարիները նշանավորվեցին հասարակական գիտակցության լարված աշխատանքով: Ազնիվ, քննադատական խոսակցություն էր տեղի ունենում մեր կյանքի բոլոր բնագավառներում տիրող իրավիճակի մասին: Շատ երկար տարիների, նույնիսկ տասնամյակների ընթացքում թերևս առաջին անգամ ինքներս մեզ նայե-

ցինք ոչ միայն անկեղծորեն ու անկանխակալորեն, այլև մեր զարգացման բոլոր կողմերի փոխադարձ կապի մեջ:

Կրկին հարցի է իսկության, ճշմարտության որոնումը և ոչ թե շահը, նորից գնահատանքի է արժանանում անաչառ հետազոտությունների համարձակությունը և ոչ թե կոնյունկտուրային համատարած երևույթները: Բոլորի համար ապագայի վերաբերյալ ուսանելի հետևություն է, առանց կյանքի ճշմարտության, առանց գիտական ճշմարտությունների և գեղարվեստական հայտնագործությունների չկա և չի կարող լինել լիարժեք, բազմակերպ հոգևոր կյանք, չկա և չի կարող լինել իրոք ներգործուն, մարտական գաղափարախոսական աշխատանք:

Կուսակցությունը վստահ է նման մոտեցման իրավացիությանը, հրապարակայնության, դեմոկրատիայի զարգացման, կարծիքների սոցիալիստական պլյուրալիզմի զարգացման իր հեղափոխական նախաձեռնության ճշտությանը: Սակայն միամտություն կլինի կարծել, թե իբր բարոյական մաքրումից, հիմնավոր քննադատությունից, վատթար անցյալի հետ կապերի խզումից ինքնաբերաբար իսկույն ևեթ կծնվի ամեն ինչով նորացած հասարակություն:

Ո՛չ, գիտակցության ու պրակտիկայի դիալեկտիկան անչափ ավելի բարդ է: Գաղափարախոսական գործունեության արդյունավետությունը վճռական չափով կախված է քաղաքական, կազմակերպական, սոցիալ-տնտեսական կոնկրետ պայմաններից:

Այսօր մեզ հաջողվել է արթնացնել հասարակական գիտակցությունը, հաղթահարել հուլության և օտարացածության վիճակը: Եվ այժմ հարցը ծառացած է այսպես. դեպի ու՞ր է ընթանալու այս արթնացած գիտակցությունը, ի՞նչ ուղղությամբ է զարգանալու հասարակական կարծիքը:

Կամ նա կծառայի վերակառուցման գործին, կընթանա կոնստրուկտիվ, ստեղծարար ջանքերի մեծացման ուղիով, աշխատանքի ու պատասխանատվության ուղիով, սոցիալիստական հասարակության իսկական նորացման ուղիով:

Կամ էլ կերերա նոր խնդիրների բարդության ու անսովորության առջև, տեղի կտա կրքերին ու հույզերին, կհրապուրվի արտաքուստ աչքի զարնող նախաձեռնություններով, այս կամ այն կարգի կամպանիականությամբ:

Կամ էլ կյանքի կարոտը կքաշի և կրկին կընկնի նիրհի մեջ, ինչը հիանալիորեն ձեռնտու կլիներ բոլոր նրանց, ում դուր են գալիս լճացման ժամանակները:

Պարզ է, որ առաջադիմության ուղին կարող է լինել միայն մեկը: Դա վերակառուցման ուղին է, նորացման ուղին: Կուսակցությունը բոլոր հնարավորությունները կօգտագործի, որպեսզի հասարակական գիտակցությունը ձևավորվի դեմոկրատացման ու հրապարակայնության զարգացման հիման վրա և նպատակամղված լինի ստեղծարար աշխատանքին: **(Ծափահարություններ)**:

Նորացման գործը կարիք ունի երաշխիքների, կարիք ունի պաշտպանության: Այդպիսի երաշխիքներ հարկավոր է ստեղծել, ամրապնդել ինչպես արմատական տնտեսական ռեֆորմի, քաղաքական սիստեմի ռեֆորմի հետևողական անցկացման մեջ, այնպես էլ հասարակական գիտակցության, հոգևոր, գաղափարախոսական կյանքի ոլորտում:

Անվիճելի է, որ վերջին տարիներս հուսահատեցնող և նույնիսկ ողբերգական քիչ բան չի ավել, ինչը կարող է դառնություն, մորմոք, սրտնեղություն և անհամաձայնություն հարուցել: Դա չիմանալը, դրան տեղյակ չլինելը, իհարկե, ավելի հանգիստ է: Բայց նման մոտեցումից չեն կարող ծնվել մարդու հեղափոխական գիտակցություն, քաղաքացիական դիրքորոշում, արիություն և բարձր պատասխանատվություն, որոնք այնքան անհրաժեշտ են վերակառուցման հաջողության համար: Հենց այս պատճառով կուսակցությունը համարձակորեն դիմեց անցյալի քննադատական վերանայմանը, պատմական ճշմարտության վերականգնմանը, նրանց ռեաբիլիտացմանը, ովքեր դարձել են անարդար քաղաքական մեղադրանքների և ապօրինությունների զոհ: Այդ աշխատանքը պետք է շարունակել:

Չպետք է լինեն այնպիսի հարցեր, որոնց պատասխաններից հարկավոր է խույս տալ, չպետք է լինեն այնպիսի կասկածներ, որոնք կարելի է անուշադիր թողնել: Խոսքը վերաբերում է մեր կուսակցական պատվին ու խղճին, Լենինի կուսակցության ինտելեկտուալ արժանապատվությանը:

Հեշտ ու հանգիստ չէ ճշմարտությանը հասնելը, բայց այն կուսակցությունը, որը գտնվում է գաղափարախոսական հարմարավետության պայմաններում, որը համարում է, թե ճշմարտությունը իր ձեռքին է և հարկ չկա դրան հասնել ամեն օր, այլ բավական է միայն հանել սեյֆից, նման կուսակցությունը վտանգում է կորցնել իր հոգևոր ու բարոյական հեղինակությունը, իր հեղափոխական բնույթը և հասարակության քաղաքական ավանգարդը լինելու ընդունակությունը:

Մեր հասարակական գիտակցությանը, սովետական մարդուն ներհատուկ են հիանալի շատ հատկանիշներ: Դա այդպես է: Եվ, այնուամենայնիվ, մենք դնում ենք նպատակամետ կերպով նախաձեռնություն, ինքնուրույնություն, նորի նկատմամբ սուր հետաքրքրություն, դրա պահանջմունք դաստիարակելու անհրաժեշտության հարցը: Առանց դրա անկարելի է գրավել վերակառուցման նոր բնագծեր: Այդ հատկանիշները կարելի է դաստիարակել հասարակության կյանքի դեմոկրատական ձևերին ապավինելով միայն:

Վերակառուցումը կյանքի առաջավոր եզր դուրս բերեց հրապարակայնությունը, որն իրագործվում է ամենատարբեր ձևերով՝ պետական ու հասարակական կազմակերպությունների աշխատանքում, ժողովներում, միտինգներում, գիտական ու ստեղծագործական կոնֆերանսներում, քաղաքացիների հավաքներում: Այսօր որպես հասարակական կարծիքի հզոր ամբիոն են հանդես գալիս մասսայական ինֆորմացիայի միջոցները: Նրանք քիչ բան չեն արել պատմական ճշմարտությունը և արդարությունը վերականգնելու, թերություններն ու վրիպումները քննադատելու, վերակառուցման փորձը տարածելու, մարդկանց մեջ նորովի, ստեղծագործաբար, նպատակամետ կերպով մտածելու և գործելու կարողություն մշակելու համար:

Բայց հիմա հարկավոր է ավելի առաջ գնալ: Մեզ հարկավոր են կուսակցական մամուլի նոր որակ, նրա քաղաքականապես լուսավորող և կազմակերպող դերի նոր որակ: Այժմ մեր մամուլը, չիջեցնելով այն ամենի քննադատության մակարդակը, ինչը խանգարում է վերակառուցման ուղիով ընթանալուն, պետք է գնա դեպի պրոցեսների խորքը, վերլուծի նոր հասարակության ձևավորման բարդ դիալեկտիկան, հակասականությունը նրա կյանքի բոլոր ոլորտներում:

Իսկ դրա համար հարկավոր են, թե՛ մեծ գիտելիքներ, թե՛ մեծ լավատեղյակություն և թե՛ մեծ կոնստրուկտիվություն ու պատասխանատվություն: Այս խնդիրը մամուլը կարող է լուծել հասարակության լայն շրջաններին ներգրավելով միայն, վահանի վրա բարձրացնելով վերակառուցման իսկական աշխղեկների փորձը:

Այսօր այլևս պետք չէ համոզել, որ առանց հրապարակայնության չկա նորացում, առանց դրա մենք չէինք կարողանա այսքան կարճ ժամկետում կատարել բացասական երևույթների պատճառների, դրանց հաղթահարման ուղիների վերլուծության հսկայական աշխատանքը, չէինք կարողանա հասարակության մեջ ստեղծել բարոյաքաղաքական նոր մթնոլորտ, առաջին պլան մղել վերակառուցման գաղափարները:

Հրապարակայնությունը ենթադրում է կարծիքների պլյուրալիզմ ներքին ու միջազգային քաղաքականության ցանկացած հարցերի առթիվ, տարբեր տեսակետների ազատ համադրում, դիսկուսիաներ: Եվ միայն նման մոտեցման դեպքում հրապարակայնությունը կարող է կատարել իր հասարակական դերը, ծառայել ժողովրդի, սոցիալիզմի շահերին:

Սակայն հրապարակայնությունը, ինչպես և դեմոկրատիայի ցանկացած դրսևորում, ենթադրում է բարձր պատասխանատվություն: Հրապարակայնությունը անհամատեղելի է հայացքների մենաշնորհի հավակնության հետ, որոշ դոգմաներ այն դոգմաների փոխարեն պարտադրելու հետ, որոնցից մենք հրաժարվում ենք, խմբակային շահերին ծառայելու և մանավանդ փաստերը խեղաթյուրելու և անձնական հաշիվներ մաքրելու հետ: **(Ծափահարություններ)**: Խիստ հակադեմոկրատական է քննադատության ենթարկված մարդկանց զրկել դրան ըստ էության պատասխանելու հնարավորությունից: Էլ դա ինչ հրապարակայնություն է և առհասարակ անընդունելի է, երբ դիսկուսիաները, ժողովները, մամուլի էջերը, հեռուստատեսության էկրանները օգտագործվում են փոխադարձ հայհոյանքի, վիրավորանքների, պիտակներ փակցնելու համար: **(Ծափահարություններ)**:

Միևնույն ժամանակ, ընկերներ, մինչև օրս էլ տեղ են գտնում և այս մասին հարկավոր է ուղղակի ասել կոնֆերանսում, քննադատությունը ճնշելու, անգամ դրա համար հաշվեհարդար տեսնելու փաստեր: Դրան մենք բախվում ենք, թե՛ կուսակցական կազմակերպություններում, թե՛ աշխատավորական կոլեկտիվներում և թե՛ հասարակական կազմակերպություններում, թե՛ կառավարման ապարատում և թե՛ մասսայական ինֆորմացիայի միջոցների առնչությամբ: Կոնկրետ թերությունները ի հայտ բերելու սովետական մարդկանց ակտիվությունն ու անզիջում վերաբերմունքը, քարացածության ու անպատասխանատվության դեմ, պաշտոնատար անձանց չարաշահումների դեմ նրանց ելույթները ոմանց մեջ հաճախ առաջ են բերում կատաղի վերաբեր-

մունք և համագործողություն: Եվ կրկին մենք տեսնում ենք, թե նրանք ինչպես են շշպում, անգամ հալածում նրանց, ովքեր ձայն են բարձրացնում ի պաշտպանություն ճշմարտության: Կուսակցական կազմակերպությունները և բոլոր մակարդակների կուսակցական կոմիտեները պետք է պաշտպան կանգնեն քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը, հանդես գան սկզբունքային դիրքերից:

Երբ մենք խոսում ենք, ընկերներ, մարդկային հարաբերություններում քաղաքական կուլտուրայի, բարեկրթության դաստիարակման մասին, ապա մասսայական ինֆորմացիայի մեր միջոցները այստեղ կարող են հսկայական դեր խաղալ, այդ թվում նաև իրենց օրինակով: Այս ամենը, ըստ երևույթին, պետք է նկատի ունենալ հրապարակայնության մասին կոնֆերանսի բանաձևը պատրաստելիս:

Վերակառուցման արդի փուլում կուսակցության քաղաքական գործունեության ևս մի գաղափարախոսական կողմի մասին: Այժմ՝ ճշմարտության և արդարության վերականգնման, այն ամենից հրաժարվելու պրոցեսում, ինչը ձևախախտում էր սոցիալիստական գաղափարախոսությունն ու պրակտիկան, դրոշմակերպերի ու դոգմաների խորտակման փուլում ոմանք պնդում են, թե դա իբր սոցիալիզմի սկզբունքների, նրա հիմքերի խարխլում է, նրա պատմության արատավորում: Սրա հետ չի կարելի համաձայնել, ընկերներ: Չի կարելի կտրականապես: **(Ծափահարություններ):**

Մենք իրավունք չունենք թույլ տալու, որ վերակառուցումը դեմ առնի դոգմատիզմի ու պահպանողականության քարին, սրա կամ նրա նախապաշարմունքի և անձնական պատվախնդրությանը: Խոսքը վերաբերում է երկրի բախտին, սոցիալիզմի բախտին: Եվ մենք պարտավոր ենք իրադրության սրությունը բացատրել նրանց, ովքեր այն դեռևս չեն գիտակցել: Բոլորիս համար այդ գլխավոր հարցում փոխզիջումներ չեն կարող լինել: **(Ծափահարություններ):**

Ուզում եմ ամենայն որոշակիությամբ այստեղ՝ կոնֆերանսում ասել, որ մենք այսուհետև էլ կզարգացնենք բոլոր իրոք սոցիալիստական արժեքները, վճռականորեն կվերացնենք այն, ինչը խեղաթյուրում էր հեղափոխական տեսությունը և սոցիալիզմի նկարագիրը:

Բուռն դիսկուսիաները և կրքերի մաքառումը ի հայտ բերեցին մի կարևոր հանգամանք, որը հաճելի է և ոգեշնչող: Այդ հանգամանքը մի նոր ուժով, այնքան փորձություններից, դրամատիկ իրավիճակներից և ողբերգական վայրիվերումներից հետո հաստատում է այն պատմական ընտրության ճշտությունը, որ մեր ժողովուրդը կատարել է 1917 թվականին՝ ընտրությունը հօգուտ սոցիալիզմի: **(Ծափահարություններ):**

Տեսեք. այժմ յուրաքանչյուր ոք կարող է ասել այն, ինչ ինքը մտածում է և ինչն ուզում է ասել: Եվ կարծիքների, դատողությունների, հույզերի այս բազմազանությունը հասարակական կյանքում արտահայտություն է գտնում աննախադեպ մասշտաբներով և ամենատարբեր ձևերով: Իսկ ի՞նչ է կատարվել: Առանց կեղծելու և գունազարդելու մենք կարող ենք ասել, որ այն դատողությունների ողջ սրությամբ ու քննադատությամբ հանդերձ, որ մենք լսել ենք այդ ժամանակամիջոցում, սովետական ժողովուրդը վերակառուցման ընթացքում մեկ անգամ ևս վճռականորեն և ուժգնորեն քվեարկեց սոցիալիզմի օգտին: **(Ծափահարություններ):**

Այո՛, մենք հրաժարվում ենք այն ամենից, ինչը ձևախախտեց սոցիալիզմը 30-ական թվականներին և ինչը հանգեցրեց նրա լճացմանը 70-ական թվականներին: Բայց մենք ուզում ենք այնպիսի սոցիալիզմ, որը մաքրված լինի անցյալ ժամանակաշրջանների շերտանստվածքներից ու խեղաթյուրումներից և դրա հետ մեկտեղ ժառանգի այն ողջ լավագույնը, ինչ ծնել է մեր ուսմունքի հիմնադիրների ստեղծագործ միտքը, ինչը կյանքում մարմնավորվել է ժողովրդի աշխատանքով ու ջանքերով, ինչը արտացոլում է նրա հույսերն ու իղձերը: Մենք ուզում ենք այնպիսի սոցիալիզմ, որը ներառում է համաշխարհային զարգացման ողջ առաջավոր փորձը, լիովին հենվում է մարդկային առաջադիմության նվաճումների վրա:

Իհարկե, ապագայի կոնկրետ դիմագիծը բոլոր մանրամասներով պատկերելու համար, ապագա, դեպի որը մենք ընթանում ենք վերակառուցման միջով, այսօր անհնար է: Սակայն նրա հիմնական պարամետրերը, գլխավոր գծերը, ինչը մենք անվանում ենք հասարակության որակապես նոր վիճակ, ուրվագծել կարելի է և հարկավոր է:

Կարելի է, որովհետև հասարակական վերափոխումների գլխավոր ուղղություններն ու միտումներն արդեն երևան են եկել: Հարկավոր է, որովհետև ի հայտ բերված թերությունների քննադատության, այն բանի ըմբռնման հետ միասին, ինչից մենք պարտավոր ենք հրաժարվել, նույնքան մեծ է նաև այնպիսի կոնստրուկտիվ դրական



կողմնորոշիչների պահանջը, որոնք սահմանեին պրակտիկան սոցիալիզմի վերջնական նպատակներին և իդեալներին մոտեցնելու ուղիներն ու միջոցները:

Սոցիալիզմը մենք տեսնում ենք որպես իսկական, իրական հումանիզմի հասարակարգ, երբ մարդը գործնականում հանդես է գալիս որպես «ամեն ինչի չափանիշ»:

Հասարակության ամբողջ զարգացումը սկսած էկոնոմիկայից և վերջացրած հոգևոր-գաղափարաբանական ոլորտով, նպատակամղված է մարդու պահանջմունքների բավարարմանը, նրա համակողմանի զարգացմանը: Ընդ որում այդ ամենն արվում է հենց մարդկանց աշխատանքով, ստեղծագործությամբ, եռանդով:

Սոցիալիզմը մենք տեսնում ենք որպես արդյունավետ և դինամիկ էկոնոմիկայի հասարակարգ, էկոնոմիկա, որը հենվում է գիտատեխնիկական առաջադիմության լավագույն նվաճումների վրա և ապահովում է աշխատանքի ամենաբարձր արտադրողականությունը, անմիջականորեն ենթարկված է հասարակության պահանջմունքների բավարարմանը, ճկունորեն հարմարվում է դրանց: Որպես այդպիսի էկոնոմիկայի հիմք առաջանում են հասարակական և անձնական սեփականության, արտադրության կազմակերպման բազմազան ձևեր, երբ աշխատավորները ռեալ կերպով հանդես են գալիս որպես արտադրության տերեր, ապահովվում է վաստակի ուղղակի նում է նրանից, որ կառուցվածքային հարցերը լուծելիս կենտրոնի դերը օրգանապես զուգակցվում է արտադրական միավորների՝ որպես տնտհաշվարկի ու ինքնուրույնության հիման վրա գործող և շուկայի համար աշխատող ապրանքարտադրողների լայն ինքնուրույնության հետ:

Սոցիալիզմը մենք տեսնում ենք որպես սոցիալական արդարության հասարակարգ, որը մարդու աշխատանքի, առողջության պահպանման, կրթության, բնակարանի, սոցիալական ապահովման կենսականորեն կարևոր պահանջմունքների սոցիալական երաշխիքները զուգակցվում է ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի հետևողական կիրառման հետ, հավասարականության և սոցիալական պորտաբուծության ամեն ձևերն արմատախիլ անելու հետ: Դա մի հասարակություն է, որտեղ ամենից բարձր են գնահատվում և նյութապես ու բարոյապես ըստ արժանվույն վարձատրվում մարդու ընդունակությունները, նրա արգասավոր աշխատանքը, վարպետությունն ու տաղանդը:

Սոցիալիզմը մենք տեսնում ենք որպես բարձր կուլտուրայի ու բարոյականության հասարակարգ: Նա ժառանգում և բազմապատկում է մարդկության հոգևոր զարգացման լավագույն նվաճումները, նրա բարոյական հարուստ փորձը: Դա աշխատավոր մարդու լիարյուն և նյութական ու հոգևոր առումով հագեցած կյանքի հասարակություն է, մարդ, որը մերժում է սպառողականությունը, հոգեզրկությունը և մշակութային պարզունակությունը: Բարձր կուլտուրա հասկացության մեջ ներառվում են հասարակության նաև էկոլոգիական կուլտուրան, հոգատար, բանական վերաբերմունքը բնական կենսապայմանների և մարդկանց արտադրական գործունեության նկատմամբ, բնական հարստությունների պահպանումն ու բազմապատկումը:

Սոցիալիզմը մենք տեսնում ենք որպես իսկական ժողովրդապետության հասարակարգ, երբ բոլոր աշխատավորների համար լիակատար հնարավորություն է ապահովվում արտահայտելու իրենց պահանջմունքներն ու շահերը, մասնակցելու հասարակական պրոցեսների կառավարմանը, հաղթահարվում է մարդու խորթացումը իշխանությունից: Դա ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման հասարակություն է, էկոնոմիկան, սոցիալական պրոցեսները կառավարելու ասպարեզում խոր և հետևողական դեմոկրատիզմի, օրինականության, բացախոսության և հրապարակայնության հասարակություն:

Սոցիալիզմը մենք տեսնում ենք որպես բոլոր ազգերի ու ազգությունների իսկական հավասարության, նրանց սոցիալական, հոգևոր ծաղկման ու փոխհարստացման հասարակարգ, որտեղ տեղ չունեն ազգամիջյան երկպառակության ցանկացած դրսևորում, նացիոնալիստական և շովինիստական նախապաշարումներ, որտեղ իշխում են ինտերնացիոնալիզմը և ժողովուրդների եղբայրությունը:

Վերջապես, սոցիալիզմը մենք տեսնում ենք որպես այնպիսի հասարակարգ, որի բնույթին ու շահերին օրգանապես ներհատուկ են ձգտումը խաղաղության նկատմամբ, եղբայրական սոցիալիստական երկրների հետ համագործակցության ու փոխգործողության ամրապնդման նկատմամբ, իրավահավասարության, միմյանց գործերին չմիջամտելու, իրենց բախտը անձամբ որոշելու, ժողովուրդների սուվերեն իրավունքի ճանաչման դեմոկրատական սկզբունքների հիման վրա բոլոր ժողովուրդների

ու պետությունների հետ նորմալ, քաղաքակիրթ հարաբերությունների հաստատման նկատմամբ:

Սոցիալիզմի հենց այդպիսի դեմոկրատական, մարդասիրական դիմագիծը ի նկատի ունենք՝ խոսելով մեր հասարակության որակապես նոր վիճակի մասին, որպես դեպի կոմունիզմ կատարվող շարժման կարևոր աստիճանի:

Գալիք տարիները կորոշեն մեր երկրի ապագան, սովետական կարգերի բախտը: Մեզ համար այդ ապագան կլինի այնպիսին, ինչպիսին մենք այն կկերտենք: Մենք ինքներս, ուրիշ և ոչ ոք մեր փոխարեն: Այսպես է դրված հարցը, և նրան մենք պետք է տանք ուղղակի պատասխան: Առանց թերացումների և կիսատ-պռատ խոսքերի: Առանց ցանկալին ու իրականը, խոսքերն ու գործերը, սուբյեկտիվ պատկերացումներն ու օբյեկտիվ իրողությունները ազնվորեն համադրելուց խուսափելու փորձերի:

Սովետական ժողովուրդը ուզում է պարզ հեռանկար: Լիարյուն և անվերապահ դեմոկրատիա: Օրինականություն՝ առանց բացառությունների: Հրապարակայնություն ամեն ինչում՝ մեծ թե փոքր գործերում: Եղբայրություն և ընկերականություն հարաբերություններում: Հարգանք աշխատասիրության ու տաղանդի նկատմամբ, գործին և հասարակական պարտքին ազնվորեն ծառայելու նկատմամբ: Մեզ հարկավոր են ոչ թե սոցիալական ուտոպիաներ, այլ հստակ կողմնորոշիչներ, սոցիալիստականության օբյեկտիվ չափանիշներ վերափոխումների բոլոր փուլերում, որպեսզի պարզորոշ երևան հասարակական զարգացման միտումները, որպեսզի չիշխեն, ինչպես որ բազմիցս եղել է անցյալում, առօրեականությունն ու ցուցամոլությունը:

Մենք համոզված ենք մարքս-լենինյան ուսմունքի կենսականությանը, որը գիտականորեն հիմնավորել է սոցիալական արդարության հասարակության կառուցման, ազատ ու իրավահավասար մարդկանց քաղաքակրթության հնարավորությունը: Մենք հենց դրանով ենք առաջնորդվում հեղափոխական վերակառուցման ընթացքում: Մենք այդպես էլ կգործենք վերակառուցման նոր, կարևորագույն փուլում, որ սկզբնավորում է մեր կուսկոնֆերանսը: **(Ծափահարություններ):**

Ընկերնե՛ր, վերջացնելով զեկուցումս, կցանկանայի ընդհանուր գծերով ասել այն դիսկուսիայի մասին, որ նախորդեց կոնֆերանսին և որն առանձնապես ակտիվացավ Կենտկոմի թեզիսների հրապարակումից հետո:

Մեզանում՝ կուսակցության, հասարակության մեջ վաղուց չէր եղել այդքան լայն, կրքոտ ու արգասավոր դիսկուսիա, աշխույժ մտքով, առաջարկությունների մեծ քանակով, կարծիքների երբեմն սուր բախումով: Դիսկուսիայի կենտրոնում ըստ էության գտնվում էին հասարակական ու ներկուսակցական կյանքի վերակառուցման, դեմոկրատացման գլխավոր հարցերը: Խոսքը վերաբերում է փաստորեն մեկ բանի՝ դա ինչպես ավելի լավ անել:

Կարելի է ուղղակի ասել, որ այն առաջարկությունները և գաղափարները, որոնցով Կենտրոնական կոմիտեն հանդես եկավ կոնֆերանսի առթիվ, ծնվել են կուսակցության, ամբողջ ժողովրդի կոլեկտիվ մտքի շնորհիվ:

Մեր նպատակներն են՝ ավելի շատ դեմոկրատիա, ավելի շատ սոցիալիզմ, աշխատավոր մարդու ավելի լավ կյանք, երկրի վեհություն և բարօրություն:

Մենք պետք է այս օրերին հանրագումարի բերենք հանուն այդ նպատակների կատարված աշխատանքի արդյունքները և ընդունենք հսկայական նշանակություն ունեցող փաստաթղթեր, որոնք պետք է նոր ազդակ հաղորդեն վերակառուցմանը, այն դարձնեն անշրջելի: Հենց դա էլ որոշում է կուսակցության ու սովետական ժողովրդի առջև յուրաքանչյուր պատգամավորի, մեր ամբողջ կոնֆերանսի պատասխանատվության չափը: **(Երկարատև ծափահարություններ):**

---

# ԸՆԿԵՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ՃԱՌԸ ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի փակման ժամանակ

Ընկերնե՛ր: Մեր կոնֆերանսն ավարտում է աշխատանքը: Դիսկուսիայի արդյունքների հիման վրա հենց նոր ընդունված փաստաթղթերը, այդ փաստաթղթերի բուն քննարկումը ազատում են ընդարձակ ամփոփում կատարելու անհրաժեշտությունից: Եվ այդուհանդերձ, կոնֆերանսն այնպիսի մասշտաբի իրադարձություն է, որ կարիք կա ամենախիստ չափանիշներով գնահատելու անցած չորս օրում մեր կատարած աշխատանքը:

Դա պետք է ոչ նրա համար, որ տուրք մատուցենք կուսակցության յուրաքանչյուր հերթական համաժողովի հասցեին գովեստի՝ առաջներում տարածված ավանդույթներին: Դա, ես կարծում եմ, հարկավոր է նրա համար, որ մենք ինքներս գիտակցենք XIX կուսակցական կոնֆերանսի տեղը կուսակցության ու երկրի կյանքում: Խոշոր իրադարձություն տեղի ունեցավ մեր կուսակցության պատմության մեջ: **(Ծափահարություններ):**

Ամենից առաջ կայացած դիսկուսիայի մթնոլորտի մասին: Դա իսկական անկեղծ կուսակցական խոսակցություն էր ամենագլխավորի մասին, որ այսօր մտահոգում է կոմունիստներին, բոլոր սովետական մարդկանց, փորձ էր պատասխաններ գտնելու նրանց հուզող հարցերին: Այսպիսի խոսակցություն, ընկերներ, Համագումարների պալատը դեռ չէր տեսել և, կարծում եմ, մենք ճշմարտության առջև մեղանչած չենք լինի, եթե ասենք, որ գրեթե վեց տասնամյակ մեզանում ոչ մի նման բան չէր եղել: **(Ծափահարություններ):** Այս իմաստով մենք իրավունք ունենք ասելու, որ կոնֆերանսն անցավ լենինյան ոգով: Նրանում հաղթանակեց ժողովրդի առջև, հեղափոխության առջև բարձր պատասխանատվությունը: **(Ծափահարություններ):** Եվ հենց միայն դա առանձնակի նշանակություն է տալիս նրան:

Չի կարելի չնշել պատգամավորների արտակարգ մեծ ակտիվությունը: Մենք, պետք է ասել, հեշտ իրավիճակում չէինք: Չէ որ մտքերի փոխանակությանը մասնակցելու համար միայն ցուցակագրվածների թիվը կազմում էր մոտ 300: Ցավոք, բոլորը չկարողացան ելույթ ունենալ, բայց արտահայտվելու պահանջմունքը ինչ-որ չափով բավարարություն գտավ խմբագրական հանձնաժողովների նիստերում: Ես ձեզ ասացի, որ այնտեղ արտահայտվել է մոտ 150 մարդ: Մեզ համար աշխատանքի այս նոր ձևը, որին ընդհանուր առմամբ մասնակցեց կոնֆերանսի պատգամավորների գրեթե մեկ տասներորդ մասը, հնարավորություն տվեց գործնականորեն քննարկել դիսկուսիայի ընթացքում ծագած կոնկրետ շատ հարցեր և գտնել դրանց լուծումները:

Կոնֆերանսում իշխում էր բարձր պահանջկոտության, սուր և սկզբունքային հարցադրումների և միևնույն ժամանակ կուսակցական ընկերականության, կարելի է անգամ ասել՝ միմյանց նկատմամբ բարյացակամության ոգին: Եվ սա նույնպես օրինակ է ամբողջ կուսակցության, մեր ամբողջ հասարակության համար, այսպես էլ պետք է լինի բանը համախոհների, այն մարդկանց միջև, որոնք ձեռնամուխ են եղել հասարակության վերակառուցման, նորացման մեծ գործին և իրենց թիկունքին զգում են կուսակցության գծով իրենց հարյուրավոր, հազարավոր, միլիոնավոր ընկերների, բոլոր սովետական մարդկանց, որոնք հսկայական հետաքրքրությամբ հետևում էին մեր աշխատանքի ընթացքին: Այս իմաստով կոնֆերանսը, ես կարծում եմ կարելի է այսպես ասել, արտացոլեց քաղաքական այն մթնոլորտը, որը հաստատվում է մեր երկրում, և ցույց տվեց դեմոկրատական զարգացման այն մակարդակը, որ ձեռք է բերել կուսակցությունը, ասենք, ոչ միայն կուսակցութունը, այլև ամբողջ սովետական

հասարակությունը Կենտրոնական կոմիտեի ապրիլյան պլենումից հետո անցած երեք տարում փոքր-ինչ ավելի ժամանակամիջոցում:

Հիմա մեր աշխատանքի բովանդակության մասին: Նրա գլխավոր արդյունքն այն է, որ բոլոր արմատական հարցերի առթիվ, որոնք ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսների հիման վրա համաժողովրդական քննարկման առարկա էին, իսկ այնուհետև դարձան այս դահլիճում ծավալված աշխույժ դիսկուսիայի թեման, մշակվել է ծրագրային քաղաքական դիրքորոշում: Ընդ որում, կոնֆերանսը ոչ թե պարզապես հավանություն տվեց Կենտրոնական կոմիտեի արած առաջարկություններին, այլև մեծապես հարստացրեց դրանք կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների փորձով: Ասեմ այսպես. մենք բոլորս հսկայական հետաքրքրությամբ ու լարված ուշադրությամբ լսեցինք այս ամբիոնից հանդես եկած բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության ներկայացուցիչներին, գիտնականներին ու մշակույթի գործիչներին, ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտների մասնագետներին, ձեռնարկությունների ղեկավարներին ու կուսակցական աշխատողներին:

Ըստ էության կոնֆերանսն ընդգրկեց ներկա փուլում կուսակցության և երկրի առջև կանգնած պրոբլեմների ամբողջ կոմպլեքսը: Բայց եթե առանձնացնենք ամենակարևորը դիսկուսիայում և մեր ընդունած որոշումներում, ապա ես կասեի հետևյալը: Կոնֆերանսի ուշադրության կենտրոնում էր կուսակցության դերի հարցը որպես քաղաքական ավանգարդի: Ի՞նչ կարելի է այստեղ նշել, եթե համառոտակի հանրագումարի բերենք պատգամավորների կարծիքը: Կա այն լիակատար համոզմունքը, որ կուսակցությունն ունի գործողությունների հստակ ծրագիր, որը մշակել է XXVII համագումարը և հարստացվել վերակառուցման արդեն եղած փորձով: Այն վայելում է ժողովրդի անվերապահ աջակցությունը, որն ընդունել է վերակառուցման քաղաքականությունը և թույլ չի տա, որ հետ գլորվի: Որքան ես հասկանում եմ, սրանում կոնֆերանսի պատգամավորները ոչ մի կասկած չունեն: **(Ծափահարություններ)**:

Այստեղ բուռն, պահանջկոտ ցանկություն հնչեց կուսակցությունը տեսնելու էլ ավելի զորեղ, և դա կարելի է միայն ողջունել, դրա համար, ես կարծում եմ, մենք բոլորս ուրախ ենք: Կոնֆերանսը, ինչպես գրված է նրա բանաձևում, պահանջեց, որ ոչ միայն բովանդակությամբ, այլև գործունեության մեթոդներով մեր կուսակցությունը լիովին լենինյան տիպի կուսակցություն լինի: Այլ խոսքով, նա պետք է անդառնալիորեն հրաժարվի հրամայական մեթոդներից և իր քաղաքականությունը վարի կազմակերպչական, կադրային, գաղափարախոսական աշխատանքի միջոցով՝ խստագույնս պահպանելով սովետական օրենքներն ու հասարակական կյանքի դեմոկրատական սկզբունքները:

Պետական մարմինների ոչ մի փոխարինում, արհմիությունների, կոմերիտմիության, մյուս հասարակական կազմակերպությունների, ստեղծագործական և այլ միությունների նկատմամբ ոչ մի թելադրանք: Սա նշանակու՞մ է, արդյոք, որ կուսակցության ղեկավար դերը կարող է թուլանալ: Այսպիսի կասկածներ արտահայտվել են: Իմ կարծիքով, կոնֆերանսը այդ հարցին տվեց բավական պարզ ու համոզիչ պատասխան՝ ոչ: Մնալով որպես կառավարող, կուսակցությունն ունի իր ղեկավար դերի իրականացման բոլոր անհրաժեշտ լծակները: Եվ դրանցից գլխավորը 20 միլիոն կոմունիստներն են, որոնց միջոցով կուսակցությունը իրականացնում է իր քաղաքական կուրսը հասարակության կյանքի բոլոր ոլորտներում:

Դեմոկրատացման, հրապարակայնության, կուսակցական կոմիտեների ֆունկցիաների փոփոխման պայմաններում կուսակցության հեղինակությունն, ընկերներ, լուրջ փորձության կենթարկվի: Այդ պրոցեսն արդեն ընթանում է: Անկեղծ լինենք. վարչահրամայական համակարգի պայմաններում, երբ կուսակցական ապարատը տնօրինում էր ամեն ինչ և ամենուրեք, հաճախ հեշտ չէր գլուխ հանել. որն է կուսակցական կոմիտեի և կուսակցական քարտուղարի՝ որպես լիդերի, իսկական հեղինակությունը և որն է լավագույն դեպքում «պաշտոնի հեղինակությունը», և նրան ենթարկվում են միայն անհրաժեշտաբար:

Կասկած չկա, ընկերներ, վերակառուցումը, քաղաքական սիստեմի ռեֆորմը սկզբունքորեն նոր իրավիճակ են ստեղծում: Կուսակցության ղեկավար դերը նոր պայմաններում ամբողջովին կորոշվի այն իրական հեղինակությամբ, որ հարկ կլինի ամեն անգամ նորից ապացուցել կոնկրետ գործերով: Ահա թե ինչու մեզ համար պարզապես կենսականորեն անհրաժեշտ է կուսակցության անդամների մեջ հաղթահարել անգամ նվազագույն պասիվությունը: Յուրաքանչյուր կոմունիստ պետք է դառնա վե-



րակառուցման, հասարակության հեղափոխական նորացման մարտիկ: Թող սա լինի մեր կոնֆերանսի ամենագլխավոր պատվիրանը: **(Ծափահարություններ)**:

Ընդհանուր առմամբ, ընկերներ, կոնֆերանսը խոշոր փուլ դարձավ Կենտկոմի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի լենինյան գծի զարգացման, վերակառուցման տեսության ու պրակտիկայի խորացման ճանապարհին: Սրանով են բնորոշվում նրա քաղաքական մասշտաբն ու կշիռը:

Այս կապակցությամբ ես կցանկանայի մի սկզբունքային նկատառում հայտնել: Մենք ընկունեցինք մի շարք խորապես մտածված, պատասխանատու որոշումներ: Բայց եթե ձգձգենք դրանց իրականացումը, իսկ դա մեր խրոնիկական հիվանդություններից մեկն է, որից մենք դեռ չենք ազատվել, այն դրսևորվեց նաև վերակառուցման առաջին տարիներին, ապա շատ բան կարող է ապարդյուն անցնել:

Այս մասին հարկավոր է շիտակ ասել: Եկենք ազատվենք հին հիվանդություններից և անմիջապես կպչենք գործնական աշխատանքի, չսպասելով ոչ մի լրացուցիչ ցուցման, շրջաբերականի, հրահանգի, պարզաբանման:

Պետք է անհրաժեշտ աշխատանք կազմակերպել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության շրջանակներում: Գործը վարել այնպես, որ կուսակցության մեջ արդեն առաջիկա հաշվետու-ընտրական կամպանիան անցնի այն սկզբունքների հիման վրա, որոնց շուրջը մենք այստեղ պայմանավորվեցինք: Աշնանը փոփոխություններ մտցնել ապարատի կառուցվածքում: Իսկ ինչ վերաբերում է սովետների վերակազմմանը, ապա դրա հետ կապված հարցերի ամբողջ կոմպլեքսը քննության առնել ՍՍՀՄ Գերագույն սովետի աշնանային նստաշրջանում: 1989 թվականի ապրիլին կարելի է անցկացնել ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների, իսկ գալիք տարվա աշնանը՝ միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների ընտրություններ:

Հաշվի առնելով այս պրոբլեմների հսկայական նշանակությունը, կոնֆերանսի նախագահությունը պատգամավորների քննարկմանն է ներկայացնում երկրի քաղաքական սիստեմի ռեֆորմի իրագործման մի քանի անհետաձգելի միջոցառումների մասին համառոտ բանաձևը:

Ահա այն, ինչ վերաբերում է կոնֆերանսի գործնական արդյունքներին: Յուրաքանչյուր պատգամավոր, վերադառնալով տուն, կարող է իր աշխատանքային ընկերներին, կոմունիստներին ու անկուսակցականներին, բոլոր քաղաքացիներին ասել, թե ինչպես պետք է մենք գործենք այսուհետև, կենսագործենք նրա որոշումները:

Այնուհետև: Մինչև կոնֆերանսի աշխատանքի վերջին րոպեն մեր ուշադրության կենտրոնում էր հասարակության դեմոկրատացման, քաղաքական սիստեմի արմատական ռեֆորմի հարցը: Նշելով նրա հիմնական ուղղություններն ու պարամետրերը, մենք, ես կարծում եմ, տվեցինք մեր առջև կանգնած գլխավոր հարցի պատասխանը. ինչպես ապահովել վերակառուցման խորացումն ու նրա անշրջելիության երաշխիքները: Այսպիսով, բոլոր հիմքերը կան ասելու, որ կոնֆերանսն իր գլխավոր խնդիրը կատարեց: **(Ծափահարություններ)**:

Իհարկե, առջևում ռեֆորմի կենսագործման կազմակերպական լարված աշխատանք կա անելու: Մենք պետք է այս ամենը հիմնավորապես քննարկենք թե կուսակցության, թե հասարակության մեջ: Բայց մենք հիմա գիտենք, թե հատկապես ինչպես պետք է վերափոխել քաղաքական սիստեմը, մշակել ենք ընդհանուր կարծիք և այն ձևակերպել ենք քաղաքական հիմնադրույթների ձևով:

Պակաս կարևոր նշանակություն չունի կոնֆերանսում ուժգնորեն հնչած վճռականությունը՝ շարունակելու և խորացնելու արմատական տնտեսական ռեֆորմը: Դրա համար նախադրյալներ ստեղծվեցին Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումի որոշումներով, օրենսդրական ակտերի ընդունմամբ, հատկապես այնպիսի ակտերի, ինչպիսիք են պետական ձեռնարկության (միավորման) մասին, կոոպերացիայի մասին օրենքները: Մեր ուշադրության կենտրոնում են եղել նոր սկզբունքներով ձեռնարկությունների մեծ զանգվածի աշխատանքի առաջին ամիսներին ձեռք բերված փորձը, ռեֆորմի ընթացքի հարցերը: Եվ դա ճիշտ է. բազիսում տեղի ունեցող ամեն ինչ հըսկայական նշանակություն ունի հասարակության համար, դա վերակառուցման հիմքըն է:

Եթե խոսելու լինենք այդ հարցերի շուրջ ծավալված դիսկուսիաների հանգուցային, հենակետային կողմերի մասին, ապա խոսքն առաջին հերթին վերաբերում է այն բանին, որ կոնֆերանսից հետո մենք պետք է հիմնավորապես զբաղվենք արգելակման մեխանիզմի ապամոնտաժման աշխատանքը մինչև վերջ հասցնելով: Փա-

տորեն բոլոր պատվիրակությունների ներկայացուցիչները ասում էին, թե առայժմ բյուրոկրատիզմը, ինչպես ասում են, ատամներ է ցույց տալիս, դիմադրում է, խանգարում առաջընթացին: Եվ դրա հետևանքով ռեֆորմը շատ ուղղություններում տեղապտույտ է տալիս: Դա երևի ամենակարևոր դիտարկումներից մեկն է, որ այստեղ բերել են պատգամավորները, և, ուրեմն, խոսքը տարածված երևույթի մասին է: Այստեղից, մենք թե Կենտկոմում, թե կառավարությունում, կենտրոնական ու տեղական կազմակերպություններում պետք է բոլոր ջանքերը գործադրենք եռանդագին առաջ շարժելու արմատական տնտեսական ռեֆորմի պրոցեսը:

Կարծում եմ, պատգամավորները միահամուռ կպաշտպանեն այն ընկերների կարծիքը, ովքեր խոսեցին ներկա փուլում հիմնական ջանքերը պարենային պրոբլեմի լուծման վրա կենտրոնացնելու, մեր գյուղացիությանը համակողմանի օգնելու ու գյուղատնտեսության վերելքը որպես առաջնահերթ խնդիր առաջադրելու անհրաժեշտության մասին: Այն, ինչ կարելի է անել դեռևս այս հնգամյակում, հարկավոր է անպայման անել: Մենք արդեն շատ բան ենք որոնել-գտել, տարբեր ուղիներով լրացուցիչ կապիտալ ներդրումներ ու ռեսուրսներ ենք հատկացրել այդ ոլորտին: Հարկավոր է, որ այս ամենը իսկապես իրացվի, գործի դրվի: Գյուղը ոտքի կանգնեցնելը պարզապես մեր սրբազան պարտականությունն է: Կարծում ենք, կոնֆերանսից հետո պետք է խստացնել պահանջկոտությունը, հսկողության տակ պահել ագրարային հատվածին, գյուղի աշխատավորներին օժանդակելուն նպատակամղված նրա դրույթների իրականացման ամբողջ պրոցեսը: Այն ժամանակ մենք կկարողանանք հասնել նաև պարենային պրոբլեմի շուտափույթ լուծմանը: **(Ծափահարություններ):**

Կոնֆերանսի մյուս առանձնահատկությունն, ինչպես ինձ թվում է, այն է, որ քաղաքականության ու էկոնոմիկայի ամենակենսական պրոբլեմները քննարկվեցին հոգևոր ոլորտի հետ սերտորեն շաղկապված, ասես իրենց բարոյական չափումն ստացան: Դրանում դրսևորվեց խոր ըմբռնումն այն բանի, որ հասարակական զարգացման ներկա փուլում, հասարակական բոլոր պրոցեսների վրա գիտատեխնիկական հեղափոխության հսկայական ազդեցության պայմաններում ոչ մի պրոբլեմ չի կարող իսկապես լուծվել առանց ժողովրդի մտավոր և բարոյական պոտենցիալի: Այստեղից էլ՝ գիտության, կրթության, մշակույթի պրոբլեմների, գրականության ու արվեստի բախտի քննարկման բարձր, ես կասեի, բարձրացած տոնուսը:

Չեմ հիշում և չգիտեմ կուսակցական այլ համաժողովներ, անգամ համագումարներ, որտեղ այսքան լայնորեն ներկայացված լինեին այդ ճակատը: Այս ամբիոնից հնչեցին այն միտումներն արտահայտող տարբեր տեսակետներ, որոնք փոխգործակցում են, իսկ երբեմն էլ բախվում հասարակական գիտակցության մեջ: Դա օրինաչափ է: Մենք հաստատում ենք կարծիքների պլյուրալիզմը, մերժում հոգևոր մենաշնորհը, բայց, կարծում եմ, դուք կհամաձայնեք, որ կոնֆերանսին ներկայացված բազմազան դատողություններում կա մի գլխավոր ընդհանրացնող միտք՝ հարկավոր է ամեն ինչում ելնել մարդուց, ելնել ժողովրդի շահերից, հաստատել սոցիալիզմի հումանիստական արժեքները: Այն ժամանակ կպահովվեն և հասարակության անաղարտ բարոյական մթնոլորտը և ստեղծագործական մտքի լարված աշխատանքը, և մշակույթի իսկական ծաղկումը:

Մեզ պետք է ոչ թե պայծառ ապագայի կույր հավատ, այլ գիտական կանխատեսություն, որը հենվի սոցիալիստական հասարակության, մարդու, նրա աշխատանքի ու ստեղծագործության մեջ ամփոփված անսպառ հնարավորությունների խոր և ճշգրիտ իմացության վրա: Հենց դրա համար էլ մենք խոսում ենք սոցիալիզմի նոր, մարդասիրական նկարագրի՝ որպես վերակառուցման նպատակի մասին: **(Ծափահարություններ):**

Կարելի է ասել, որ կոնֆերանսի հերոսներից մեկը հրապարակայնությունն էր: Նախ և առաջ այն պատճառով, որ հենց մեր դիսկուսիան հասարակության մեջ հաստատված բացախոսության, ազնվության, անկեղծության արդյունքն էր: Բայց նաև այն պատճառով, որ այստեղ քննարկվեց, թե հետագայում ինչպես պետք է վարվենք հրապարակայնության հարցում, որոնք են նրա հնարավոր և խելամիտ սահմանները: Ու թեև կարծիքները միանշանակ չէին, բայց, կարծում եմ, և այստեղ մենք վերջին հաշվով համամիտ էինք, որ անհրաժեշտ է ըստ ամենայնի պաշտպանել մասսայական ինֆորմացիայի միջոցներին, անցյալից մեզ մնացած ամեն տեսակ բացասական երևույթների մաքրման, վերացման նրանց աշխատանքը, համարձակ, ինքնատիպ, հետաքրքիր մարդկանց, վերակառուցման իսկական հերոսների խթանման նրանց աշխատանքը:



Մյուս կողմից էլ նույն հստակությամբ հնչեց տպագիր խոսքի համար պատասխանատվությունը բարձրացնելու, խմբային կամ գերատեսչական պատվամոլությունից ու կրքերից, ճշմարտությունը մենաշնորհ տնօրինելու հավակնություններից հրաժարվելու ժուռնալիստներին ուղղված պահանջը: Ժողովրդի հիշողության մեջ դեռ շատ են թարմ այն ժամանակները, երբ տպագիր խոսքը դառնում էր ավտորիտարության և բյուրոկրատական կամայականության հլու-հնազանդ գործիքը: Ահա թե ինչու այնքան կարևոր է այսօր՝ մեր կյանքի բոլոր կողմերի հումանիզացման ժամանակ, սովորել քննադատության կուլտուրա, ընկերական բանավեճի կուլտուրա: Կարծում եմ նաև այս առումով կոնֆերանսի աշխատանքը զուր չանցավ. մենք բոլորս սկսեցինք ավելի լավ հասկանալ, թե ինչպես պետք է վարել կուսակցական դիսկուսիան: **(Ծափահարություններ):**

Այս դիսկուսիայի առթիվ վերաբերմունքի շրջանակներում հնարավոր չեմ համարում շրջանցել Բորիս Նիկոլաևիչ Ելցինի ելույթը: Նախ, կարծում եմ, մենք ճիշտ վարվեցինք, խոսք տալով նրան: Ինչպես ես արդեն ասացի, հարկավոր է դեմոկրատիայի շրջանակներում դեն նետել գաղտնիության քողը նման հարցերի վրայից, թեև, ի դեպ, այստեղ գաղտնիք էլ չկա:

Ընկեր Ելցինի ելույթը այն առումով, որտեղ խոսքը վերաբերում է կոնֆերանսում քննարկվող կոնկրետ պրոբլեմներին, զգալի չափով զուգադիպում է թե զեկուցմանը, թե մտքերի փոխանակությանը: Այս իմաստով նրա առաջարկությունները միախառնվում են դիսկուսիաների ընդհանուր հոսքին: Մենք նաև նշում ենք, որ ընկ. Ելցինը, ինչպես և մյուսները, արտահայտվեցին վերակառուցումը շարունակելու, այն խորացնելու օգտին՝ ի շահ հասարակության, ժողովրդի:

Բայց ահա թե ինչին ես չեմ կարող համաձայնել. դա Բ. Ն. Ելցինի այն հայտարարությունն է, թե մենք վերակառուցման մասին հայտարարել ենք առանց ծագած լճացման պատճառների բավականաչափ վերլուծության, հասարակության մեջ տիրող արդի իրադրության վերլուծության, առանց պատմության, կուսակցության թույլ տված վրիպումների խոր վերլուծության, որ վերակառուցումը կրում է դեկլարատիվ բնույթ:

Կոնֆերանսի նախապատրաստության, կուսակցության և հասարակության մեջ, հենց կոնֆերանսում տեղի ունեցած դիսկուսիաների ընթացքում մենք սկզբունքային դիրքերից գնահատեցինք վերակառուցման թե նվաճումները, թե պրոբլեմները: Ամփոփեցինք պետական ու կուսակցական մարմինների, աշխատավորական կոլեկտիվների, ամբողջությամբ վերցրած երկրի գործունեության արդյունքները: Ես կասեմ այսպես. մենք ճիշտ ենք վարվել, ընկերներ, քանի որ մեզ բոլորիս անհանգստացնում է, թե ինչպես է ծավալվում վերակառուցումը: Այդ անհանգստությունը հնչեց նաև այստեղ, այն մեզ մոբիլիզացրեց, ամրապնդեց ռեֆորմների պրոցեսը էլ ավելի վճռականորեն առաջ տանելու մտադրությունը:

Կարծում եմ, իրավացի չէ և անընդունելի է ընկ. Ելցինի քննադատությունը նաև այն առթիվ, թե երեք տարում մենք հեղափոխական վերափոխումների չենք հասել: Իհարկե, եթե նկատի առնենք երկարատև հեռանկարի համար նախատեսված ընդհանուր մտահղացումը, այն, որ վերակառուցման միջոցով մեր հասարակությունը պետք է հասնի նոր որակի, ապա առայժմ դեռ անհնար է հեղափոխական վերափոխումների մասին խոսել: Մենք քիչ ժամանակ չենք ծախսել այն բանի վրա, որպեսզի հասկանանք այն հասարակությունը, որի մեջ մենք ապրում ենք, անցյալը, որտեղից գալիս են ներկա շատ երևույթների արմատները, շրջակա աշխարհն ու նրա հետ մեր փոխադարձ կապերը: Այս ամենը հարկավոր է իմաստավորել «հեղափոխական ցատկերով» չգործելու համար, որոնք չափազանց վտանգավոր են, քաղաքականության մեջ հանպատրաստից քայլեր թույլ չտալու համար: Մենք պետք է ներգրավեինք հասարակությունը, նրա մտավոր, գիտական պոտենցիալը, որպեսզի գլուխ հանեինք այդ ամենից և քննադատական լուրջ վերլուծության հիման վրա վերակառուցման քաղաքականություն մշակեինք, իսկ հետո գլխավոր ուղղություններում այն վերածեինք գործնական լուծումների: Դա հարկավոր էր անել: Այդպիսով, մենք առաջարկեցինք վերակառուցման քաղաքականությունը, և դրա այլ ընտրանքը չկա: **(Ծափահարություններ):** Դա ինքնըստինքյան կուսակցության մեծ նվաճումը եղավ անցած փուլում:

Մեր ժողովրդին մտահոգող գործնական խնդիրների լուծմամբ մենք նույնքան մտահոգված ենք, որքան ընկեր Ելցինը: Եվ ես կարծում եմ, որ այստեղ եղած ելույթները, հատկապես բանվոր դասակարգի ներկայացուցիչներինը, ցույց տվեցին, որ աշխատավորները այդ հարցերի շուտափույթ լուծման հույսն ունեն:

Չգիտեմ, ինչու ընկ. Ելցինը քննադատական վերաբերմունք արտահայտեց նաև

Կենտկոմի թեզիսների նկատմամբ, կասկածի տակ առավ դրանց հիմնավորվածությունն ու կշռադատվածությունը: Թե կուսակցության մեջ, թե երկրում և թե աշխարհում այդ փաստաթուղթը ընկալվել է որպես շատ լուրջ փաստաթուղթ: Անհասկանալի է նաև նրա այն պնդումը, թե թեզիսների նախապատրաստմանը իբր չեն մասնակցել Կենտկոմի անդամները: Ես անձամբ հանդիպում եմ ունեցել Կենտկոմի անդամների երկու երրորդի հետ, չխոսելով այն մասին, որ նրանք գրել են, հանդես եկել իրենց դիտողություններով: Վերջապես, եղել է պլենում, որտեղ քննարկվել է թեզիսների նախագիծը, ընկ. Ելցինը մասնակցել է դրա աշխատանքին, բայց ոչինչ չի ասել, ձայն չի խնդրել: Կենտկոմի անդամները այստեղ ներկա են, հիշում են, թե դա ինչպես է եղել:

Կարծում եմ, ընկերներ, այն բանի ամենահամոզիչ ապացույցը, որ վերակառուցումը երկրում ընթանում է, զորեղանում, մեր այսօրվա կոնֆերանսն է, դիսկուսիաների ամբողջ բնույթը, ընդունված փաստաթուղթը:

Փորձելով մարդկայնորեն պարզել այն ամենը, ինչ տեղի է ունենում Կենտկոմում և քաղբյուրոյում (չէ որ դա վերաբերում է նախ և առաջ գլխավոր քարտուղարին), ես չեմ կարող չանդրադառնալ հարցի պատմությանը: Երբ մենք ընկ. Ելցինին երաշխավորում էինք կուսակցության Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար, ելնում էինք այն բանից, որ մայրաքաղաքի կուսկազմակերպության աշխատանքը լուրջ բարելավման կարիք ունի և Մոսկվայի բուն իրադրությունը առողջացում է պահանջում: Հարկավոր էր փորձառու, եռանդուն, քննադատական մոտեցում ունեցող մարդ: Այդ հատկանիշները մենք նկատել էինք ընկ. Ելցինի մեջ, ինչն էլ հիմք ծառայեց նրան այդ պաշտոնում առաջադրելու համար: Եվ ձեր խոնարհ ծառան նույնպես մասնակցեց դրան: Սկզբնական շրջանում ընկ. Ելցինը ակտիվորեն ներգրավվեց աշխատանքի մեջ, շատ բան էր անում այն աշխուժացնելու համար, պայքար ծավալեց Մոսկվայում կուտակված բացասական երևույթների դեմ: Մենք պաշտպանում էինք նրա այդ ջանքերը, հասկանալով ,որ Մոսկվայի կուսակցական կազմակերպության առջև ծառացած են ոչ դյուրին խնդիրներ, բայց մի փուլում զգացինք, որ ինչ-որ վատ բան է կատարվում: Դա սկսվեց այն ժամանակ, երբ եկավ վերակառուցման պրոբլեմները գործնականորեն լուծելու, կյանքի բոլոր ոլորտներում այն փոխակերպելու ժամանակը, երբ արմատական փոփոխությունների համար պահանջվեց լարված և խորացված աշխատանք: Դրա համար ոչ ամբողջ քաղկոմը, ոչ էլ նրա առաջին քարտուղարը բավարար ուժ չունեցան: Եվ ընկ. Ելցինը կուսակցական կազմակերպության, մարդկանց, կոլեկտիվների վրա հենվելու փոխարեն սկսեց դիմել բղավոցների, հրամայական մեթոդների: Դրան հաջորդեց կադրերի անվերջ փոփոխումը:

Մենք սկզբում կարծում էինք, թե դա երևի արդարացված է, թե ընտրվել էին ոչ այն ընկերները, քաղաքում կայացած կոնֆերանսը չէր կարողացել ճիշտ լուծել կադրային հարցերը: Եվ հավանաբար այդպես էլ եղել էր: Բոլորը չէ, որ ընդունակ էին եղել լուծելու նոր խնդիրները, կուսակցական կազմակերպության ղեկավարությունն ստանձնելու քաղաքի և երկրի զարգացման այդ շրջադարձային փուլում: Բայց երբ նա սկսեց նույն օղակի կադրերին փոխել երկրորդ և երրորդ անգամ, դա արդեն մեզ մտահոգեց: Ընկ. Ելցինին ես դիտողություն արեցի քաղբյուրոյում: Ընկերաբար ասացի, որ Բորիս Նիկոլաևիչը պետք է իր համար հետևություն անի, հաշվի առնի աշխատանքում: Այլ կերպ ասած, դա օգնություն էր և դրանից ավելի ոչինչ:

Իմ կարծիքով, ընկ. Ելցինի, որպես քաղաքական աշխատողի, դրաման հետևյալն է: Այն փուլում, երբ հարկավոր էր գործնական հարցեր լուծել, նրա ուժերը չբավականացրին, և նա դիմեց փքուն ֆրազների, հայտարարությունների, վարչարարության: Բայց այդ ժամանակ էլ (այդ մասին պետք է բոլորն իմանան, մենք պետք է այս հարցը մինչև վերջ պարզենք) քաղբյուրոն չէր գտնում, թե ընկ. Ելցինը կորած մարդ է, չի կարող հետագայում աշխատել: Մենք շարունակում էինք նրան աջակցել, խոշոր որոշումներ ընդունվեցին Մոսկվայի վերաբերյալ, ինչի մասին ես արդեն ասել եմ կուսակցության Մոսկվայի քաղաքային կոմիտեի պլենումում:

1987 թվականի օգոստոսին, գտնվելով արձակուրդում, ես ստացա ընկ. Ելցինի անձնական նամակը, որտեղ նա հարց էր դնում կուսակցության քաղկոմի առաջին քարտուղարի պաշտոնից իրեն ազատելու մասին: Ես անհրաժեշտ համարեցի չշտապել, ուշադրությամբ պարզել այդ հարցը, քաղբյուրոյում նույնիսկ չգիտեին այդ նամակի գոյության մասին: Որոշեցի արձակուրդից հետո զրուցել Բորիս Նիկոլաևիչի հետ և նրան առաջարկեցի անցկացնել Հոկտեմբերի 70-ամյակին նվիրված միջոցառումները, իսկ այնուհետև հանդիպում ունենալ և զրուցել:



Նա համաձայնվեց դրան, բայց, պայմանավորվածությանը հակառակ, անսպասելիորեն ելույթ ունեցավ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում: Նրա ելույթի իմաստի մասին ես արդեն խոսել եմ, հրապարակվել է Մոսկվայի քաղկոմի պլենումում իմ ունեցած ելույթը, այն ժամանակ ես որևէ ուրիշ բան չեմ ասել: Ընկ. Ելցինը քննարկումից և ընկերների արած դիտողություններից հետո ընդունեց իր սխալները:

Մեջբերեմ պլենումի սղագրությունը՝ մի դրվագ նիստի վերջում, բոլորի ելույթներից հետո:

«**Գորբաչով.** Ասա, դու ինչպե՞ս ես վերաբերվում Կենտկոմի ընկերների դիտողություններին: Նրանք քո մասին շատ բան ասացին և պետք է իմանան, թե դու ինչ ես մտածում: Չէ որ նրանք են որոշում ընդունելու:

**Ելցին.** Բացի որոշ արտահայտություններից, ընդհանուր առմամբ ես գնահատականին համաձայն եմ: Այն, որ ես այսօր ելույթ ունենալով՝ դժվար կացության մեջ դրի Կենտրոնական կոմիտեին և Մոսկվայի քաղաքային կազմակերպությանը, սխալ էր:

**Գորբաչով.** Քո ուժերը կբավականացնե՞ն գործն այսուհետև առաջ տանելու համար:

**Զայներ.** Նա չի կարող: Չի կարելի թողնել նման պաշտոնում:

**Գորբաչով.** Սպասեցեք, սպասեցեք: Չէ որ ես հարցը նրան եմ տալիս: Եկեք դեմոկրատաբար մոտենանք գործին: Չէ որ մեզ բոլորիս պատասխան է պետք որոշում ընդունելուց առաջ:

**Ելցին.** Ես ասացի, որ դժվար վիճակի մեջ եմ դրել կուսակցության Կենտրոնական կոմիտեին, քաղբյուրոյին, Մոսկվայի կուսակցական կազմակերպությանը: Կրկնում եմ ասածս. «Խնդրում եմ ազատել թե քաղբյուրոյի անդամության թեկնածությունից և թե Մոսկվայի քաղաքային կուսակցական կազմակերպության ղեկավարումից»...

Սրանք են փաստերը: Այն բանից հետո, երբ ընկ. Ելցինի ելույթը քաղաքականապես սխալ ճանաչվեց (նա ինքն էլ դա խոստովանեց), ես այնուամենայնիվ խնդրեցի Կենտկոմի անդամներին. եկեք հիմա չլուծենք նրան քաղբյուրոյի անդամության թեկնածուի պարտականությունից ազատելու հարցը, քաղբյուրոյին հանձնարարենք քննարկելու այդ հարցը: Բայց իրավիճակն արդեն այնպիսի արձագանք հարուցեց, որ գործը անկարելի էր թողնել նման վիճակում: Մենք ամեն ինչի մասին պատմեցինք Մոսկվայի քաղկոմի պլենումում, և այնտեղ ընկերներն ընկ. Ելցինի աշխատանքի մասին անհամեմատ ավելի սրությամբ արտահայտվեցին. դուք այդ մասին գիտեք:

Մի խոսքով, ընկերներ, ես կարծում եմ, որ սա դաս է ոչ միայն ընկ. Ելցինի համար, սա դաս է թե քաղբյուրոյի և թե Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղարի համար, ամենքիս համար: Մենք պետք է հաստատակամորեն ընթանանք լենինյան սկզբունքներով մեր կուսակցությունը վճռականորեն վերածնելու ուղիով, լայն դեմոկրատացման հիման վրա, սկզբնական կուսկազմակերպությունների, կադրերի, ընտրովի ակտիվի վրա հենվելով: Մենք չենք կարող մեզ առաջադրած վերակառուցման մեծ խնդիրները լուծել՝ դիմելով նախկին մեթոդներին, որոնք դատապարտել են ոչ միայն կուսակցությունը, այլև ամբողջ հասարակությունը, բուն ժամանակը: **(Ծափահարություններ):**

Եվ դարձյալ մեկ դաս: Կոնֆերանսում ընկերները ճիշտ դիտողություն արեցին. հարկավոր էր տեղեկացնել, ամեն ինչ ասել, և այդ ժամանակ պրոցեսն այդպես չէր զարգանա, ինչպես տեղի ունեցավ: **(Ծափահարություններ):**

Մեկ անգամ ևս, ընկերներ, անդրադառնում եմ այն հարցին, որն այժմ պատգամավորներին ամենից շատ է մտահոգում. ես դա զգում եմ թե ելույթներից և թե գրություններից. ինչպե՞ս ապահովել մեր ընդունած որոշումների կատարումը: Եկեք կուսակցության ամբողջ կյանքը կառուցենք կոնֆերանսի բանաձևերին համապատասխան, չսպասելով մինչև որ համագումարը այդ ամենը մտցնի կանոնադրության մեջ: Կան կոնֆերանսի քաղաքական հիմնադրույթները, դրանցով էլ ղեկավարվենք: Սա առաջինը:

Եվ երկրորդը: Եկեք չհետաձգենք ամբողջությամբ վերցրած քաղաքական սիստեմի ռեֆորմը, այն անհրաժեշտ է վերակառուցման պրոցեսն առաջ տանելու համար: Այն արդեն այսօր հենվում է գոյություն ունեցող քաղաքական սիստեմի վրա: Չի կարելի թույլ տալ այն բանի կրկնություն, ինչ տեղի ունեցավ Կենտկոմի հունվարյան պլենումի հետ: Դա խոշոր պլենում էր, որտեղ կատարվեց խոր վերլուծություն, բացահայտվեցին երկրում և կուսակցության մեջ տեղի ունեցածի պատճառները: Բայց մենք չկշռադատեցինք պլենումի որոշումների կատարման մեխանիզմները,

և դրանք ասես կախված մնացին օդում, գործն առաջ չգնաց, ինչպես որ մենք հույս ունեինք: Ոչ մի դեպքում չի կարելի նման բախտի դատապարտել մեր կուսակցական կոնֆերանսի որոշումները:

Այստեղ առաջադրված շատ հարցեր չեն ընդգրկվել բանաձևերում: Ինձ թվում է, որ պետք է այդ բոլորը ընդհանրացնել, ներկայացնել պլենումի քննարկմանը, կոնկրետ հանձնարարություններ տալ և վերահսկողության տակ առնել կատարումը: Շատ գրություններում առաջարկություն էր արվում թողարկել սղագրական հաշվետվությունը: Մենք դա պետք է անպայման անենք, որպեսզի մեր կուսակցությանը, ամբողջ հասարակությանը զինենք այն մտքերով, որոնք կոնֆերանսում արտահայտվեցին դիսկուսիայի ընթացքում:

Եվ դարձյալ, ընկերներ, մեկ հարց, որը բարձրացվեց կոնֆերանսի նախօրեին և հենց նրա ընթացքում՝ ռեպրեսիաների զոհերի հուշարձան կառուցելու մասին: Դուք հավանաբար հիշում եք, որ այդ մասին խոսվեց կուսակցության XXII համագումարի եզրափակման խոսքում և այն ժամանակ հավանությամբ ընդունվեց: Այդ հարցը բարձրացվեց նաև կուսակցության XXVII համագումարում, բայց գործնական լուծում չստացավ: Ինչպես ասվեց զեկուցման մեջ, անօրինականության զոհերի հանդեպ արդարության վերահաստատումը մեր քաղաքական ու բարոյական պարտքն է: Եկեք այն կատարենք Մոսկվայում հուշարձան կառուցելով: Այդ քայլը, ես վստահ եմ, կարժանանա ամբողջ սովետական ժողովրդի պաշտպանությանը: **(Ծափահարություններ):**

Ավարտելով ելույթս, ես մեկ անգամ ևս անդրադառնում եմ կոնֆերանսին առաջադրված հարցին. ինչպես խորացնել և անշրջելի դարձնել հեղափոխական վերակառուցումը, որը երկրում ծավալվել է կուսակցության նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ: Մեր աշխատանքի ամբողջ ընթացքը, դիսկուսիայի նյութերը, դրա ամփոփիչ փաստաթղթերը համոզչւրեն վկայում են, որ կոնֆերանսը այս հարցին հըստակ պատասխան է տալիս. դեմոկրատացման, տնտեսական ռեֆորմի և քաղաքական սիստեմի վերափոխման միջոցով մենք վերակառուցումն անշրջելի կդարձնենք, հեղափոխական վերակառուցման միջոցով մենք կհասնենք մեր հասարակության որակական նոր վիճակի, սոցիալիզմի նոր, մարդասիրական և դեմոկրատական նկարագրի: Մենք էլ ավելի առաջ կընթանանք, այդ նպատակին հասնելու ուղիների ու մեթոդների ստեղծագործական որոնում կկատարենք դեմոկրատիայի և հրապարակայնության պայմաններում, համառորեն կաշխատենք մեր առջև դրված խնդիրների իրականացման նպատակով: **(Ծափահարություններ):**

Մ. Ս. Գորբաչովը ընթերցում է բանաձևի տեքստը, որն ընդունվում է միաձայն: Նա պատգամավորներին մաղթում է մեծագործություններ և հաջողություններ գործերում:

---

# ՍՄԿԿ XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԲԱՆԱՁԵՎԸ

## ԵՐԿՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՌԵՖՈՐՄԻ ԻՐԱԳՈՐԾՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԱՆՀԵՏԱՁԳԵԼԻ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսը լայնորեն քննարկեց և ընդունեց վերակառուցման խորացման, քաղաքական սիստեմի ռեֆորմի, կուսակցության ու հասարակության հետագա դեմոկրատացման վերաբերյալ խոշոր որոշումներ: Դրանք հսկայական պատմական նշանակություն ունեն երկրի բախտի համար, վերակառուցման անբաժանելի բաղկացուցիչ մասն են և միաժամանակ նրա հզոր արագացուցիչը, հասարակության առջև հնարավորություն են բացում վստահորեն ընթանալու հեղափոխական նորացման ուղիով, ամրապնդելու կուսակցության դերը որպես քաղաքական ավանգարդի:*

*Ընդունված որոշումների կենսագործումը անհետաձգելի բնույթ ունի, և կարևոր է, ելնելով գործի շահերից, անհապաղ ձեռնամուխ լինել դրանց իրականացմանը:*

*Կոնֆերանսը անհրաժեշտ է համարում.*

*1. Այս տարի հաշվետու-ընտրական կամպանիա անցկացնել կուսակցական կազմակերպություններում, առաջնորդվելով քաղաքական սիստեմի ռեֆորմի, կուսակցության կյանքի դեմոկրատացման մասին կոնֆերանսի որոշումներով:*

*Մինչև այս տարվա վերջը վերակազմել կուսակցական ապարատը, անհրաժեշտ փոփոխություններ մտցնել նրա կառուցվածքում՝ հաշվի առնելով կուսակցության ու սովետների միջև ֆունկցիաների բաժանման մասին ընդունված որոշումները:*

*Հանձնարարել ՍՄԿԿ Կենտկոմին այդ նպատակով կատարել անհրաժեշտ գործնական աշխատանք:*

*2. Կոնֆերանսն արտահայտվեց այն բանի օգտին, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի հերթական նստաշրջանի քննարկմանը դրվեն սովետական մարմինների վերակառուցման վերաբերյալ օրենսդրական ակտերի նախագծերը, ՍՍՀՄ սահմանադրության մեջ մտցվելիք անհրաժեշտ լրացումներն ու փոփոխությունները, ինչպես նաև 1989 թվականի ապրիլին կազմակերպվեն ժողովրդական դեպուտատների ընտրություններ և անցկացվի նրանց համագումարը, որտեղ պետք է կազմել պետական իշխանության նոր մարմիններ:*

*Հանրապետական և տեղական սովետների ընտրությունները և այդ հիման վրա հանրապետություններում, երկրամասերում, մարզերում, քաղաքներում, շրջաններում, ավաններում, գյուղական վայրերում, սովետական ղեկավար մարմինների կազմումը անցկացնել 1989 թվականի աշնանը:*

# ՍՄԿԿ XIX ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԲԱՆԱՁԵՎԵՐԸ

## ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԸՆԹԱՑՔԻ ԵՎ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԽՈՐԱՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*1. XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսը, քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը «ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների կատարման ընթացքի և վերակառուցման խորացման խնդիրների մասին», ինչպես նաև տասներկուերորդ հնգամյակի առաջին կեսի հիմնական արդյունքները, արձանագրում է. Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում և կուսակցության XXVII համագումարում կուսակցության մշակած՝ սովետական հասարակության համակողմանի ու հեղափոխական նորացման և հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ստրատեգիական կուրսը անշեղորեն կենսագործվում է: Կանգնեցված է երկրի սահքը դեպի տնտեսական ու սոցիալ-քաղաքական ճգնաժամ*

էությունն այն է, որ վերականգնվի սոցիալ-տնտեսական հավասարակշռությունը քաղաքի ու գյուղի միջև, փոխվեն արտադրական հարաբերությունները հենց գյուղատնտեսության մեջ։

Օգտագործելով տնտեսավարման նոր մեխանիզմի հնարավորությունները, անհրաժեշտ է արագացնել շուկայի հագեցումը բազմազան ապրանքներով ու սպասարկումներով, ամենուրեք ծավալել ժողովրդական սպառման ապրանքների թողարկումն ավելացնելու աշխատանքը։ Պահանջվում է արմատապես վերազինել թեթև արդյունաբերությունը և մասսայական պահանջարկ վայելող ապրանքներ թողարկող մյուս ճյուղերը։ Պետք է լայնորեն օգտագործվեն տեղական ռեսուրսները, կոոպերատիվ շարժման և անհատական աշխատանքային գործունեության հնարավորությունները։ Անհրաժեշտ է բարձրացնել տեղական սովետների, աշխատավորական կոլեկտիվների շահագրգռությունը ապրանքների արտադրության ավելացումով՝ ռեգիոնի բնակչության պահանջմունքների բավարարման համար։

Կոնֆերանսը հավանություն է տալիս բնակարանային շինարարության ծավալները կտրուկ մեծացնելու, տեմպերն արագացնելու և որակը բարելավելու միջոցառումներին, որոնց նպատակն է կատարել մինչև 2000 թվականը փաստորեն յուրաքանչյուր ընտանիքի առանձին բնակարանով կամ տնով ապահովելու ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրը։ Նշելով, որ պետական, կոոպերատիվ և անհատական բնակարանային շինարարության մասշտաբների ընդլայնումը, այս գործում աշխատավորական կոլեկտիվների, տեղական սովետների նախաձեռնությունը կասեցվում են շինարարական ինդուստրիայի թուլության և ամենից առաջ շինանյութերի պակասի, հատուկ մեքենաների ու սարքավորումների սուր դեֆիցիտի պատճառով, կոնֆերանսն արտահայտվում է այս հարցերը ՍՍՀ Միության ու միութենական հանրապետությունների կառավարական մարմինների կողմից անհետաձգելիորեն լուծելու օգտին։

Միաժամանակ պետք է հանգամանորեն, ինչպես հարկն է մշակել և լուծել այն հարցերը, որոնք կապված են բնակելի ֆոնդը պատշաճ վիճակում պահպանելու, բնակարանների բաշխման դեմոկրատական վերահսկողություն ապահովելու և բնակարանի վարձի արդարացի կարգ հաստատելու հետ։

Կոնֆերանսը կարևորագույն խնդիր է համարում առողջապահության և շրջակա միջավայրի պահպանության, երկրի էկոլոգիական վիճակի բարելավման ընդունված ծրագրերի պարտադիր կատարումը։ Այս ոլորտների բոլոր միջոցառումների հիմքում պետք է լինեն մարդկանց շահերը, սոցիալական կողմնորոշումը, իսկ աշխատանքի արդյունավետությունը զգալիորեն բարձրացվի տնտեսական խթանման նոր մեթոդների ներդրման և ժամանակակից գիտատեխնիկական ապահովման հաշվին։

Կառուցվածքային և ինվեստիցիոն ամբողջ քաղաքականության առանցքը, վերարտադրության տեմպերի ու համամասնությունների ձևավորման ելակետային հիմքը պետք է դառնա ՍՄԿԿ XXVII համագումարի՝ էկոնոմիկայի սոցիալական վերակողմնորոշման գիծը։ Այդ գիծը անխզելիորեն կապված է տնտեսական աճի նոր որակի, արտադրության համակողմանի ինտենսիվացման, ռեսուրսախնայողության, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, մեքենաշինության վերակազմության հետ։ Նման մոտեցումը պետք է կանխորոշի նաև տասներեքերորդ հնգամյակի կոնցեպցիան։

Զարգացնելով և խորացնելով տնտեսական ռեֆորմը, անհրաժեշտ է ավարտել տնտեսական նոր մեխանիզմի ձևավորումը, յուրաքանչյուր սկզբնական աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատատեղի հասցնել ռեֆորմի սկզբունքները։ Հարկավոր է խիստ ուժեղացնել մարդկանց շահագրգռությունը ամենաբարձր վերջնական արդյունքներով, մինչև վերջ հաղթահարել հավասարականությունը, ավելի համարձակորեն և ամենուրեք առաջնորդվել աշխատանքն ըստ քանակի և հատկապես ըստ որակի վարձատրելու սկզբունքով, թույլ չտալ այնպիսի դրություն, երբ կարելի է անկարիք ապրել վատ աշխատանքի դեպքում։

Կոնֆերանսը շեշտում է, որ տնտեսական ու սոցիալական բոլոր խնդիրների լուծումը կարող է ապահովվել սովետական մարդկանց բարեխիղճ ու բարձրարտադրողական աշխատանքի հիման վրա միայն։

Նպատակահարմար համարել ընթացիկ հնգամյակի շրջանակներում տնտեսական մեխանիզմի մշակումը կենտրոնում ու տեղերում վերակառուցել կառավարման կազմակերպական կառուցվածքները և արտաքին տնտեսական կապերի համակարգը։ Արագացնել անցումը արտադրության միջոցների մեծածախ առևտրին, ժողովրդական տնտեսության ֆինանսական առողջացման ծրագրի կատարմանը, ներառյալ կարգուկանոնի հաստատմանը բյուջեում, ֆինանսավարկային համակարգում, բանկերի գործունեության մեջ։ Համաժողովրդական քննարկումից հետո անցկացնել գնագոյացման ռեֆորմ, մեծածախ, գնման և մանրածախ գների վերանայում։ Մանրածախ գների ռեֆորմ կատարելիս անսասանորեն ելնել այն սկզբունքից, որ գների փոփոխությունը չպետք է որևէ վնաս պատճառի մարդկանց կենսամակարդակին։

3. Հեղափոխական վերակառուցումը անկարելի է առանց հասարակության մտավոր, հոգևոր



պոտենցիալի համակողմանի ակտիվացման, առանց գիտության ու տեխնիկայի առաջադիմության, առանց գիտնականների ու ինժեներական կադրերի գիտատեխնիկական ավանդի մեծացման, նրանց հեղինակության բարձրացման և աշխատանքի պայմանների բարելավման, առանց կրթության ամբողջ համակարգի ժամանակակից մակարդակի, առանց ժողովրդի ընդհանուր ու քաղաքական կուլտուրայի աճի։

Կոնֆերանսը շեշտում է հիմնարար և կիրառական գիտությունների ինտենսիվ զարգացման, պրակտիկայում հայտնագործությունների ու գյուտերի ներդրման սուր պրոբլեմի լուծման, արտադրության հետ գիտության մշտական կապի կարևոր նշանակությունը։ Հարկավոր են գիտական կյանքի կազմակերպման նոր ձևեր։ Կենսականորեն անհրաժեշտ է խոր վերակառուցումը հասարակական գիտություններում, որոնք պետք է մինչև վերջ հաղթահարեն դոգմատիզմը և խզումը կյանքից, նրանց պարտքն է ստեղծագործաբար մշակել սոցիալիզմի զարգացման այժմեական ու հեռանկարային հարցերը, համաշխարհային զարգացման պրոբլեմները, բարձրացնել ռեալ հատույցը քաղաքականության համար, հասարակության համար։

Կոնֆերանսն արտահայտվում է գիտության ու մշակույթի ոլորտի հետագա դեմոկրատացման օգտին, այդ ոլորտի համար այնպիսի նյութական բազայի ստեղծման ու զարգացման օգտին, որը համապատասխանի հասարակության վերակառուցման պահանջներին։ Պաշտպանելով պրոպլրտումների և ճշմարտության գեղարվեստական ըմբռնման բազմազանությունը, մրցակցությունը, նորարարությունն ու հաջորդայնությունը, կուսակցությունը ապավինում է գիտության, գրականության ու արվեստի գործիչների ակտիվությանը, ինքնանվիրմանը և ժողովրդի հանդեպ նրանց բարձր պատասխանատվությանը։

Կոնֆերանսը սկզբունքային նշանակություն է տալիս վերակառուցման տեսական զինանոցի մեծացմանը, գաղափարախոսական աշխատանքի նորացմանը, այդ աշխատանքի ձերբազատմանը ճճացածությունից, շաղկրատանքից ու շաբլոններից, վերակառուցման բովանդակության ու տոնի համապատասխանությանը կյանքի իրողություններին, մարդկանց հետաքրքրող բոլոր հարցերի շուրջ նրանց հետ ազնիվ, շիտակ խոսակցություն ունենալու հմտությանը։

ՍՄԿԿ-ի, մեր ամբողջ հասարակության պատասխանատու խնդիրն է երիտասարդ սերնդի դաստիարակությունն ու կրթությունը։ Կոնֆերանսը պահանջում է հետևողականորեն և արագ իրագործել միջնակարգ ու բարձրագույն դպրոցի ռեֆորմը։ Դա վերաբերում է թե նրանց նյութական բազայի ամրապնդմանը և թե գլխավորին՝ ուսուցչի, դասատուի, դաստիարակի դերին։

Կուսակցությունը վերակառուցման ակտիվ և նախաձեռնող ուժ է համարում երիտասարդությանը։ Կոնֆերանսը անհրաժեշտ է համարում մատաղ սերնդի առնչությամբ ունենալ ուժեղ, ամբողջական պետական քաղաքականություն, այնպիսի պայմաններ ստեղծող քաղաքականություն, որոնք երիտասարդներին հնարավորություն ընձեռեին որքան կարելի է շուտ ձեռք բերելու ինքնուրույնություն, առավելագույն չափով բացահայտելու իրենց ընդունակությունները և իրագործելու իրենց կենսական նպատակները, ավելի լավ նախապատրաստվելու նրան, որ ժամանակին տնտեսական, քաղաքական և բարոյական պատասխանատվություն ստանձնեն երկրի բախտի համար, սոցիալիզմի բախտի համար։

Կոնֆերանսը հանդես է գալիս կոմերիտմիության կուսակցական ղեկավարման լենինյան ավանդույթների լիակատար վերականգնման, նրա կազմակերպական ինքնուրույնության, քաղաքական գործունեությանը և քաղաքականության մշակմանը մասնակցելու, կուսակցական, սովետական ու տնտեսական մարմիններում, երիտասարդության շահերը պաշտպանելու նրա իրավունքի ապահովման օգտին։ Կոմերիտմիությունը ամբողջ հասարակության առջև առանձնահատուկ պատասխանատվություն է կրում պիոներական շարժման՝ քաղաքացիականության ու բարոյականության այդ նախնական դպրոցում, կատարած աշխատանքի համար։

Կոնֆերանսը ուշադրություն է հրավիրում անմիջականորեն կանանց շահերը շոշափող պրոբլեմներն ավելի եռանդագին լուծելու անհրաժեշտության վրա։ Կանայք պետք է լայնորեն ներկայացված լինեն ղեկավար մարմիններում՝ ներքևից մինչև վերև։ Անհրաժեշտ է բարձրացնել նրանց դերը հասարակության մեջ և քաղաքական կյանքում, պաշտպանել և պահպանել մոր հեղինակությունն ու իրավունքները, պայմաններ ստեղծել, որպեսզի նա կատարի իր պարտականությունները, ուժեղացնել հոգատարությունը երիտասարդ ընտանիքների նկատմամբ։

4. Կոնֆերանսը հավանություն է տալիս Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ շարադրված քաղաքական սիստեմի ռեֆորմի վերաբերյալ առաջարկություններին և արտահայտվում է դրանց պրակտիկ իրագործման օգտին։

Հանգուցային նշանակություն ունեն կուսակցական ու պետական մարմինների ֆունկցիաների սահմանազատումը և սովետների լիակատար իշխանության վերածնումը ներքևից մինչև վերև։ Դատական համակարգի և պետության ու քաղաքացիների փոխհարաբերությունների իրավական կարգավորումը, հասարակության բոլոր անդամների քաղաքական, տնտեսական, սոցիալական և

անձնական իրավունքների պաշտպանությունն ապահովող մյուս հաստատությունների հետ միասին դա, վերջին հաշվով, նպատակամղված է սոցիալիստական իրավական պետության ստեղծման ավարտմանը, որտեղ բարձրագույն սկզբունքը կլինի ամեն ինչի և ամենքի պարտադիր ենթարկումը օրենքին։

Կոնֆերանսը քաղաքական սիստեմի արդյունավետ գործունեության կարևորագույն նախադրյալներն է համարում պետության մեջ բարձրագույն իշխանության այնպիսի վերափոխումը, որը նախատեսի ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարների գումարում, գործունեության երկպալատ Գերագույն սովետի կանոնավոր հիման վրա Գերագույն սովետի նախագահության հիմնում, իրենց առանձնաշնորհումների դեմոկրատական օգտագործում, իշխանության բոլոր բարձրագույն էշելոնների, ներառյալ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի սահմանադրականորեն կանոնակարգված փոխգործողություն։

Կոնֆերանսն արտահայտվում է հասարակական կազմակերպությունների ու միավորումների՝ արհմիութենական, կոմերիտական, կանանց, վետերանների ու մյուսների, ստեղծագործական միությունների գործունեությունը վերակառուցման ոգով նորացնելու և քաղաքական սիստեմի գործունեության մեջ բնակչության տարբեր խավերի շահերը իրագործելու և կոորդինացնելու ասպարեզում նրանց դերի զգալի բարձրացման օգտին ի՝ բարօրություն ամբողջ ժողովրդի։

5. Կոնֆերանսը նշում է, որ ՍՄԿԿ-ն, ստանձնելով հեղափոխական նախաձեռնությունը, կարողացավ տալ հասարակության և հենց կուսակցության վիճակի օբյեկտիվ քննադատական վերլուծությունը, առաջադրեց վերակառուցման ծրագիրը, ժողովրդական լայն զանգվածներին համախմբեց այդ ծրագրի գաղափարների շուրջը, կազմակերպեց հասարակական հարաբերությունների հեղափոխական վերափոխման պրակտիկ աշխատանքը։ Այսպիսով, կոմունիստական կուսակցությունը մեկ անգամ ևս ցուցադրեց, որ ինքը հասարակության ծրագրային նպատակների կրողն է, հանդես է գալիս որպես ժողովրդի ավանգարդ։

Կուսակցական ու պետական մարմինների ֆունկցիաների սահմանազատման պայմաններում պետք է ամենայն լիակատարությամբ և ժամանակակից պայմանները հաշվի առնելով վերածնվի կուսակցության, որպես հասարակության ավանգարդի, կոնցեպցիան, որը հենվելով մարքս-լենինյան ուսմունքի վրա, ապահովում է երկրի զարգացման կարևորագույն հարցերի մշակումը, զբաղվում է վերակառուցման գաղափարախոսության մշակումով և դրա միջոցով, մասսաների շրջանում կատարվող կազմակերպչական աշխատանքի միջոցով, ոգեշնչելով և ոգևորելով մասսաներին, տալիս է մեր ամբողջ բազմազգ հասարակության առաջընթացի ճիշտ, սոցիալիստական ուղղությունը։ Կուսակցությունն իրագործում է կադրային քաղաքականությունը, ապահովելով կադրերի ռացիոնալ տեղաբաշխումը վերափոխված քաղաքական սիստեմի դեմոկրատական մեխանիզմների միջոցով։ Իր քաղաքական գիծը ՍՄԿԿ-ն պետք է վարի պետական ու տնտեսական մարմիններում, հասարակական կազմակերպություններում և աշխատավորական կոլեկտիվներում աշխատող կոմունիստների միջոցով։ Կուսակցությունը գործում է սահմանադրության և սովետական օրենքների շրջանակներում։

Երկրի ու սոցիալիզմի համար բախտորոշ՝ վերակառուցման խնդիրների լուծումը պահանջում է բարձրացնել կուսակցության ղեկավար դերը և իր դերի կատարման գնահատականի նոր չափանիշներ։

ՍՄԿԿ-ն այսուհետև երբեք թույլ չի տա որևէ այնպիսի բանի կրկնություն, ինչը կապված է անհատի պաշտամունքի ու լճացման ժամանակաշրջանների հետ, որոնք խոր ձևախեղումներ առաջացրին սոցիալիստական հասարակության մեջ, նրա զարգացումը կասեցրին ամբողջ տասնամյակներով, հանգեցրին հսկայական մարդկային զոհերի և բարոյական ու գաղափարական անհամար կորուստների։

6. Կոնֆերանսը հավանություն է տալիս ՍՄԿԿ Կենտկոմի միջազգային գործունեությանը, որը հիմնված է նոր քաղաքական մտածողության վրա, Սովետական Միության խաղաղասիրական մտադրությունները համաշխարհային քաղաքականության մեջ ընդգրկելու նոր մեթոդներին։ Հավաստում է, որ համաշխարհային զարգացման հակասությունների լուծման և կոնֆլիկտային իրավիճակների կարգավորման նկատմամբ միայն քաղաքական մոտեցումն է ՍՍՀՄ-ի համար հնարավորություն ստեղծում պատմության կողմից իրեն կանխանշված դերը խաղալու մարդկության գոյատևման ապահովման և նրա հետագա առաջադիմության գործում։

Այս առումով կոնֆերանսը բարձր է գնահատում այն սկզբունքային գիծը և ձեռնարկված պրակտիկ միջոցառումները, որոնց նպատակն է ամրապնդել ինտերնացիոնալիստական փոխգործողությունը սոցիալիստական երկրների հետ, բարելավել սովետա-ամերիկյան հարաբերությունները, աշխուժացնել համաեվրոպական պրոցեսը, զարգացնել կապերը Ասիա-խաղաղօվկիանոսյան ռեգիոնում, Լատինական Ամերիկայում, Աֆրիկայում, արգասավոր կոնտակտները չմիանալու շարժման, զանազան քաղաքական կուսակցությունների և համաշխարհային հասարակայնության հետ։ Հավանություն է տալիս այն ջանքերին, որոնց նպատակն է զորավիգ լինել Միավորված



ազգերի կազմակերպության հեղինակությանը և ռեգիոնալ կոնֆլիկտները կարգավորել ազգային հաշտեցման և ընտրության ազատության սկզբունքներով։

Կոնֆերանսը ճիշտ է համարում սովետական ղեկավարության մոտեցումը պատերազմի սպառնալիքը բացախոս, կոնստրուկտիվ երկխոսության, զինաթափման ուղիներով վերացնելու պրոբլեմի նկատմամբ, մոտեցում, որն ուղի հարթեց կնքելու միջին ու փոքր հեռահարության հրթիռների վերացման պայմանագիրը, գործնական մակարդակ փոխադրելու բանակցությունները, միջուկային, քիմիական և սովորական սպառազինությունների շուրջ։

Կոնֆերանսը լիովին հավանություն է տալիս Ժնևի համաձայնագրերի հիման վրա զորքերը Աֆղանստանից դուրս բերելու և մեր այդ հարևանի հետ, որպես անկախ, չեզոք, չմիացած պետության հետ, հարաբերություններ պահպանելու մասին որոշմանը։

Արտաքին քաղաքական գործունեությունը պետք է ավելի ու ավելի մեծ ավանդ ներդնի երկրի ռեսուրսները խաղաղ շինարարության համար, վերակառուցման համար ազատելու գործում և սերտորեն շաղկապված լինի հասարակության դեմոկրատացման հետ, ներառյալ որոշումների մշակման պրոցեսը և դրանց կատարման վերահսկողությունը։

Ամբողջ պաշտպանական շինարարությունը պետք է այսուհետև կողմնորոշված լինի գերազանցապես որակական պարամետրերին՝ ինչպես տեխնիկայի, ռազմագիտության, այնպես էլ զինված ուժերի կազմի առնչությամբ։ Երաշխավորելով սովետական պետության և նրա դաշնակիցների հուսալի անվտանգությունը, պաշտպանական շինարարությունը պետք է իրագործվի մեր պաշտպանողական դոկտրինային խստիվ համապատասխան։

Վերակառուցումը կարիք ունի այնպիսի արտաքին քաղաքականության, որը նույնականորեն արտացոլի նրա հումանիստական էությունը, սովետական հասարակության առջև բացի փոխշահավետ համագործակցության լայն ասպարեզ և բազմազան դեմոկրատական կապեր շրջակա աշխարհի հետ։

Կոնֆերանսը հաստատում է խաղաղության ու սոցիալական առաջադիմության, ազատության ու դեմոկրատիայի համար կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հասարակական ուժերի պայքարի հետ անփոփոխ համերաշխության ՍՄԿԿ-ի կուրսը։

7. Արտահայտելով կոմունիստների 20 միլիոնանոց բանակի կամքը, սովետական ժողովրդի արմատական շահերը, կոնֆերանսը՝ հայտարարում է. կուսակցությունը հաստատակամորեն ու նպատակամետորեն կխորացնի հեղափոխական վերակառուցման պրոցեսը, կապահովի վերակառուցման անշրջելիությունը, ամեն ինչ կանի նրա նպատակներին հասնելու համար։

Կոնֆերանսը բոլոր կուսակցական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին ու անկուսակցականներին կոչ է անում է՛լ ավելի ակտիվորեն լծվել հասարակության նորացման՝ հայրենիքի բախտի համար պատմական նշանակություն ունեցող պրոցեսներին։

8. Կոնֆերանսը անհրաժեշտ է համարում, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ապահովի այն բոլոր կոնկրետ առաջարկությունների ու խնդրանքների քննարկումը, կոնֆերանսի պատգամավորները արտահայտել են իրենց պատգամավոր ընտրած կոմունիստների անունից, ինչպես նաև այն առաջարկությունների ու հարցերի քննարկումը, որ շարադրված են թեզիսների քննարկման ընթացքում կոնֆերանսի հասցեով ուղարկված կոլեկտիվ և անհատական դիմումներում, և քննարկման արդյունքների մասին տեղեկացնել մասսայական ինֆորմացիայի միջոցների օգնությամբ։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱՑՄԱՆ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՌԵՖՈՐՄԻ ՄԱՍԻՆ

1. Վերակառուցման, երկրի հեղափոխական նորացման երեք տարվա փորձը, կուսակցական և հասարակական կյանքի դեմոկրատացումը օրակարգում դրել են քաղաքական սիստեմի խոր ռեֆորմի անհրաժեշտությունը։

Սովետական պետությունը ծնվեց որպես պրոլետարիատի դիկտատուրայի գործիք և հասարակական զարգացման որոշակի փուլում վերածվեց համաժողովրդական պետության։ Այժմ խնդիրն այն է, որ սովետական պետականությունը լրիվ ծավալով համապատասխանի այդ հասկացությանը, որ երկրում բոլոր գործերը լուծվեն ժողովրդի և նրա լիազոր ներկայացուցիչների կողմից, գտնվեն նրա լիակատար ու գործուն վերահսկողության ներքո։

Քաղաքական սիստեմի առաջիկա ռեֆորմը, կոնֆերանսի կարծիքով, կոչված է լուծելու հետևյալ խնդիրները.

— առավելագույն ասպարեզ ընձեռել հասարակության ինքնակառավարմանը, պայմաններ ստեղծել քաղաքացիների, իշխանության ներկայացուցչական մարմինների, կուսակցական ու

հասարակական կազմակերպությունների. աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության լիակատար զարգացման համար.

— կարգավորել բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի շահերի և կամքի դեմոկրատական դրսևորման ու ձևավորման, սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության մեջ դրանց համաձայնեցման և իրացման մեխանիզմը.

— պայմաններ ապահովել յուրաքանչյուր ազգի և ազգության հետագա ազատ զարգացման, ինտերնացիոնալիզմի սկզբունքներով նրանց բարեկամության ու իրավահավասար համագործակցության ամրապնդման համար.

—արմատապես ամրապնդել սոցիալիստական օրինականությունն ու իրավակարգը, որպեսզի բացառվի իշխանության բռնատիրման և չարաշահումների հնարավորությունը, արդյունավետորեն դիմակայել բյուրոկրատիզմին ու ձևամոլությանը, ապահովել քաղաքացիների սահմանադրական իրավունքներն ու ազատությունները պաշտպանելու, ինչպես նաև հասարակության ու պետության հանդեպ իրենց պարտականությունների կատարման հուսալի երաշխիքներ.

— հստակորեն սահմանազատել կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաները՝ կոմունիստական կուսակցության՝ որպես հասարակության քաղաքական ավանգարդի, դերի և սովետական պետության՝ որպես ժողովրդի իշխանության կազմակերպության ու գործիքի, դերի լենինյան կոնցեպցիային համապատասխան.

— ստեղծել արդյունավետ մեխանիզմ, որը ժամանակին ապահովեր քաղաքական սիստեմի ինքնանորացումը՝ հաշվի առնելով փոփոխվող ներքին ու միջազգային պայմանները, սոցիալիստական դեմոկրատիայի և ինքնակառավարման սկզբունքների զարգացումն ու ներդրումը կյանքի բոլոր ոլորտներում։

Քաղաքական սիստեմի ռեֆորմը պետք է կոմպլեքսային բնույթ կրի, ընդգրկի նրա բոլոր օղակները, կոորդինացված կերպով իրականացվի տնտեսության և ամբողջ հասարակության վերակառուցման հետ միասնաբար, ընդ որում հնարավորին չափ կարճ ժամկետում։

2. Քաղաքական սիստեմի ռեֆորմի վճռական ուղղությունը ժողովրդական դեպուտատների սովետների՝ որպես մեր երկրի սոցիալիստական պետականության և ինքնակառավարման հիմքի, լիիշխանության ապահովումն է։

Կոնֆերանսը անհրաժեշտ է համարում ամրապնդել սովետների օրենսդրական, կառավարչական ու վերահսկիչ ֆունկցիաները, նրանց քննարկմանն ու լուծմանը հանձնել պետական, տնտեսական ու սոցիալ-կուլտուրական կյանքի բոլոր կարևոր հարցերը, վերականգնել ընտրովի մարմինների ղեկավար դերը գործադիր մարմինների և նրանց ապարատի նկատմամբ։ Կուսակցության քաղաքականությունը՝ տնտեսական, սոցիալական, ազգային, պետք է իրագործվի նախ և առաջ ժողովրդական ներկայացուցչության մարմինների միջոցով։

Տեղական գործերի ղեկավարումը պետք է վերակազմակերպվի ինքնակառավարման, ինքնաֆինանսավորման, ինքնապահովման, համապետական շահերի հետ ռեգիոնալ շահերի համաձայնեցման սկզբունքներով։ Դրա համար հարկավոր է ստեղծել իրական պայմաններ, որոնց դեպքում ապահովվեին սովետների պատասխանատվությունն ու ինքնուրույնությունը ենթակա տարածքների կոմպլեքսային զարգացման պրոբլեմները լուծելիս։ Նրանք պետք է ունենան եկամուտների կայուն, երկարաժամկետ նորմատիվների վրա հիմնված աղբյուրներ, ներառյալ իրենց տարածքներում գտնվող բոլոր ձեռնարկություններից ստացվող հասույթները, միջոցներ կուտակեն, որոնք անհրաժեշտ են տնտեսական զարգացման և բնակչության կյանքի բարելավման, շրջակա միջավայրի պաշտպանության, մյուս հրատապ խնդիրների լուծման համար, լրացուցիչ եկամուտներից, այդ թվում բնակչությունից ստացվող մուտքերից կազմել զարգացման արտաբյուջետային ֆոնդեր՝ տնտեսական ու սոցիալական ձեռներեցության հմուտ ղեկավարման շնորհիվ ստացված միջոցներն ազատորեն տնօրինելու հաստատուն երաշխիքներով հանդերձ։

Պետք է նորացնել սովետների աշխատանքի բուն կազմակերպումը՝ ընդլայնել բացառապես նստաշրջաններում լուծվող հարցերի շրջանակը, նախատեսել պաշտոնեական և արտադրական պարտականություններից դեպուտատների պարբերաբար ազատում՝ սովետում, մշտական հանձնաժողովներում և ընտրական օկրուգներում աշխատելու համար, ելնել այն բանից, որ յուրաքանչյուր սովետ օրենքի շրջանակներում լիակատար հնարավորություն ունենա ընտրելու իր գործունեության ձևերն ու մեթոդները, նկատի առնելով տեղական պայմանները։ Գործկոմներ կազմավորելիս, գործկոմների բաժինների, վարչությունների, ծառայությունների ղեկավարներին նշանակելիս ու հաստատելիս կանոն պետք է դառնան մի քանի թեկնածությունների առաջադրումը, գաղտնի քվեարկությունը, մրցույթներ անցկացնելը։ Պետք է հասնել այն բանին, որ բոլոր օղակների սովետների աշխատանքը վարվի հրապարակայնորեն, մշտապես լինի ընտրողների աչքի առաջ։

Կոնֆերանսն արտահայտվում է հօգուտ այն բանի, որ իշխանության տեղական մարմիններում, բացի գյուղականից և ավանայինից, ընտրվեին սովետների մշտական նախագահություններ և առանց բացառության բոլոր սովետներում գաղտնի քվեարկությամբ՝ դրանց նախագահներ։ Ներկայացուցչական մարմինների դերի բարձրացմանը կնպաստեր սովետների նախագահների



պաշտոնի համար որպես կանոն համապատասխան կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարներին երաշխավորումը։

Բոլոր աստիճանների տեղական սովետների գործադիր կոմիտեների անդամները, ինչպես նաև նրանց բաժինների ու վարչությունների ղեկավարները, դատավորները, պետական արբիտրերներն ու դատախազները չեն կարող մտնել համապատասխան սովետի դեպուտատների կազմի մեջ։ Նման սկզբունքը հարկ կլիներ տարածել ՍՍՀ Միության, միութենական և ինքնավար հանրապետությունների կառավարության անդամների և գերատեսչությունների ղեկավարների վրա։

Դեմոկրատական կարևոր կարգ կլիներ ընտրովի պաշտոններ, ինչպես նաև սովետների կողմից նշանակման ու հաստատման ենթակա պաշտոններ զբաղեցնելու սահմանափակումը անընդմեջ երկու ժամկետով։

Սովետների հեղինակության և ազդեցության վերականգնումը կարիք ունի գործող ընտրական համակարգի էական նորացման։ Դրականորեն գնահատելով այդ գործում ՍՄԿԿ XXVII համագումարից հետո կուտակված փորձը, կոնֆերանսն անհրաժեշտ է համարում ավելի առաջ գնալ՝ ապահովելով թեկնածուների անսահմանափակ առաջադրումը, դրանց լայն ու ազատ քննարկումը, ընտրաթերթիկներում ավելի շատ թեկնածուներ ընդգրկելը, քան մանդատներն են, ընտրությունների դեմոկրատական արարողակարգի խստիվ կիրառումը, դեպուտատների կանոնավոր հաշվետու լինելը և նրանց հետ կանչելու հնարավորությունը։ Ընդարձակ լիազորություններ պետք է տրամադրել օկրուգային նախընտրական ժողովներին, որոնք պետք է դառնան դեպուտատության թեկնածուների մրցակցային ընտրության դեմոկրատական համաժողովներ։ Սովետները իսկապես աշխատող մարմիններ կդառնան այն դեպքում, եթե դրանցում ընտրվեն սկզբունքային, պետական լայն մտահորիզոն ունեցող, սոցիալիստական նորացման դիրքերում հաստատապես կանգնած մարդիկ, որոնք ընդունակ լինեն արժանավայել ներկայացնել իրենց ընտրողներին և ակտիվորեն իրականացնել իրենց ընձեռվող իրավունքները։

Կոնֆերանսն արտահայտվում է ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների համար լիազորությունների մեկ ժամկետ՝ 5 տարի սահմանելու օգտին։

Ամփոփելով ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսների շուրջը ծավալված դիսկուսիայի արդյունքները և հաշվի առնելով քննարկումը բուն կոնֆերանսում, պատգամավորները անհրաժեշտ են համարում պետական իշխանության բարձրագույն մարմինների վերակազմումը և արտահայտվում են հօգուտ այն բանի, որ երկրի իշխանության բարձրագույն մարմին դառնա ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարը, որի կազմում տարածքային և ազգատարածքային ընտրական օկրուգներից ընտրված դեպուտատների հետ մեկտեղ պետք է մտնեն քաղաքական սիստեմի հիմնական օղակները՝ կուսակցությունը, արհմիությունները, կոմերիտմիությունը, մյուս մասսայական հասարակական, ինչպես նաև կոոպերատիվ, ստեղծագործական, գիտական կազմակերպությունները ներկայացնող դեպուտատները, որոնք դեմոկրատական եղանակով ընտրվել են իրենց կենտրոնական մարմինների համագումարներում կամ պլենումներում։ ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարը, հավաքվելով իր ամենամյա նիստերին, կարող էր լուծել երկրի կյանքի սահմանադրական, քաղաքական ու սոցիալ-տնտեսական ամենակարևոր հարցերը։ Համագումարը կազմում է համեմատաբար ոչ մեծ թվակազմով ՍՍՀՄ երկպալատ Գերագույն սովետ՝ մշտապես աշխատող օրենսդիր, կարգադիր և վերահսկիչ մարմին, գաղտնի քվեարկությամբ ընտրում է Գերագույն սովետի նախագահ։ Պետք է վերացնել պալատների ֆունկցիոնալ դիմագրկությունը, նորովի կազմակերպել մշտական հանձնաժողովների և դեպուտատների աշխատանքը։

Նոր մոտեցումներ պետք է օգտագործել մյուս բոլոր աստիճանների սովետները կազմելիս և նրանց գործունեությունը կազմակերպելիս, դա վավերագրելով օրենսդրության մեջ։

3. Կոնֆերանսը քաղաքական սիստեմի ռեֆորմի կարևոր ուղղություններից մեկը համարում է կառավարման ապակենտրոնացումն ու ֆունկցիաների և իրավասությունների այնպիսի վերաբաշխումը, որոնք ապահովեին տեղերի առավելագույն նախաձեռնությունն ու ինքնուրույնությունը։ Ընդ որում, պետք է բացառվեն գերատեսչականությունը, տեղայնությունը և ապահովվեն կենտրոնի ֆունկցիաները, առանց որի անհնար են սոցիալիզմի առավելությունների իրացումը, ընդհանուր միութենական շահերի պահպանումը հսկայական բազմազգ պետության մեջ։

Կոնֆերանսը նշում է, որ տնտեսական ռեֆորմի և քաղաքական սիստեմի ռեֆորմի ընթացքում աճում են ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ որպես իշխանության բարձրագույն գործադիր ու կարգադիր մարմնի, ՍՍՀՄ Գերագույն սովետին հաշվետու մարմնի դերն ու պատասխանատվությունը ներքին և արտաքին քաղաքականության իրացման, տնտեսական և սոցիալ-կուլտուրական զարգացման պլանների և հեռանկարային ծրագրերի մշակման ու իրականացման համար։

Հասարակության դեմոկրատացումը ենթադրում է սիստեմատիկ աշխատանք ամբողջ պետական ապարատի կառուցվածքը պարզեցնելու և աշխատանքի մեթոդները կատարելագործելու համար։ Պետք է վերացվեն ապարատի ավելորդ օղակներն ու նրա թվակազմը կրճատվի մինչև նպատակահարմար սահման։ Մեզ անհրաժեշտ է ունենալ նոր տիպի ապարատ, որը հիմնված լինի բարձր պրոֆեսիոնալիզմի վրա, տիրապետի ժամանակակից ինֆորմացիոն տեխնոլոգիային. դեմոկրա

տարար վերահսկվի ժողովրդի կողմից, ընդունակ լինի արագացնելու տնտեսական ու սոցիալական առաջադիմությունը։ Նշելով այդ ուղղությամբ տարվող աշխատանքի դրական նշանակությունը, կոնֆերանսը արտահայտվում է նրա արագացման, այն բանի օգտին, որ կառավարման համակարգի ոչ մի օղակ վերակառուցումից դուրս չմնա։ Նպատակահարմար է երկրում ստեղծել միասնական, իշխանության ընտրովի մարմիններին ենթակա հասարակական պետական վերահսկողության համակարգ։

Քաղաքական սիստեմի ռեֆորմն իրականացնելիս պետք է առաջնահերթ ուշադրություն դարձվի սովետական սոցիալիստական ֆեդերացիայի զարգացման հարցերին՝ ի շահ ՍՍՀՄ-ի մեջ մտնող բոլոր ազգերի և ազգությունների իրավահավասար եղբայրական դաշինքի հետագա ամրապնդման։

4. Կոնֆերանսը սկզբունքային կարևորություն ունեցող գործ է համարում սոցիալիստական իրավական պետության՝ որպես սոցիալիզմին լիովին համապատասխանող քաղաքական իշխանության կազմակերպման ձևի ստեղծումը։ Այդ խնդրի լուծումը անխզելիորեն կապված է սովետական մարդու իրավունքների և ազատությունների, քաղաքացու հանդեպ պետության և պետության հանդեպ քաղաքացու պատասխանատվության առավելագույն ապահովման, օրենքի հեղինակության բարձրացման և բոլոր կուսակցական ու պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների, կոլեկտիվների ու քաղաքացիների կողմից նրա խստիվ կիրառման հետ, իրավապահ մարմինների արդյունավետ աշխատանքի հետ։ Այդ մարմինների գործունեության արմատական վերակառուցումը պետք է դառնա իրավական ռեֆորմի էությունը, որը կոնֆերանսը նպատակահարմար է գտնում անցկացնել համեմատաբար կարճ ժամկետում։

5. Քաղաքական սիստեմի ռեֆորմը ենթադրում է նրա այնպիսի կարևոր օղակների վերակառուցում, ինչպիսիք հասարակական կազմակերպություններն են։ Արհմիությունները, կոմերիտմիությունը, կոոպերացիան, կանանց, վետերանների և մյուս կազմակերպությունները, արտահայտելով սովետական հասարակության տարբեր խավերի շահերն ու իղձերը, նպաստում են կուսակցության և պետության ներքին ու արտաքին քաղաքականության ձևավորմանը, որի մեջ օրգանապես միահյուսվում են մեր ողջ ժողովրդի շահերը։

Որպես դրական երևույթ պետք է դիտել վերջին ժամանակներս մի շարք նոր հասարակական ասոցիացիաների ու միավորումների ստեղծումը, որոնք իրենց առջև նպատակ են դնում նպաստել սոցիալիստական նորացման գործին։ Կոնֆերանսը միևնույն ժամանակ դատապարտում է ամեն մի գործունեություն, որը նպատակաուղղված է հասարակության սոցիալիստական հիմքերի խարխլմանը, ազգային ու ռասայական թշնամանքի բորբոքմանը, պատերազմի, բռնության և անբարոյականության քարոզին։

Բարձր գնահատելով հասարակական կազմակերպությունների գործունեությունը, կոնֆերանսը նշում է, որ անհրաժեշտ է դեմոկրատացնել դրանց կյանքը, բարձրացնել ինքնուրույնությունն ու պատասխանատվությունը, վճռականորեն հաղթահարել այնպիսի թերություններ, ինչպիսիք են կազմակերպամոլությունը, ձևամոլությունը, ինքնագործունեության հիմունքների թուլացումը։ Իր կողմից կուսակցությունն ըստ ամենայնի կնպաստի, որ հասարակական կազմակերպությունները նորովի իմաստավորեն իրենց տեղը հասարակության մեջ, իրենց ստեղծագործական պոտենցիալը էլ ավելի եռանդագին միահյուսեն նորացման պրոցեսին, որպեսզի համաժողովրդական հայրենասիրական շարժումը այսուհետև էլ զարգանա ի պաշտպանություն վերակառուցման գծի։

Մեր երկրում պատմականորեն առաջացած միակուսակցական սիստեմի պայմաններում կուսակցության և հասարակության մեջ ազատ երկխոսության, քննադատության և ինքնաքննադատության, ինքնավերահսկման և ինքնագնահատման մշտապես գործող մեխանիզմի առկայությունը կենսական նշանակություն ունեցող հարց է։

6. Կուսակցությունը լի է վճռականությամբ՝ նպաստելու աշխատավորների սոցիալական իրավունքների ամրապնդմանը, որոնք սոցիալիստական հասարակարգի առավելությունների ցայտուն արտահայտությունն են։ Այս ճանապարհին հաջողությունները կկանխորոշվեն տնտեսական ռեֆորմի հետևողական իրականացմամբ, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացմամբ։ Այդ առնչությամբ կոնֆերանսն ընդգծում է աշխատանքային կարգապահությունը, իրենց արտադրական պարտականությունների նկատմամբ աշխատողների գիտակցական ու ստեղծագործական մոտեցումն ամրապնդելու անհրաժեշտությունը։ Աշխատանքի նկատմամբ յուրաքանչյուր կոլեկտիվի և յուրաքանչյուր սովետական մարդու վերաբերմունքից են վերջին հաշվով կախված այն սոցիալական բարիքների մակարդակն ու որակը, որոնք հասարակությունը կարող է տրամադրել իր անդամներին։

Քաղաքացիների քաղաքական իրավունքների և անձնական ազատությունների ընդլայնման համար կարևոր նշանակություն կունենա այդ սահմանադրական իրավունքների և ազատությունների իրականացման կարգի օրենսդրական սահմանումը։ Դրանց թվում առանձնակի տեղ է պատկանում կառավարմանը մասնակցելու, ցանկացած հարցի առթիվ իր կարծիքն արտահայտելու՝ մարդու իրավունքներին, խղճի ազատությանը։ Օրենքը պետք է հուսալիորեն պաշտպանի քաղաքացու անձնական արժանապատվությունը, նրա տան անձեռնմխելիությունը, նամակագրության, հեռախոսազրույցների գաղտնիությունը և այլն։ Սովետական մարդկանց իրավունքներն ու ազատությունները անխզելիորեն կապված են նրանց քաղաքացիական պարտականությունների հետ, օրենքի հանդեպ բոլորի համար պարտադիր հարգանքի հետ։ Սոցիալիստական դեմոկրատիան համատեղելի չէ ոչ ինքնագլխության, ոչ էլ անպատասխանատվության հետ։

7. Կոնֆերանսն այն կարծիքին է, որ քաղաքական սիստեմի ռեֆորմի հաջողությունը որոշակիորեն կախված է կուսակցության աշխատանքից և կուսակցական բոլոր կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին պարտադրում է ամենաեռանդուն, ստեղծագործական մասնակցությունն ունենալ այդ առնչությամբ ծագող հարցերի լուծմանը։ Հանդես գալով որպես ռեֆորմի կազմակերպիչ և նրա ակտիվ կենսագործող, կուսակցությունը իրագործում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների քաղաքական ավանգարդի իր առաքելությունը։

Մեր ապրած պատմական պահի գլխավոր առանձնահատկությունն այն է, որ ՍՄԿԿ-ի գործունեությունը ոչ միայն բովանդակությամբ, այլև մեթոդներով լիովին համապատասխանի հասարակության մեջ կուսակցության ունեցած ղեկավար դերի լենինյան կոնցեպցիային։ Դա պահանջում է նախ և առաջ հրաժարվել կուսակցական կոմիտեների կողմից պետական ու տնտեսական մարմիններին փոխարինելուց, բացառել այնպիսի կուսակցական որոշումների ընդունումը, որոնք նրանց հասցեագրված ուղղակի ցուցումներ են պարունակում, խստիվ հետևելու այն սկզբունքին, որ ՍՄԿԿ-ն իր քաղաքական գիծը վարում է հասարակության կյանքի տարբեր ոլորտներում աշխատող կոմունիստների միջոցով։

Կոնֆերանսը որպես այսօրվա խնդիր առաջադրում է կուսակցական մարմինների աշխատանքի հրամայական մեթոդներից անդարձ հրաժարվելը, ՍՍՀՄ սահմանադրության և մյուս օրենքների, դեմոկրատական սկզբունքների, պահանջների խստիվ կատարումը։ Հենց կուսակցական քաղաքականությունը նորովի, մասսաների շրջանում գաղափարաքաղաքական և կազմակերպչական աշխատանքի մեթոդներով վարելու ընդունակությամբ պետք է որոշել յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության գործունեության մակարդակը, կուսակցական աշխատողների հասունությունը։

8. Վերակառուցման և հասարակության նորացման ասպարեզում ՍՄԿԿ-ի ավանգարդային դերը անհնար է առանց կուսակցության ներքին կյանքի խոր դեմոկրատացման։ Առաջնահերթ խնդիր է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի լենինյան ըմբռնման լիակատար վերականգնումը, որով նախատեսվում է դիսկուսիաների ազատություն հարցերի քննարկման փուլում և գործողությունների միասնություն մեծամասնության կողմից որոշումների ընդունումից հետո։ Պետք է մշակվեն և իրականացվեն ներկուսակցական դեմոկրատիան խորացնելու միջոցառումներ, որպեսզի ՍՄԿԿ-ի բոլոր օղակները գործեն կուսակցական ընկերականության, քաղաքականության և պրակտիկ գործունեության բոլոր հրատապ հարցերի ազատ քննարկման, քննադատության և ինքնաքննադատության, կոլեկտիվիզմի և գիտակցական կարգապահության, անձնական պատասխանատվության մթնոլորտում։

Կոնֆերանսը մեծ նշանակություն է տալիս սկզբնական կուսակցական կազմակերպությունների կյանքի դեմոկրատացմանը։ Պետք է նախ և առաջ բարձրացնել նրանց ինքնուրույնությունը, ազատելով վերևից արվող մանրախնդիր կանոնակարգումից, ամրապնդել կուսակցական ընտրովի մարմինների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների հեղինակությունը, ստեղծել նրանց աշխատանքը խթանող պայմաններ, հաղթահարել կուսակցականների մի մասի պասիվությունը։ Կոնֆերանսը նշում է, որ կուսակցական կոմիտեների գործունեության մեջ կոմունիստներին ներգրավելու աստիճանը չի համապատասխանում կուսակցական աշխատանքի արմատական վերակառուցման պահանջմունքներին, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացմանը, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման հաստատմանը։ Յուրաքանչյուր կոմունիստ պետք է դառնա վերակառուցման, մեր հասարակության հեղափոխական վերափոխման մարտիկ։ Դեմոկրատացումը պետք է շոշափի նաև մի այնպիսի կարևոր պրոցես, ինչպիսին նոր անդամների ընդունելությունն է ՍՄԿԿ-ի մեջ։ Պետք է վճռականորեն վերջ տալ կուսակցական շարքերի համալրումը «կարգադրագրի» միջոցով կարգավորելուն, որը հաճախ արհեստական խոչընդոտներ է ստեղծում կուսակցության մեջ առաջավոր, նախաձեռնող մարդկանց ընդունելու համար։ Քաղաքական դիրքորոշումը, իրական մասնակցությունը վերակառուցմանը, գործի նկատմամբ վերաբերմունքը, բարոյական կերպարն են այն գլխավոր չափանիշները, որոնցից պետք է ելնել կուսակցության մեջ ընդունվողի հատկանիշները գնահատելիս։ Ընդսմին, պետք է օբյեկտիվորեն հաշվի առնել աշխատավորական կոլեկտիվի կարծիքը, ընդունելության հարցերը քննարկել կուսակցական դռնբաց ժողովներում։

9. Կուսակցության դեմոկրատացման էական ուղղություններից մեկը կոնֆերանսը համարում է որոշումների կոլեգիալ քննարկման և ընդունման լենինյան սկզբունքի լիովին վերականգնումը։

Անթույլատրելի է, երբ կուսակցական ապարատը փոխարինում է ընտրովի մարմիններին, իսկ կոմունիստների դերը հանգում է ժողովներին ներկա լինելուն և առաջարկված թեկնածուների ցուցակների ու բանաձևերի պատրաստի նախագծերի օգտին քվեարկելուն։ Պետք է փոխել կուսակցական ժողովների և կուսակցական կոմիտեների պլենումների բնույթը, բարձրացնել դրանց գործարարությունը, քննադատական և կոնստրուկտիվ մոտեցումը քաղաքական ղեկավարման, գաղափարադաստիարակչական աշխատանքի պրոբլեմների նկատմամբ։

Կոնֆերանսն արտահայտվում է Կենտկոմի քաղբյուրոյի գործունեությանը ՍՄԿԿ Կենտկոմի անդամների մասնակցությունն ընդլայնելու, Կենտրոնական կոմիտեի պլենումներում կանոնավոր կերպով քաղբյուրոյի հաշվետվություններն ու ինֆորմացիաները լսելու, ներքին և արտաքին քաղաքականության տարբեր ուղղությունների գծով Կենտկոմի անդամներից հանձնաժողովներ ստեղծելու օգտին։ Կուսակցական կյանքի դեմոկրատացումը պահանջում է առավելագույն գաղտնազերծություն կուսակցական բոլոր կազմակերպությունների, նրանց ղեկավար մարմինների աշխատանքում։ Կոնֆերանսը պաշտպանում է կուսակցական կոմիտեների պլենումների սղագրությունները, ինչպես նաև կուսակցական ու հասարակական կյանքի խոշոր հարցերի վերաբերյալ նախապատրաստվող որոշումների նախագծերը տպագրելու առաջարկությունը։

Ներկուսակցական հարաբերությունների նորացման գործում առանձնահատուկ դեր է պատկանում կուսակցության ընտրովի մարմիններին։ Կոնֆերանսը ուշադրություն է հրավիրում իրենց կոմիտեների առջև կուսակցության շրջկոմների, քաղկոմների, օկրուգկոմների, մարզկոմների, երկրկոմների, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների բյուրոների, իսկ սկզբնական, արտադրամասային կուսկազմակերպությունների առջև՝ կուսկոմների և կուսակցական բյուրոների կանոնավոր հաշվետվություններով հանդես գալու անհրաժեշտության վրա։ Ընդ որում, կոմունիստները իրավունք ունեն ընտրովի կուսակցական մարմիններից ժամկետից շուտ հետ կանչել այն անձանց, որոնք չեն կարողանում կատարել պարտականությունները կամ վարկաբեկել են իրենց, իսկ անհրաժեշտության դեպքում վերընտրել ընտրովի մարմնի ամբողջ կազմը։

Դեմոկրատացման պայմաններում հարկ կա լրջորեն նորացնելու կուսակցության կադրային քաղաքականությունը։ Իրեն սպառում է ձևական նոմենկլատուրային մոտեցումը կադրերի ընտրության ու տեղաբաշխման նկատմամբ։ Այդ բնագավառում կուսակցական կոմիտեների աշխատանքի հիմնական մեթոդը պետք է դառնան կադրերի պատրաստման ու վերապատրաստման կազմակերպումը, նրանց դաստիարակումը դեմոկրատական արարողություններին համապատասխան՝ ղեկավար պոստերում հնարավոր առաջադրումը հաշվի առնելով։ Կադրային հարցերի վերջնական լուծումը պետք է որոշվի ընտրությունների արդյունքներով։

10. Կոնֆերանսը առաջնահերթ նշանակության հարց է համարում ընտրական պրոցեսի դեմոկրատացումը կուսակցության մեջ։ Բոլոր կուսակցական կոմիտեների, ընդհուպ մինչև ՍՄԿԿ Կենտկոմի անդամների ու քարտուղարների ընտրությունների ժամանակ ապահովել թեկնածությունների լայն քննարկումը և գաղտնի քվեարկությունը, քվեաթերթիկների մեջ ավելի շատ թեկնածուներ մտցնելու հնարավորությունը, քան մանդատներն են։ Նպատակահարմար ճանաչել, որ կուսակցական կազմակերպություններն իրավունք ունեն կոնֆերանսի կամ համագումարի պատգամավորների ընտրությունների հետ միաժամանակ առաջարկություններ մտցնել վերադաս կուսակցական մարմնի կազմի թեկնածությունների վերաբերյալ, վերջին խոսքը թողնելով կոնֆերանսի, համագումարի պատգամավորներին։

Կոնֆերանսը պաշտպանում է ընտրովի կուսակցական մարմինների համար՝ ՍՄԿԿ Կենտկոմից մինչև կուսակցության շրջկոմները, լիազորությունների միասնական ժամկետ՝ հինգ տարի սահմանելու առաջարկությունը։ Հաշվի առնելով լիազորությունների այդ ժամկետի համեմատական երկարությունը, հարկ կլիներ պրակտիկա դարձնել երկու-երեք տարին մեկ կուսակցական կոնֆերանսներ անցկացնելը, դրանք օժտելով կուսակցական կոմիտեների կազմը մասնակիորեն, մինչև 20 տոկոսով, նորացնելու իրավունքով։ Դա տարածվում է նաև ՍՄԿԿ համամիութենական կոնֆերանսի վրա։

Կուսակցության կադրային կազմի `լճացման դեմ կարևորագույն երաշխիքն է կոչված դառնալու ընտրովի պաշտոններում գտնվելու ժամկետների սահմանափակումը։ Կոնֆերանսը նպատակահարմար է համարում ՍՄԿԿ-ի առաջիկա հաշվետու ընտրական կամպանիայից սկսած գործողության մեջ դնել հետևյալ կանոնը. կուսակցական կոմիտեների բյուրոների բոլոր անդամներն ու կոմիտեների քարտուղարները, ներառյալ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներն ու ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը, կարող են նույն պաշտոնում ընտրվել ոչ ավելի, քան անընդմեջ երկու ժամկետով։

11. Կուսակցության մեջ վերահսկիչ-վերստուգիչ աշխատանքը կատարելագործելու, սուբյեկտիվիզմի, կամայականության, կուսակցական քաղաքականության վրա անձնական և պատահական հանգամանքների ազդեցության դեմ հուսալի երաշխիքներ ապահովելու նպատակով առա-



ջարկվում է ստեղծել միասնական վերահսկիչ մարմին՝ ՍՄԿԿ կենտրոնական վերահսկիչ-վերստուգիչ հանձնաժողով, և համապատասխան մարմիններ տեղերում, լուծարքի ենթարկելով ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեն և ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովը, տեղական կազմակերպությունների կուսակցական և վերստուգիչ հանձնաժողովները։ Նոր մարմինները պետք է ընտրվեն կուսակցական համագումարներում ու կոնֆերանսներում և հաշվետու լինեն նրանց։

12. Վերակառուցման, կուսակցական կոմիտեների և պետական, տնտեսական մարմինների ֆունկցիաների սահմանազատման պայմաններում մեծ նշանակություն է ստանում կուսակցական ապարատում փոփոխություններ մտցնելու հարցը։ Կոնֆերանսը գտնում է, որ կուսակցական կոմիտեների ապարատի կառուցվածքը պետք է ամբողջովին համապատասխանի քաղաքական ղեկավարումն ուժեղացնելու խնդիրներին, վերակառուցման նոր փուլի նպատակներին։ Կուսակցական ապարատի վերակազմումը՝ նրա միաժամանակյա կրճատումով և աշխատանքի արդյունավետության բարձրացումով հանդերձ, պետք է իրականացնել ամենամոտ ժամանակներս։ Պետք է անշեղորեն կիրարկել կուսակցության ընտրովի մարմիններին կուսակցական ապարատի խստիվ ենթակայության և հաշվետու լինելու սկզբունքը։

13. Քաղաքական սիստեմի ռեֆորմը մեծ ու լարված աշխատանք է, որը կպահանջի ընդունել կուսակցական պատասխանատու որոշումներ և օրենսդրական խոշոր ակտեր, ներառյալ էական փոփոխություններ կատարելը ՍՍՀՄ սահմանադրության մեջ, միութենական և ինքնավար հանրապետությունների սահմանադրություններում, ինչպես նաև ՍՄԿԿ կանոնադրության մեջ։

Կոնֆերանսը պետական իշխանության և կառավարման համապատասխան մարմիններում, մասսայական հասարակական կազմակերպություններում աշխատող կոմունիստներին հանձնարարում է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել իրացնելու սովետական հասարակության դեմոկրատացման ծրագիրը և քաղաքական սիստեմի ռեֆորմը, որին հավանություն է տվել ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը։

## ԲՅՈՒՐՈԿՐԱՏԻԶՄԻ ԴԵՄ ՊԱՅՔԱՐԻ ՄԱՍԻՆ

1. Կոնֆերանսը նշում է, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի որոշումները դրեցին բյուրոկրատիզմի, նրա այնպիսի այլանդակ դրսևորումների վրա գործուն հարձակման սկիզբը, ինչպիսիք են թելադրանքը, վարչական կամայականությունը էկոնոմիկայի մեջ, սոցիալական և հոգևոր ոլորտներում, բյուրոկրատական անտարբերությունը մարդկանց իրավունքների ու կարիքների նկատմամբ, արհամարհական վերաբերմունքը հասարակական կարծիքի և աշխատավորների սոցիալական փորձի նկատմամբ։ Լճացման, դեմոկրատական հաստատությունների կաշկանդվածության պայմաններում բյուրոկրատիզմը աճել-հասել էր վտանգավոր սահմանների, դարձել հասարակական զարգացման արգելակ։ Բյուրոկրատական խեղաթյուրումները, հատկապես քաղաքական ղեկավարության մեջ, խորթ են սոցիալիզմին՝ որպես մասսաների կենդանի ստեղծագործության։

Արմատական տնտեսական ռեֆորմը, քաղաքական սիստեմի ռեֆորմը, կուսակցության և հասարակության մեջ դեմոկրատացման պրոցեսները, հրապարակայնությունը, քննադատության ու ինքնաքննադատության զարգացումը, հասարակության կառավարման գործում ժողովրդի իրական ներգրավումը հիմնովին խարխլում են բյուրոկրատիզմի դիրքերը։ Բայց ամբողջ պայքարն առջևում է։

Չարդարացված կերպով հսկայածավալ է մնում կառավարչական ապարատը։ Նրա զգալի մասը գործում է հասարակության պահանջմունքներից ու շահերից կտրված։ Էկոնոմիկայի, երկրի կյանքի մյուս կողմերի վերափոխման նպատակով կուսակցության մշակած միջոցառումները հաճախ կազմալուծվում են մինիստրությունների, պետական ու տնտեսական մարմինների բյուրոկրատական գործողությունների, բազմաթիվ կուսակցական կազմակերպությունների, ժողովրդական դեպուտատների սովետների պասիվության հետևանքով։ Դեռևս տարածված են գերատեսչականությունն ու տեղայնությունը, արմատախիլ չեն արվել աչքակապությունն ու ինքնակամությունը, սովետական օրենքների խախտումները։ Քիչ չեն քննադատության ճնշման, աշխատավորների նախաձեռնությունների կաշկանդման դեպքերը։

Բոլոր կուսակցական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների պարտքն է վերակառուցման ստեղծած պայմանները լրիվ կարողությամբ օգտագործել բյուրոկրատիզմի սոցիալական արատի դեմ հետևողական, անզիջում պայքարի համար, հանուն կառավարման սոցիալիստական ապարատի բարձր որակի։

Այդ պայքարը էկոնոմիկայի մեջ հարկավոր է ծավալել ձեռնարկության մասին, կոոպերացիայի մասին օրենքների անշեղ կատարման, աշխատավորական կոլեկտիվների խորհուրդների լիազորությունների, տնտհաշվարկային հարաբերությունների, ձեռնարկությունների, տնտեսավարման կապալային, վարձակալական, կոոպերատիվ ձևերի ինքնուրույնության ու պատասխանա-

կկանգնի կոմերիտմիությունը, որ վարչական կամայականության, իրավունքների ու ազատությունների խախտումների դեմ հուսալի պատնեշ կապահովեն իրավապահ մարմինները։

Կոնֆերանսն անհրաժեշտ է համարում ստեղծել բյուրոկրատիզմի դեմ պայքարի ուժեղացման իրավական պայմաններ, դրանք նախատեսելով ներկայումս մշակվող օրենսդրական ակտերում։ Հարկավոր է կատարելագործել քաղաքացիների իրավունքները սահմանափակող պաշտոնատար անձանց գործողությունների դատարանում գանգատարկման մասին ՍՍՀՄ օրենքի կիրարկման պրակտիկան։

Կանոնավորապես քննարկել ու գնահատել ապարատի աշխատանքը քաղաքացիների հավաքներում, աշխատավորական կոլեկտիվների ու հասարակական կազմակերպությունների ժողովներում։

Մասսայական ինֆորմացիայի միջոցները կոչված են կոնկրետ կերպով մատնանշել բյուրոկրատիզմի ակունքներն ու դրսևորումները, ցույց տալ դրա դեմ հաջող պայքարի օրինակներ։ Բացասական դրսևորումների դեմ մղվող պայքարում լիովին օգտագործել այնպիսի ժանրի ուժը, ինչպիսին է սատիրան։

6. Կոնֆերանսը կուսակցության բոլոր կազմակերպություններից եռանդուն միջոցներ է պահանջում սեփական գործունեության մեջ բյուրոկրատիզմի ամեն մի տարր վերացնելու, աշխատանքում լենինյան ոճը հաստատելու համար։ Անհրաժեշտ է որակապես նոր մակարդակի բարձրացնել կուսակցության որոշումների, քաղաքական հիմնադրույթների փաստական կատարման ստուգումը։ Բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարում այս հարցն առաջնահերթ կարևորություն ունի, որի վրա առանձնապես հրավիրվում է մարդկանց կարիքների ու պահանջների բավարարման հետ անմիջականորեն կապված մինիստրություններում, գերատեսչություններում, կազմակերպություններում ու հիմնարկներում աշխատող կոմունիստների ուշադրությունը։

Ապահովել սկզբնական կուսակցական կազմակերպությունների առջև բոլոր ղեկավար կոմունիստների հաշվետվության ու պատասխանատվության սկզբունքի հետևողական իրականացումը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ղեկավար սերտորեն կապված լինի մասսաների հետ, ցույց տա բարձր պրոֆեսիոնալիզմի, աշխատասիրության, համեստության, մատչելիության և մարդկանց նկատմամբ հարգալից վերաբերմունքի օրինակ։

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության աշխատանքը կառուցել կոլեկտիվության սկզբունքի հիման վրա, բարելավել կուսակցական կոմիտեների պլենումներում և կոմունիստների ժողովներում ընտրովի կուսակցական մարմինների սիստեմատիկ հաշվետվությունների պրակտիկան, զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, խստորեն պատասխան պահանջել ներկուսակցական դեմոկրատիայի նորմերի խախտման համար։ Ոչ մի կուսակցական կազմակերպություն, ոչ մի աշխատող չպետք է վերահսկողությունից դուրս մնա։

Բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարում պետք է հենվել նախաձեռնող, ստեղծագործող, քարացածության ու լճացման նկատմամբ անհանդուրժողական մարդկանց վրա, որոնք գործով են ապացուցել դեմոկրատական մեթոդներով գործելու ունակությունը։ Հենց այսպիսի մարդկանց պետք է ամեն կերպ աջակցել, երաշխավորել կուսակցական աշխատանքի։

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը կոմունիստներին, բոլոր աշխատավորներին կոչ է անում ավելի ակտիվորեն ծավալել պայքարը բյուրոկրատիզմի դեմ կառավարման բոլոր օղակներում, հասարակության կյանքի բոլոր ոլորտներում։

# ԱԶԳԱՄԻՋՅԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

1. Վ. Ի. Լենինի ստեղծած սովետական սոցիալիստական պետությունը մարմնավորել է իրավահավասար ժողովուրդների բազմազգ ընտանիքի հեղափոխական կամքն ու ձգտումները։ Նրանց պատմական ճակատագրի ընդհանրությունը ինտերնացիոնալիստական սոցիալիստական եղբայրության հիմքն է։ Սովետական մարդկանց բազում սերունդների ջանքերի արդյունքը եղավ հանրապետությունների եզակի միությունը։

Նրա դրոշին գրված է՝ ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ միասնություն, ազգերի ինքնորոշման իրավունք, ազգային մշակույթների վերածնում ու զարգացում, նախկինում հետամնաց ազգային ռեգիոնների առաջընթացի արագացում, ազգամիջյան երկպառակության հաղթահարում։ Ստեղծվել է ամբողջական ժողովրդատնտեսական համալիր՝ ՍՍՀՄ ժողովուրդների միասնության նյութական հիմքը։ Անչափ մեծացել է բոլոր հանրապետությունների և ինքնավարությունների տնտեսական, մշակութային, կադրային պոտենցիալը։ Իրողու-



թյուն է դարձել պատմական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը։ Տեղի է ունենում ազգային ինքնագիտակցության օրինաչափ աճ։

Դրա հետ մեկտեղ, սովետների բազմազգ պետության կազմավորման նախնական փուլին բնորոշ դինամիզմը էապես կորսվեց և խարխլվեց ազգային քաղաքականության լենինյան սկզբունքներից կատարված նահանջով, անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում օրինականության խախտումներով, լճացման գաղափարախոսությամբ ու հոգեբանությամբ։ Բացարձակացվում էին ազգային հարցի լուծման գործում ձեռք բերված արդյունքները, հաստատվում ազգային հարաբերությունների անպրոբլեմայնության պատկերացումները։ Անբավարար էին հաշվի առնվում ինչպես առանձին հանրապետությունների և ինքնավար կազմավորումների, այնպես էլ ազգային խմբերի սոցիալ-տնտեսական, մշակութային զարգացման պահանջմունքները։ Ժամանակին չէին լուծվում ոչ քիչ թվով սուր հարցեր, որոնք առաջադրվում էին ազգերի և ազգությունների զարգացման բուն ընթացքով։ Դա հանգեցնում էր հասարակության անբավարարվածության, որը երբեմն կոնֆլիկտային բնույթ էր ստանում։ Շարունակում են տեղ գտնել ազգային եսամոլության և պարծենկոտության, խնամառուական տրամադրությունների և տեղայնության փաստեր։ Տասնամյակների ընթացքում կուտակված բացասական երևույթները երկար ժամանակ անտեսվում էին, քողարկվում, կուսակցական պատշաճ գնահատական չէին ստանում։ Վերակառուցումը, դեմոկրատացումն ու հրապարակայնությունը մերկացրին այդ երևույթները և միևնույն ժամանակ անհրաժեշտ պայմաններ ստեղծեցին դրանց դեմոկրատական հաղթահարման համար։

2. Կուսակցական կոնֆերանսը պատմական կարևորություն ունեցող խնդիր է համարում հաստատակամորեն հաստատել և ստեղծագործաբար զարգացնել ազգային քաղաքականության լենինյան նորմերն ու սկզբունքները, դրանք վճռականորեն մաքրել արհեստական նստվածքաշերտերից ու խեղումներից։ Դրա համար հիմք են հանդիսանում ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած քաղաքական կուրսը, որը բոլոր ազգերի և ազգությունների շահերի բավարարումը զուգակցում է երկրի ընդհանուր շահերի ու պահանջմունքների հետ, ինտերնացիոնալիստական գաղափարախոսությունը, որն անհամատեղելի է շովինիզմի և ազգայնականության որևէ տարատեսակի հետ։

Միութենական հանրապետությունների և ինքնավարությունների ինքնուրույնության զարգացումը կուսակցությունը տեսնում է մեր բազմազգ պետության ամրապնդման և առաջադիմության համար նրանց պատասխանատվության հետ անխզելի կապի մեջ։ Սոցիալիստական իդեալը ոչ թե մեռցնող համանմանեցումն է, այլ լիարյուն և դինամիկ միասնությունը ազգային բազմազանությամբ։

3. Կուսակցական կոնֆերանսը գտնում է, որ քաղաքական սիստեմի վերակառուցման շրջանակներում պետք է իրականացնել դեմոկրատական սկզբունքների հիման վրա սովետական ֆեդերացիայի հետագա զարգացման և ամրապնդման հասունացած միջոցառումներ։ Խոսքը նախ և առաջ վերաբերում է միութենական հանրապետությունների և ինքնավար կազմավորումների իրավունքների ընդլայնմանը ՍՍՀ Միության և սովետական հանրապետությունների իրավասությունների սահմանազատման, կառավարչական մի շարք ֆունկցիաների ապակենտրոնացման, դրանք տեղերին հանձնելու, տնտեսության, սոցիալական ու մշակութային զարգացման, բնության պահպանության ոլորտում ինքնուրույնության և պատասխանատվության ուժեղացման միջոցով։

Կենտրոնական խնդիրներից մեկը ռեգիոնների ավելի շատ ինքնուրույնության համար պայմաններ ստեղծելն է, համագործակցության այնպիսի ձևեր իրականացնելը, որոնց դեպքում յուրաքանչյուր հանրապետություն շահագրգռված կլիներ բարելավել իր տնտեսական գործունեության վերջնական արդյունքները՝ որպես սեփական բարօրության, սովետական պետության ընդհանուր հարստության և հզորության բազմապատկման հիմք։ Արմատական տնտեսական ռեֆորմը, դեմոկրատացման պրոցեսը լայն ասպարեզ են բացում ինչպես ազգային պետական կազմավորումների, այնպես էլ ամբողջությամբ վերցրած երկրի շահերի առավել նպատակահարմար զուգակցման համար։ Պետք է այնպես գործել, որ աշխատավորները լավ իմանան, թե հանրապետությունը կամ մարզը ինչքան է արտադրում, ինչպիսին է նրա ներդրումը երկրի էկոնոմիկայում և ինչքան է նա ստանում։ Ուշադրության է արժանի հանրապետությունների և ռեգիոնների՝ տնտհաշվարկի սկզբունքներին անցնելու գաղափարը, հստակորեն սահմանելով նրանց ներդրումը ընդհանուր միութենական ծրագրերի լուծման գործում։

Էկոնոմիկայի և ամբողջ հասարակական կյանքի ինտերնացիոնալացումը օրինաչափ պրոցես է։ Ազգային պարփակվածության ամեն մի ձգտում կարող է հանգեցնել միայն տնտեսական ու հոգևոր աղքատացման։

Օրենսդրականորեն մշակվելու է հանրապետական և տեղական բյուջեների կազմման որակապես նոր մեխանիզմ, էապես բարձրացվելու է դրանց դերը ռեգիոնների սոցիալ-տնտեսական զարգացման հարցերը լուծելիս։ Անհրաժեշտ է ապահովել կառավարման տարածքային մարմինների արդյունավետ փոխգործակցությունը ՍՍՀՄ մինիստրությունների և գերատեսչությունների,

ման չարդարացված սահմանափակումները, ստեղծել ժամանակակից ինֆորմացիոն տեխնոլոգիայի վրա հիմնված ինֆորմացիայի հավաքման, մշակման ու տարածման համակարգ, ապահովել գրադարանների բոլոր ֆոնդերի մատչելիությունը, օրենսդրական կերպով կարգավորել արխիվային նյութերի օգտագործումը։

Կոնֆերանսը բոլոր հասարակական կազմակերպություններին կոչ է անում հրապարակայնորեն և բացահայտ իրականացնել իրենց կանոնադրական պարտականությունները, բնակչությանը լայնորեն տեղեկացնելով համագումարների, կոնֆերանսների, ընտրովի մարմինների աշխատանքի, նրանց կողմից ընդունվող որոշումների մասին։

5. Կոնֆերանսը նշում է մասսայական ինֆորմացիայի միջոցների կարևոր դերը հրապարակայնության ընդլայնման գործում։ Դրանք կոչված են համակողմանիորեն արտացոլելու կուսակցական, պետական և հասարակական կազմակերպությունների գործունեությունը, ծառայելու սոցիալիստական հասարակության ամրապնդմանը, ակտիվորեն պրոպագանդելու կուտակված փորձը, լինելու երկրի իրավիճակի համաժողովրդական վերահսկողության գործիք։ Կոնֆերանսը անթույլատրելի է համարում մամուլի քննադատական ելույթների կասեցումը, ինչպես նաև քաղաքացու պատվին ու արժանապատվությանը դիպչող աչառու ինֆորմացիայի հրապարակումը։ Հրապարակայնությունը ենթադրում է մասսայական ինֆորմացիայի միջոցների սոցիալական, իրավական և բարոյական պատասխանատվություն։ Այդ ոլորտում պարտադիր պայմաններ պետք է լինեն բարձր գաղափարայնությունն ու բարոյականությունը, բանիմացությունը, պրոֆեսիոնալ էթիկայի խստիվ պահպանումը, ինֆորմացիայի պարտադիր հավաստիությունը, քննադատության ենթարկված յուրաքանչյուր քաղաքացու՝ մամուլի նույն օրգանում հիմնավորված պատասխան հրապարակելու իրավունքը։ Բացախոսության և քննադատության հողի վրա չպետք է բարգավաճեն խմբակայնությունը, դեմագոգիայի, ազգային, ռեգիոնալ կամ կորպորատիվ եսամոլության դրսևորումները։ Պետք է անաչառ կերպով, առանց աղավաղումների մասսայական ինֆորմացիայի միջոցներում արտահայտել վիճող բոլոր կողմերի տեսակետները։ Ոչ ոք ճշմարտության մենաշնորհ չունի, չպետք է լինի նաև հրապարակայնության մենաշնորհ։

6. Կոնֆերանսը գտնում է, որ հրապարակայնությունը լիովին արդարացրել է իրեն, այն հարկավոր է այսուհետև էլ ըստ ամենայնի զարգացնել։ Այդ նպատակով անհրաժեշտ համարել ստեղծելու հրապարակայնության իրավական երաշխիքներ, որի համար նախատեսել սահմանադրական կարգով ՍՍՀՄ քաղաքացիների ինֆորմացիա ստանալու իրավունքի վավերացումը։ Մշակել հրապարակայնության սկզբունքների իրականացման ասպարեզում պետության, պաշտոնատար անձանց և քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները սահմանող օրենսդրական ակտեր։ Ստեղծել ձեռնարկությունում, գյուղում կամ քաղաքում, մարզում, հանրապետությունում, երկրում տիրող իրավիճակի մասին աշխատավորներին մշտապես և լիովին տեղեկացնելու համակարգ, իրավականորեն վավերագրելով իրենց հետաքրքրող տեղեկություններն ստանալու քաղաքացիների, մասսայական ինֆորմացիայի միջոցների, աշխատավորական կոլեկտիվների, հասարակական կազմակերպությունների իրավունքը։ Հստակորեն որոշել անհրաժեշտ գաղտնիության, պաշտոնեական գաղտնիքների սահմանները, պատասխանատվություն սահմանել պետական և ռազմական գաղտնիք ներկայացնող, քաղաքացիների օրինական իրավունքները խախտող, հասարակական կարգին, բնակչության անվտանգությանը, առողջությանն ու բարոյականությանը վնաս հասցնող տեղեկությունների տարածման համար, ինչպես նաև պատասխանատվություն քաղաքացիների ինֆորմացիայի իրավունքի իրականացմանը խոչընդոտելու համար, այդ ինֆորմացիան թաքցնելու, աղավաղելու և անօրինական օգտագործելու համար։

Անթույլատրելի է հրապարակայնությունն օգտագործել ի վնաս սովետական պետության, հասարակության շահերի, անձի իրավունքների, պատերազմի և բռնության, ռասիզմի, ազգային և կրոնական անհանդուրժողության քարոզչության, դաժանության պրոպագանդման և պոռնոգրաֆիայի տարածման համար, ինչպես նաև հրապարակայնությամբ ձեռնածություն անելը։

Կուսակցական, պետական և հասարակական գործերում, մասսայական ինֆորմացիայի միջոցներում հրապարակայնությունը հաստատակամորեն ամրապնդելով և ընդլայնելով՝ կուսակցությունը, սովետական հասարակությունը շարժման մեջ են դնում սոցիալիստական կարգերի պոտենցիալ հզոր հնարավորությունները, դրանց խորքային ռեզերվները։

Առանց հրապարակայնության չկա վերակառուցում, չկա դեմոկրատիա։ Հրապարակայնությունը դեմոկրատական, մարդասիրական, սոցիալիզմի կյանքի և առաջադիմության բնական մթնոլորտն է։

Կոնֆերանսը բոլոր կոմունիստներին, կուսակցական բոլոր կազմակերպություններին կոչ է անում ճշմարտացի խոսքը հասցնել մասսաներին, ակտիվորեն զարգացնել սոցիալիստական դեմոկրատիզմը, բանավեճերի կուլտուրան, բարենպաստ պայմաններ ստեղծել ամեն տեսակ



հարցերի աշխույժ և բաց քննարկման, սովետական մարդկանց նախաձեռնության և ստեղծագործական մտքի դրսևորման համար։

Կոնֆերանսը վստահություն է հայտնում, որ բոլոր կոմունիստները կաջակցեն հրապարակայնության՝ որպես սոցիալիստական հասարակության կյանքի նորմի հաստատմանը։

# ԻՐԱՎԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԻ ՄԱՍԻՆ

1. Համամիութենական կուսակցական կոնֆերանսը նշում է, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից հետո անցած ժամանակամիջոցում վերակառուցման իրավական ապահովման խոշոր միջոցառումներ են իրականացվել։ Սակայն դրանք հարկավոր է դիտել սոսկ որպես սկիզբ մեծ աշխատանքի՝ կապված սոցիալիստական իրավական պետության ձևավորման հետ։ Մոտ տարիներս երկրում պետք է անցկացվի իրավական լայն ռեֆորմ, որը կոչված է ապահովել օրենքի գերակայությունը հասարակության կյանքի բոլոր ոլորտներում, ուժեղացնել ժողովրդապետության զարգացման հիման վրա սոցիալիստական իրավակարգի պահպանման մեխանիզմները։

2. Մեծ նշանակություն է ստանում ՍՍՀ Միության, միութենական և ինքնավար հանրապետությունների իշխանության բարձրագույն մարմինների օրենսդրական գործունեության բարելավումը, որը նպատակամղված է երկրում սահմանադրական կարգի ամրապնդմանը և հասարակական հարաբերությունների կարևորագույն բնագավառները կարգավորող սովետական օրենքների դերի վճռական բարձրացմանը, հետևյալ սկզբունքի հետևողական իրագործմանը՝ թույլատրված է այն ամենը, ինչ արգելված չէ օրենքով։ Առանձնապես կարևոր է դեմոկրատացնել օրենսդրական այն պրոցեսը, որը պետք է ընկնի հրապարակայնության, օրինագծերի բանիմաց գիտական գնահատման և լայն հասարակայնության, ամբողջ ժողովրդի մասնակցությամբ դրանց քննարկման հիմքում։

3. Իրավական ռեֆորմի անկապտելի մասը պետք է կազմեն օրենսդրության արմատական վերանայումը, համակարգումն ու սիստեմավորումը։ Տնտեսավարման նոր պայմանների, հասարակական կյանքի հումանիզացման և դեմոկրատացման, իրավախախտումների կանխարգելման ուժեղացման տեսանկյունից պետք է էական փոփոխություններ մտցնել սոցիալիստական սեփականության, պլանավորման, ֆինանսական, հարկային և տնտեսական հարաբերությունների, շրջակա միջավայրի պահպանության մասին օրենսդրության մեջ, քաղաքացիական շրջանառությունը, աշխատանքային, բնակարանային, կենսաթոշակային և աշխատավորների կյանքի այլ հարցեր կանոնակարգող նորմերի մեջ, արմատապես վերանայել քրեական, վարչական, դատավարական և ուղղիչ աշխատանքային օրենսդրությունը։ Հարկավոր է առաջնակարգ ուշադրություն նվիրել անձի իրավական պաշտպանությանը, ամրապնդել սովետական մարդկանց քաղաքական, տնտեսական, սոցիալական իրավունքների և ազատությունների իրականացման երաշխիքները։ Միաժամանակ պետք է բարձրացնել յուրաքանչյուր քաղաքացու պատասխանատվությունը իր աշխատավորական կոլեկտիվի, պետության և ամբողջ հասարակության հանդեպ։ ՍՍՀՄ սահմանադրության պահանջներին կառավարության օրենքների և որոշումների խստիվ համապատասխանությունն ապահովելու նպատակով օգտակար կլիներ հիմնել Սահմանադրական հսկողության կոմիտե, ինչպես նաև ուժեղացնել այն բանի վերահսկման ամբողջ աշխատանքը, որ գերատեսչական նորմատիվային ակտերում ճշտորեն կիրառվեն օրենքների նախատեսումները, իսկ նման ակտերի քանակն էլ կտրուկ կրճատվի։

4. Կոնֆերանսը վերակառուցման կարևոր խնդիրներից մեկն է համարում սոցիալիստական դեմոկրատիայի համակարգում դատարանի դերի մեծացումը։ Անհրաժեշտ է զգալիորեն ամրապնդել սովետական դատավարության այնպիսի սկզբունքների իրականացման երաշխիքները, ինչպիսիք են մրցողականությունը, հրապարակայնությունը, անմեղության կանխավարկածի անշեղ կիրառումը, ինչպես մեղադրական շեղում կատարելու, այնպես էլ սովետական օրենքի դեմ ոտնձգություն կատարողների նկատմամբ թողտվություն ցուցաբերելու անթույլատրելիությունը։ Պետք է բարձրացնել դատարանի վարկը, ապահովել դատավորների անվերապահ անկախությունը և նրանց ենթարկումը միայն օրենքին, պատասխանատվության կոնկրետ չափեր սահմանել նրանց գործունեությանը միջամտելու համար և դատարանին չհարգելու համար։ Դատավորների անկախության ամրապնդման երաշխիքներից մեկը պետք է դառնա ժողովրդական դեպուտատների վերադաս սովետների կողմից շրջանային, քաղաքային, օկրուգային, մարզային և երկրամասային դատարանների ընտրությունը, ինչպես նաև դրանց լիազորությունների առավել երկարատև ժամկետի սահմանումը։ Արդարադատության անաչառությունը, ժողովրդական ատենակալների դերն ու պատասխանատվությունը մեծացնելու նպատակով նպատակահարմար է նրանց թվի ավելացման դիմել դատարանում առավել բարդ գործերի քննարկման ժամանակ։

Հանրապետության կոմունիստները, աշխատավորները լավ են հասկանում, որ միայն թերությունների սուր քննադատությամբ, բացասական երևույթների մերկացմամբ արմատական փոփոխություններ իրականացնել հնարավոր չէ։ Հարկավոր են թե՛ պարզորոշ կոնստրուկտիվ կոնցեպցիա և թե՛ այդ փոփոխությունների իրականացման ծրագիր։ Այնպիսի ծրագիր, որը օգներ ամենակարճ ժամկետներում հանրապետությունը դուրս բերել ծանր կացությունից, գործնականորեն այն ընդգրկել երկրի ստեղծարար, վերակառուցողական ռիթմի մեջ, մասսաների եռանդը, ստեղծագործական պոտենցիալը նպատակամղել վերակառուցման և նորացման պատմական խնդիրների լուծմանը։

Այսօրվա տնտեսական իրադրությունը պահանջում է նոր մոտեցում հանրապետության առջև ծառացած խնդիրների լուծման, ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում առաջացող բացասական միտումների հաղթահարման, առաջնային ուղղությունների մշակման, սոցիալ-տնտեսական զարգացման նպատակային ծրագրերի իրականացման նկատմամբ, գիտատեխնիկական առաջադիմությունը կանխորոշող ճյուղերի դուրսբերում ժամանակակից համաշխարհային մակարդակի։ Մեզ համար ներկայումս ամենապատասխանատու գործը ուժեղ սոցիալական քաղաքականության հետևողական իրականացումն է։ Չէ որ տարիներ շարունակ հանրապետությունում չէին լուծվում ցավոտ, կենսականորեն կարևոր հարցերը, որոնցից կախված են մարդկանց սոցիալական ինքնազգացողությունը և բարօրությունը։

Սոցիալական զարգացման մի շարք ցուցանիշների գծով Հայաստանը միութենական հանրապետությունների մեջ գրավում է վերջին տեղերից մեկը։ Մեզ մոտ, օրինակ, միութենական միջինից ցածր է բնակչության ապահովվածությունը բնակարաններով, մանկապարտեզներով, հիվանդանոցային մահճակալներով, պոլիկլինիկաներով, առևտրի, կապի օբյեկտներով, մշակույթի հիմնարկներով։ Շատ ընտանիքներ, հատկապես Երևանում, տակավին բնակվում են խարխուլ, վթարային տներում, նկուղային հարկերում։ Տեղում ենք դոփում սննդամթերքների արտադրության գործում։ Աշխատունակ բնակչության մի մեծ տոկոս զբաղված չէ հանրային արտադրության մեջ։ Լուրջ են մնում ջրի, էկոլոգիական իրադրության պրոբլեմները։

Ամենագլխավորն այն է, ինձ ասում էին բանվորները կոնֆերանսին նախորդած հանդիպումներից մեկի ժամանակ, որպեսզի հանրապետությունում ստեղծվի բարոյական առողջ մթնոլորտ։ Մեզ համար, իրոք, դա հիմա ամենագլխավորն է։ Կլինի այդպիսի մթնոլորտ՝ առաջ կընթանան նաև գործերը։ Մենք հենց դրանից էլ սկսում ենք։ Եվ մեզ համար միանգամայն պարզ է, որ առաջիկա մեծ, բարդ աշխատանքը կարող է հաջողությամբ կատարվել միայն բոլոր աշխատավորական կոլեկտիվների, ամբողջ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, երիտասարդության, հասարակության բոլոր խավերի մասնակցությամբ։Մենք հատուկ նշանակություն ենք տալիս մտավորականության դերի ակտիվացմանը, կուսակցական կոմիտեներից նրա կտրվածության հաղթահարմանը, նրա հետ կատարվող աշխատանքում թույլ տրված լուրջ վրիպումների վերացմանը, նրա ստեղծագործական պոտենցիալի առավել լրիվ օգտագործմանը։

Ընկերներ։ Մեր ժամանակը մերկացնում է ազգային հարաբերությունների ոլորտի բազմաթիվ բարդ պրոբլեմներ, որոնք, ուղղակի ասենք, գոյություն ունեին վաղուց, բայց որոնց վրա նախկինում մենք մի տեսակ աչք էինք փակում։ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը դրանցից մեկն է։ Հայաստանում և Ադրբեջանում ստեղծված իրավիճակը սուր բնույթ է ստացել։ Երկու ժողովուրդների ավանդական բարեկամական, բարիդրացիական հարաբերություններին, որոնք մենք բարձր ենք գնահատում, լուրջ վնաս է հասցվել։ Մի շարք շրջաններում կոնֆլիկտային իրավիճակ է ստեղծվել ազգամիջյան հարաբերություններում։ Ասեմ անկեղծորեն. մենք դեռ չենք կարողացել հանրապետությունում նորմալացնել իրադրությունը։ Այն շարունակում է մնալ լարված։

Մեզ համար դժվարին պահին Հայաստանի և Ադրբեջանի աշխատավորներին, ժողովուրդներին դիմեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը։ Այդ դիմումը ճիշտ ժամանակին էր, ընկերներ։ Այն վիթխարի օգնություն ցույց տվեց մեր հանրապետության կուսակցական կազմակերպություններին։

Ստեղծված իրադրության ակունքները թաքնված են պատմական, սոցիալական, տնտեսական, մշակութային, էթնիկական պրոբլեմների բարդ միահյուսման մեջ, անձի պաշտամունքի և լճացման ժամանակաշրջանում տեղ գտած ազգային քաղաքականության խեղաթյուրումների մեջ։ Սրբապղծություն կլիներ պնդել, թե այդ իրադարձությունների պատճառները եղան վերակառուցումը, դեմոկրատացումը և հրապարակայնությունը։ Հիվանդագին պրոբլեմները, մեկ անգամ ես ուզում եմ դա կրկնել, ծնունդ են առել ո՛չ այսօր և ո՛չ էլ երեկ։ Դրանք կուտակվել են աստիճանաբար, տասնամյակների ընթացքում, չստանալով ոչ միայն անհրաժեշտ լուծում, այլև նույնիսկ հրապարակային ճանաչում։

Հենց լռության մատնելու և անտարբերության հակադեմոկրատական պրակտիկան, ռեալ կերպով գոյություն ունեցող սուր և բարդ պրոբլեմներից խույս տալու ձգտումը, դրանք թաքցնե-



լու կամ ավտորիտար մեթոդներով լուծելու փորձերն են այսօր հանգեցրել այդ պրոբլեմների այդքան պայթյունալի դրսևորմանը։ Եվ հենց վերակառուցումը, դրա հետ օրգանապես կապված դեմոկրատացումն ու հրապարակայնությունը բացահայտեցին այդ պրոբլեմների բարձիթողի վիճակը։ Հենց միայն վերակառուցումն է դրա հետ մեկտեղ պայմաններ ու նախադրյալներ ստեղծում դրանց ազատ քննարկման համար։

Մենք գիտենք, որ Լեռնային Ղարաբաղի իրադարձությունները, դրանց առթիվ մեր հանրապետության աշխատավորների սուր արձագանքը երբեմն փորձում են բացատրել զուտ վերահրսկողությունից դուրս եկած ծայրահեղական խմբերի գործողություններով։ Դա, ես կասեի, խիստ պարզունակ պատկերացում է։ Եվ դրանց վրա հենվելով, հազիվ թե հնարավոր լինի լիցքաթափել ներկա իրավիճակը։ Չեմ կարող այստեղ, ընկերներ, չասել այն մասին, որ նման բացատրությունները ցավագնորեն են դիպչում մեր հանրապետության կոմունիստների, աշխատավորների ազգային զգացմունքներին, դրանք պարզապես հակասում են նաև առողջ բանականությանը։

Ազգամիջյան հարաբերություններում ծագող պրոբլեմները, ինչպես ասված է Կենտկոմի թեզիսներում, պետք է լուծվեն իսկական դեմոկրատական հիմքի վրա, վերակառուցման ոգով։ Մեր կարծիքով, հենց այդպիսի դիրքերից պետք է քննության առնվի նաև Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը։ Այսօր հրամայական անհրաժեշտություն է ազգային հարցում քաղաքական նոր մտածողության մշակումը։ Ես այստեղ որևէ գաղտնիք չեմ բացի, եթե ասեմ, որ այս հարցը մեզ մոտ բարձիթողի արված հարցերից մեկն է։ Իսկ չէ որ մարդկային հարաբերությունների այնպիսի ոլորտում, ինչպիսիք են ազգային հարաբերությունները, անկարելի է որևէ լուրջ պրոբլեմ լուծել, եթե չհրաժարվենք հնացած մոտեցումներից ու ստերեոտիպերից։

Ի՞նչ դաս կարելի է առնել Լեռնային Ղարաբաղի և դրան առնչվող իրադարձություններից։ Նախ և առաջ այն, որ ազգամիջյան հարաբերությունների զարգացման հարցերը պետք է մշտապես ուշադրության կենտրոնում պահել ինչպես ընդհանուր միութենական, այնպես էլ ռեգիոնալ, հանրապետական և տեղական մակարդակներով։ Կարևոր է ժամանակին խորամուխ լինել ծագող և սրվող պրոբլեմների մեջ, կշռադատված լենինաբար դիմել դրանց լուծմանը, հույս չդնելով տարերային ընթացքի վրա և բանը չհասցնելով ճգնաժամային իրավիճակների։

Իրոք, եթե Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի նախկին ղեկավարները, իմանալով իրադարձությունների զարգացման ուղղությունը, ժամանակին, լենինյան, ինտերնացիոնալիստական դիրքերից ձեռնարկեին անհրաժեշտ համատեղ քայլեր, ապա իրավիճակը ռեգիոնում նման սուր բնույթ չէր ստանա։ Մենք հիմա Ադրբեջանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հետ (և այդ մասին այստեղ խոսեց ընկեր Վեզիրովը) համատեղ աշխատանք ենք տանում, կոորդինացնում մեր գործողությունները։ Մենք պետք է այսուհետև էլ շարունակենք այդ գիծը։

Վերջին ամիսների փորձը մեզ համոզում է, որ իրադրությունը էապես փոխող դեմոկրատացման և հրապարակայնության պայմաններում կուսակցական, սովետական, գաղափարախոսական կադրերը պետք է կարողանան գործել սուր, անսովոր, իսկ երբեմն էլ կոնֆլիկտային իրավիճակներում, պետք է կարողանան շիտակ բանավեճ վարել։ Մեր շատ կադրեր, ցավոք, այս արտասովոր իրավիճակում անկարողություն ցուցաբերեցին, իսկ երբեմն էլ պարզապես իրենց կորցրին։

Կյանքը ցույց է տալիս, որ հանրապետությունների փոխհարաբերություններում կարող են ծագել ազգամիջյան պրոբլեմներ։ Մենք պարզորոշ գիտակցում ենք, որ անթույլատրելի է նման հարցերը արհեստականորեն հարուցելը, լավ ենք հասկանում, որ դրանք լուծելիս առանձնապես անհանդուրժելի են, լենինյան խոսքերով ասած, շտապողականությունն ու վարչարարությունը։ Միևնույն ժամանակ ակներև է, որ այն դեպքում, երբ այդպիսի պրոբլեմներ արդեն ծագել են, ընդ որում, ռեալ հողի վրա, սխալ կլիներ խուսափել դրանց քննարկումից։ Եվ անհրաժեշտ է, որպեսզի մենք ունենանք հստակ, լավ կշռադատված մեխանիզմ դեմոկրատական, սահմանադրական հիմքի վրա դրանց լուծման համար։

Ինչպես ասված է զեկուցման մեջ, միութենական պետության առկա կառուցվածքի շրջանակներում անհրաժեշտ է առավելագույնս հաշվի առնել յուրաքանչյուր ազգի և ազգության և սովետական ժողովուրդների ամբողջ ընկերակցության շահերը։ Բայց դա, ինչպես մեզ թվում է, չի բացառում այդ կառուցվածքի հետագա որակական կատարելագործման հնարավորությունները՝ այն հաշվով, որ դա ավելի մեծ չափով նկատի առնի յուրաքանչյուր ազգի ու ազգության հարաճուն, զարգացող պահանջմունքները, լիակատար երաշխիք ապահովի նրանց ինտերնացիոնալ և ազգային ինքնարտահայտման համար։

Մենք մեծ գոհունակությամբ ընդունեցինք զեկուցման մեջ արտահայտված այն գաղափարը, որ քաղաքական սիստեմի ռեֆորմը նախատեսում է այնպիսի հաստատություններ, որոնք խոր ու հիմնովին քննության առնեն ազգամիջյան հարաբերությունների պրոբլեմները։ Ակտիվացման կարիք ունեն քաղաքական սիստեմի ներկայումս գոյություն ունեցող այն բոլոր հաստատություն-

ները, որոնց միջոցով պետք է ի հայտ բերվեն ու համաձայնեցվեն ազգային հարցերը։ Այս առընչությամբ կոնֆերանսում միանգամայն ճիշտ է դրված ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետի գործունեության հարցը, որը կոչված է իր ամենաանմիջական մասնակցությունը բերելու ազգային քաղաքականության մշակմանն ու գործնական իրականացմանը, հանրապետություններում ու տեղերում այդ քաղաքականության կենսագործման ճշտության վերահսկմանը։

Առաջանում է նաև մի այսպիսի հարց. ինչպես հայտնի է, ներկայումս գործող ՍՍՀՄ սահմանադրությունը մշակվել է լճացման և սովետական հասարակության կացության ու նրա զարգացման հեռանկարների գնահատմանը ցույց տրված ոչ իրատեսական մոտեցումների ժամանակաշրջանում։ Եվ դա, ինչպես իրավացիորեն արդեն նշվել է մեր մամուլում, բացասական կնիք է դրել սահմանադրության շատ դրույթների ու հոդվածների վրա։ Անցած ժամանակաշրջանում ընդունվեց ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը, մշակվեցին սկզբունքորեն նոր ստրատեգիական կուրս, սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի հեղափոխական վերակառուցման տեսությունն ու քաղաքականությունը։

Այդ պայմաններում, մեր կարծիքով, ճիշտ ու ժամանակին կլիներ, եթե կուսկոնֆերանսը հանձնարարեր ձեռնամուխ լինել ՍՍՀՄ սահմանադրության նոր խմբագրության նախապատրաստմանը։ Դա լիովին կհամապատասխաներ սոցիալիստական իրավական պետության ձևավորումն ավարտելու կուսակցության կուրսին։

Ընկերնե՛ր։ Պատմական ապրիլից հետո անցել է երեք տարուց մի փոքր ավելի, բայց մենք գիտենք, թե որքան շեշտակիորեն է փոխվել իրադրությունը երկրում, մարդիկ սկսել են ավելի ազատ շնչել, իրենց երկրի տեր զգալ։ Մեծացել է նաև Սովետական Միության հեղինակությունը միջազգային ասպարեզում։ Այս ամենը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և նրա քաղբյուրոյի հիրավի նորարարական գործունեության արգասիքն է։ Եվ ահա մեզանից է կախված, ընկերներ, որ մեր ժամանակը պատմության մեջ մտնի որպես սովետական հասարակության նորացման իրոք հեղափոխական փուլ։

Հայաստանի կոմունիստները, ժողովուրդը իրենց վսեմ պարտքն են համարում լինել այն պատմական խնդիրների բարձրության վրա, որ կուսակցությունը առաջադրել է մեր հայրենիքի զարգացման ներկա, բեկումնային, շատ պատասխանատու ժամանակաշրջանում։ **(Ծափահարություններ)**:

---

Հանձնված է շարվածքի՝ 15. 06. 88 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 27.07. 88 թ.։ ՎՖ 03994։
Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։
Տպաքանակը՝ 15.632։ Պատվեր՝ 1170։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։